## Հ. ՍԻՄՈՆ ԵՐԵՄԵԱՆ

# ՀԱՅ ՄԻՏՔԸ



*Tous les discours sont des sottises,*
*Partant d'un homme sans éclat;*
*Ce seraient paroles exquises*
*Si c'était un grand qui parlât.*
**MOLIÈRE**



ՎԵՆԵՏԻԿ
Ս. ՂԱԶԱՐ ՄԽԻԹ. ՏՊԱՐԱՆ
1906

# ՑԱՆԿ ՀԱՏՈՐԻՍ

## ԱՌԱՋԻՆ ՄԱՍ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Թափառելով գրականութեան բուրաստանները, փնջեցի մտքի ծաղիկներ. վարպետ ու ճարտար փնջող մը համարուելու յաւակնոտութիւնը չունիմ։ Ճաշակիս թելադրութեան համեմատ քաղեցի մեր մտքերուն գեղեցիկը. բայց աւելի՛, կենսականը։ Նպատակս գեղեցկագիտութեան էջեր ու պատառիկներ հաւաքել չէր, այլ ամենուն ճաշակին եւ ճարտասանութեան օգտակար փաստեր գտնել այն մտքերէն, որոնք գըրքերու երեսներուն մէջ կը շողան. բնական է որ անոնք իրենց ցոլքերով լինծի պէս շատերը հրապուրած են. բայց առաջին անգամ կը փափաքիմ ես ըլլալ խտացու-

ցիչը այդ հոգեկան գոյներուն. չի խնայելով ջանքը, ինչ որ կը Թափէ վենետիկեցին իր մուզայիքէ պատկերները յօրինելուն։ Աշխատանքիս մէկ մասը — հայկական բաժինը միայն կը հրատարակեմ. Միջազգայինը առ այժմ կը Թողում մեռած։ Մեր հին եւ նոր մատենագիրները ազգիս գաղափարներուն համեմատ գրած են. աւելի առաջնորդող եղած են, քան Թէ հրապուրող. անտարակոյս հատորիս մէջ պիտի գտնուին ցուրտ մտքեր, սակայն անոնց բարոյական հոգին տաք է եւ կազդուրիչ. Նպատակս եղած է ԱՄԷՆ ԴԱՍԱԿԱՐԳԻ, բարի եւ ազնիւ գաղափարներու տէր անձանց՝ շահեկան ընել այս հաւաքածոյս։ Ողջ հեղինակներէն օրինակ չեմ բերած, քանի որ նախանձի խընդիրը մեր մէջ շա՛տ եւ շա՛տ բունկած է սակաւին. մեռեալներուն նախանձող չի կայ, անոնց ամենէն գնահատելի գործերը ինծի առաջնորդ առի. հատորիս մէջ հարազատ հայ հեղինակին հետ, կը գտնուին նաեւ օտար մտքեր, որ սակայն ի վաղուց մեզի համար հայացած են. Եզոբոսը տիեզերահռ-

չակ, հայ չէ, սակայն Թարգմանչին յօրինած տաղաչափական առակներուն անթիւ հիւրընկալուած է։ Իմ այս փնջակը կը դընեմ մեր գրագէտներու գրասեղանին վրայ, Թող հոտուըտան զայս, բուրումը Հայաստանի բուրաստանէն է։



# ԱՌԱՋԻՆ ՄԱՍ

## ԳԼՈՒԽ Ա.

### ՄԱՄՈՒԼ· ԿՐՕՆՔ, ՕՐԷՆՔ, ԳԻՏՈՒԹԻՒՆ, ԿՐԹՈՒԹԻՒՆ, ՎԱՐԺԱՐԱՆ։

1

*Բանաստեղծ Ռ. Պատկանեան «Բարի խրատ» քերթուածովը մեր գրագէտներուն շատ բարի ու խելացի խրատներ կու տայ։ Մատենագիրները, մանաւանդ մերազնեայ մատենագիրները իրենց գրական գործին մէջ շատ փափկանկատ պէտք են ըլլալ։ Բանաստեղծը ըմբռնած է հայ մատենագրի վիճակը, ըմբռնած է թէ հայ մատենագիրը ի՛նչ կերպով, ինչպէս կրնայ սիրելի ըլլալ· կը յորդորէ.*

Դեռ չի գըրած՝ առաջ դու լաւ միտք արա,
Ո՞վ է խեղճիդ գըրուածները առնողը.
Յետոյ՝ և այն մասին փոքր ինչ հոգս արա,
Որ քեզ սիրէ քու յարգելի կարդողը.

Բանաստեղծը կը պատուիրէ, յիշել այս հանգամանքը, կը պատուիրէ չի վստահիլ անձնական տաղանդին վրայ, պէտք է հայ մատենագիրը սիրելի ըլլայ, թէ ո՛չ կ՚ըսէ.

Եղի՛ր Թէկուզ Խորենացի, Եղիշէ, —
Չը սիրելով քեզ՝ գըրքերըդ չեն գընիլ։

Կը զգուշացընէ մեր մատենագիրները.

Գըրքիդ մէջ պարսաւանք մի՛ տալ Հային,
Հայը խըրատ (թէեւ խելօք) ատում է.
Մի՛ ծիծաղիլ նորա տխմար գործերին,
Որ նա աւանդ հօրենական կարծում է.

(Ոտանաւորներ էջ 69).

2

Փառասէր հեղինակը այս զգուշութիւնը ընելով, շողոմած կ՚ըլլայ մեր տոհմային հիւանդութիւնները. բայց լաւ է պահ մը ատելի ըլլալ Նազարեանցի և Գ. Արծրունիի պէս, փոյթ չէ, թող մեր հեղինակները, մա-

*Նուանդ հրապարակագիր գրագէտները արհամարհեն այդ տեսակ զգուշութիւնները, ինչպէս արհամարհած է նոյն ինքն Բանաստեղծը և այսօր Ռուսահայ ամենէն սիրուած քերթողն է դարձած և պաշտելի ամենուն։ Հասարակութիւնը անաչառ մատենագրին վիրահատ սուրէն միամտօրէն կը խորշի, կը զզուի, բայց վերջապէս շուտով կ'ըմբռնէ իր բժշկին բարի նպատակը ու ատելութիւնը սիրոյ կը փոխէ։ Քաթիպան՝ յիշեալ երգիծական քնարին վերջին սուները կ'որոտացընէ անաչառութեան, ճշմարտութեան ձայնով. բանաստեղծը՝ հայ գրչին կը պատուիրէ ատել, ինչ որ ատելի է.*

Դու նըմանիր ազատախօս թռչնակին,
Որ երգում է անանձնասէր յոյսերով.
Ինչո՞ւ ձիրքը քու երկնային ու հոգին,
Զբաղեցնում ես երկրի չընչին գործերով...
(Նոյն էջ 70).

3

*Կրօնքի իսկութիւնը չըմբռնող հայուն՝ ուղղուած են այս երգիծական տողերը.*

*Մաքուր կրօնն է, ասէն, պասը,*
*Ժամուց տալը յարգոյ հարց,*
*Կուշտ ուտելը, ճոխ ապրիլը —*
*Այս է վախճան մեր կենաց.*

(Ոտանաւորներ էջ 77).

4

*Հայկական բարեպաշտ, եկեղեցասէր, կրօնասէր գեղեցիկ յատկութեան հրաշխաւոր են այս տողերը.*

*Նա քաջ գիտէր, որ Հայը յանուն իր սուրբ հաւատին*
*Միշտ պատրաստ է զոհելու գանձը, տունը և որդին.*
*Աւանդութեան մըտերիմ իր պաշտելի հին նախնեաց՝*
*Համհաւասար սըրբերուն յարգում է հոգևոր հարց.*

(Նոյն էջ 116).

5

*Ամէն գիրք մի և նոյն արժէքը չունի։ Ոսկի է ոսկետառ Եղիշէի Վարդանանց պատերազմի նկարագրական գրքուկը, որուն երգեր նուիրած են Գամառ Քաթիպա և ուրիշ*

ազգային բանաստեղծներ։ Ոսկեբերան եկեղեցական բեմէն ոսկի բառեր կերտեր ու ցաներ է հաւատացեալներու սրտերուն վըրայ. իսկ մեր Եղիշէն պատերազմի նահատակներու դաշտին մէջ ընկճեալ հայութեան հնչեցուցեր է իր ոսկի շեփորը։ Կ՚ըսէ Քաթիպա.

Քեզ կարդալով՝ կը մոռանամ
Ես թերութիւնք մեր ազգին,
Դէպ Հայ եղբարքս գութ ու սիրով
Միշտ կը լըցուի իմ հոգին . . .
Եղիշէին Հայք կարդալով,
Նոյն յոյսերով կը լըցուին, . . .
Հայ պատանի՛ շուտ շուտ կարդա՛
Այս գըրքուկը ոսկետառ,
Որ համոզուիս՝ թէ մեր Հայը՝
Կորչելու ազգ չէ՛ իսպառ։

(Նոյն էջ 133–4).

6

Բանաստեղծը՝ հայ օրիորդներու համար կ՚ըսէ.

Հայ աղջկան պէտք չէ՛ զուրցել
Զաթոռ–փաթոռ ֆռանցուզնակ,

կօգտէ եփօր կըրել – կարդալ
Թէմիզ գիտէ նա հայնակ։
(Նոյն էջ 299)․

7

*Գրականութիւնը ազգի մը գեղեցիկ փառ-քերէն մին է․ Պատկանեան կը յարգէ զայն իր այս երկու տողերով․*

Անմահ մեր փառքը կըլայ կըտոր թուղթ,
Որին կաւանդենք սուրբ միտք ու խորհուրդ։
(Նոյն էջ 329)․

8

*Բայց ամէն թուղթ ու գրիչ նոյն տպաւո-րութիւնը չունի․*

Խալէմ կայ՝ մարդու սիրտ կը ցընծացընէ,
Խալէմ կայ սիրտը արուն կը լըցնէ։
(Նոյն էջ 333)․

9

*Սակայն գիտութիւնը, գրիչը խեղճ գրա-գէտին գրպանը կը ծակէ, անոր սիրտը ծակ-ծկուած կ'ըլլայ նիւթական տաժանքներու*

սլաքներով. անոր կեանքը շատ չարաստանջ կ'ըլլայ, ու ճակատագիրը յաւիտենականօրէն տառապանք, քաղցածութիւն. որուն մեծ զոհեր եղան Պէշիկթաշլեան, Դուրեան, Րաֆֆի, և այլ շատեր. որոնց մէջ ինքզինքը կը գնէ և Պատկանեան, սա իր մէկ կեղծ անունով, կը յիշատակէ.

Մինակ Սիւլիւկն է, որ ինատ կ'անէ,
Իմիշ՝ ուսումն է վեր ամէն բանէ ...
Խեւ խելքըդ աղեմ, խեղճ Սիւլիւկ աղա
Որ մինչի օրըս մընացիր տղայ.
Հալխը ունեցաւ միւլք, ռիսաք, քաւէթ,
Տու չունիս հարուր ու քաասուն մանէթ.

(Նոյն էջ 341).

10

Հաւատքի մասին՝ Րաֆֆի կը յիշատակէ քնքուշ միջադէպ մը։ Իր «Խենթի» հերոսներէն մին՝ Խաչօն, ունի չքնաղ կոյս մը Սօնա անուն, զոր հարուստ ազնուական քուրդ մը կը յափշտակէ։ Սօնան անոր ձեռքէն ազատելու համար, կը կաշառէ քըրդուհի մը. իր գլխի արախչինի (Թէփէլուխ)

*ոսկի դրամները կու տայ անոր, որ իրեն Թոյն գնէ. կը կատարուի փափաքը։ Սօնան Թոյնը առնելով կը մեռնի։ Քրդերը զայն իրենց գերեզմանին մէջ չեն Թաղեր, վասն զի ան յամառելով քրիստոնեայ մնացեր է, երբէք չեն կրցած իր հաւատքը փոխել տալ. Նա միշտ դիմադրեր է ըսելով.*

*Ես քրիստոնեայ եմ. հաւատս չեմ փոխի.*
(Խենթը, էջ 111).

*Մարմինը անԹաղ կը մնայ. քիւրտ մը, իմանալով որ ան Խաչօյի աղջիկն է, զայն կը տանի իր հօր. եկեղեցականները զայն չեն Թաղեր իբրեւ անձնասպան պիղծ համարելով. հայրը կը ստիպուի իր տան մէջ Թաղել իր սիրելի Սօնային դիակը, որ իր կուսուԹեան ու հայ հաւատքին համար անձնասպան եղեր էր։*

11

*Ցաւիտենական տրտունջ մըն է հայ ժողովրդեան ողբերգութիւնը. Րաֆֆի կը գրէ.*

*Մեր ժողովուրդը խաւարի մէջն է. պէտք է*

*դուրս բերել նրան դէպի լոյս աշխարհ։ Դպրոցը միայն կը փրկէ նրան։*

(Խենթը, էջ 226).

12

*Բայց ինչո՞ւ յուսահատիլ, կը գտնուին ուղղամիտ առաջնորդներ, որոնք կ'ուզեն կրթել ազգը, թէեւ արդիւնքի քաղումը ապագայի խնդիր է։ Կ'ըսէ Րաֆֆի.*

*Մենք, այժմ միայն սերմանացանի պաշտօն պիտի կատարենք, բայց ոչ հնձողի։ Հունձքը պիտի թողնենք ապագայ սերունդին։*

(Խենթը էջ 305).

13

*Սակայն կրթելու համար, կրթուած առաջնորդ պէտք է. սխուր է Րաֆֆիի խօսքը.*

*Մենք որ յանձն ենք առել ժողովուրդ կրթելու գործը, դեռ եւս անկիրթ ենք, դեռ եւս շատ բան պիտի սովորենք նոյն ժողովրդից։*

(Խենթը էջ 305).

## 14

*Մեր վարժարաններու դաստիարակութեան մասին Գ. Արծրունի կ'ըսէ.*

Մեր դաստիարակութեան արժանաւորութիւնը այն է, որ սպանում է երեխի մէջ առողջ միտք, բարոյականութիւն և մարմինը։ Ուսումնարանի մէջ դաստիարակութեան ուղղութիւնը անտանելի է. տան մէջ ուսումնարանից էլ վատ։

(Գ. Արծրունու աշխատութիւնները Հատ. I. էջ 10–11).

*Եւ շատ լաւ գիտել կու տայ. « որ ծնողներից պէտք է պահանջել աւելի հոգացողութիւն իրանց երեխերանց համար քան թէ ուսումնարանից » ։ Սակայն Հայ մայրերու կրթութիւնը քանի որ խիստ սահմանափակ է . . .*

## 15

*Գ. Արծրունի բնական գիտութեան ուսուցումը մեր ազգին շահեկան համարելով, գեղեցիկ առաջնորդող յօդուած մը իբրեւ դրուագ այդ գիտութեան նուիրած է. Ադոլֆ Կոլաչէկէ, Կարլ Ֆոխտէ շատ մը հանճարեղ*

*փաստեր կը բերէ, և յօդուածը կը վերջացընէ այս տողերով.*

*Բնական գիտութիւնները ազատում են մեզ սնոտիապաշտութիւնից և նախապաշարմունքներից, որոնց մէջ եթէ կմնայ ազգը, նա չէ կարող անել ոչ մի քայլ դէպի յառաջադիմութիւն։*

(Նոյն էջ 13–14).

*Եւ պէտք է գիտնալ որ յառաջադիմութեան համար ոչ միայն շատ բան պէտք է ամբարել մեր գլխին մէջ, այլ անկից շատ նախապաշարումներ, առասպելական ճշմարտութիւններ արտաքսելու է. այս առթիւ Գ. Արծրունի կը յիշատակէ Հերշելի սա նախադասութիւնը. թէ. «Յառաջադիմութեան համար ոչ թէ միայն շատ բաներ է հարկաւոր ուսանել մարդուս, բայց և հարկաւոր է նրան շատ բաներ մոռանալ»։ Բնական գիտութիւնը ապահովապէս այդ աւելորդ «շատ բաները» մեզ մոռցընել կու տայ։*

16

*Արծրունին՝ աղջկանց կրթութեան նուիրած իր մէկ առաջնորդող յօդուածին մէջ կը գրէ.*

*Եւրոպացիների կրթութիւնից մենք սեփականացրել ենք մեզ միայն արտաքին կողմը. իսկ կրթութեան հիմունքը դարձեալ ասիականն են։*

(Նոյն էջ 20).

17

*Աւանդական ճշմարտութիւն դարձաւ այն խօսքը որ կ'ըսուի թէ հայը ուր որ երթայ հետը կը տանի եկեղեցի ու մամուլ. և անոր համար իբր տխուր պարագաներու առթիւ՝ մեր գաղթավայրերը բազմացան, սկսան աճիլ նաեւ պարբերական թերթերը, առանց սակայն մտածելու որ*

Օրագիր հրատարակելը հայերի մէջ նշանակում է իւր անձը քաղցած մահին զոհել։

(Նոյն էջ 105).

*Թէեւ գրեթէ ամէն անփորձ հրատարակիչ կ'ըմբռնէ այս նախադասութեան լեղի ստուգութիւնը։*

18

*Արծրունի հայութիւնը կամ ազգասիրութիւնը եսական ճղճիմ ու ստորին վիճակէն*

*դուրս հանելու և վեր բարձրացընելու դիտումով, գրած է.*

*Օրագիր հրատարակեցէք ոչ թէ այն նպատակով, որ ընթերցողներից «հայասէրներ» և «ազգասէրներ» չինէք, — բայց այն նպատակով, որ հայերից «մարդիկ» չինէք։*

(Նոյն էջ 105).

19

*Գ. Արծրունի իր գրական գործունէութեան արշալուսային շրջանին, երկար յօդուածով ցոյց տուած է որ չունինք նոր գրականութիւն, այլ ունինք հինը. բայց այն մեր կենսական նոր պահանջներուն ոչ նպաստաւոր է և ոչ ալ միջոց մը յառաջադիմութեան. կը գրէ.*

*Նոր գրականութիւն չկայ, իսկ հին գրականութիւնը թէպէտեւ կայ և հարուստ է մինչեւ անգամ, բայց մեր այժմեան հարկաւորութիւններին յարմար չէ, չէ կարող բաւականացնել մեր այժմեան պահանջմունքին ու մեր մտաւոր և նիւթական աշխատանքին օրինաւոր ուղղութիւն չէ կարող տալ։*

(Նոյն էջ 137).

20

*Ու գրականութեամբ հարուստ, իսկ նիւթական պահանջներով սովեալներու մասին գրական այս մարգարէութիւնն ալ կ'ընէ.*

*Մեր մէջ ոչ ոք չէ կարող ապրել ու իւրեան կերակրել ոչ հայկական գրքեր գրելով կամ թարգմանելով, և ոչ եւս հայկական օրագիր հրատարակելով։*

(Նոյն էջ 137).

21

*Հայրենիք դարձող ուսումնաւարտ ուսանողներու համար՝ Արծրունին կը գրէ.*

*Հայրենիք վերադարձած ուսումնաւարտ երիտասարդներից շատերը, թէ բժիշկներ, թէ իրաւաբաններ, թէ բնագէտներ, այնքան թոյլ, երեխայական զարգացում ունին, որ ոչ թէ միայն գրել չեն կարող մի օրինաւոր յօդուած, այլ խօսակցութեան մէջ եւս չեն կարող որոշ մէկ միտք յայտնել։*

(Նոյն էջ 158).

22

*Յառաջադիմութեան, հասարակական սթա-*

*փեցուցիչ զարգացումին համար պէտք է հայ գիտնականներու բանակներ, ուսեալներու գործունէութիւն. հարկաւոր է այս.*

Եթէ հարկաւոր ենք համարում մեր մէջ ուսեալ մարդիկ ունենալու, – կարող ենք այդ բանին հասնել միայն մի միջոցով. այն է գումարներ կազմել, ընկերութիւններ հիմնելով։ — Ուրեմն ի՞նչի չենք հիմնում։

(Նոյն էջ 179).

*Բայց կը շարժին, ու հիմնելու փափաք կայ, սակայն գո՞րծ, արդի՞ւնք . . .*

23

*Պարբերական օրագրութեան մասին Արծրունիի սա նախադասութիւնը շատ ճիշդ գրուած է.*

Օրագրութիւնը երկսայրի զէնք է։ Վատ կերպով գործածված նա վնաս կարող է բերել հասարակութեանը. հասկանալով իւր հասարակական պաշտօնը, նա օգուտ է բերում ժողովրդին . . .

(Նոյն էջ 193).

24

*Ու գրագէտներու համար հիանալի է սա բարոյական պատուէրը.*

*Գրողը չ'պէտք է նայէ իւր հակառակորդի վերայ ինչպէս թշնամու վերայ։*

(Նոյն էջ 194).

25

*Կարելի է յարգել Աբծրունիի սա սկըզբունքը.*

*Հայերի մէջ շատ յօդուածներ են տպւում, որոնք ոչ մի ուղղութիւն չունենալով, արժանի չեն քննադատութեան։*

(Նոյն էջ 195).

26

*Աբծրունին եւս ունի իր հաւատքի դրօշը.*

*Քրիստոնէութիւնը ճշմարտութիւն է, – և նա բացարձակ յայտնեց իւր ուսումը մարդին և կնոջ հաւասարապէս։*

(Նոյն էջ 221).

27

***Քրիստոնէութեան մասին հիանալի ճշմարտութիւն կը բովանդակեն Արծրունիի սա տողերը.***

*Քրիստոնէութիւնը, կամ աւելի լաւ ասեմ Աւետարանը, բովանդակում է իւր մէջ երեք մեծ գաղափար, սէր, հաւասարութիւն և ազատութիւն, որոնք ազգերի հասարակական կեանքում ծնել են աշխատանք, օրէնք և անհատութիւն։*

(Նոյն էջ 301).

28

***Մեր կրօնքի, Քրիստոնէութեան համար Գ. Արծրունի շատ վեհ գաղափարներով կը խօսի. նա կը յայտնէ իր այս համոզումները.***

*Քրիստոնէութիւնը վեր է քան աստուածաբանութիւնը ... — Քրիստոնէութեան սկիզբները, այսինքն ազատութիւն, հաւասարութիւն, եղբայրսիրութիւն ամեն մարդի, ամեն կազմվածքի, ամեն կլիմայի, ամեն ազգի, ամեն ցեղի, ամեն ժամանակի համար ճշմարտութիւն են և կմնան . . .*

(Նոյն էջ 314).

29

*Գ. Արծրունի 1870 ապրիլ 27ին, ներկայ կ'ըլլայ Վենետիկի Միաբաններուն ի պատիւ իրենց հիմնադրին կարդացուած ճառախօսութեան, այդ ճառը գրաբար ըլլալով, զայն չի կրնար ամբողջապէս հասկնալ, սակայն ըմբռնած ըլլալով որ Մխիթարայ ամբողջ գործունէութիւնը կենդանութիւն է, նոյն հանդէսը նկարագրած իր գրութեան մէջ սա դիտողութիւնը կ'ընէ.*

*Ինչի՞ մի կենդանարար երեւոյթը պատմվում է մեռած լեզւով։*

(Նոյն էջ 239).

*Երբ տեղ մը մեռած է այս լեզուն, բնականաբար պէտք է յարգուի Արծրունիին գաղափարը, որ սակայն Մխիթարեաններուն համար չէ, վասն զի մեզի համար մեռած չէ այդ լեզուն։*

30

*Գրիգոր Արծրունիի մէկ յօդուածին մէջ մեր մամուլը խիստ լաւ կը քննադատուի.*

*Մեր գրական ասպարէզում գործող մարդիկը, ոչ թէ միայն չպատրաստված, այլ և չպատրաստվող գրողներ են։*

*Եւ լաւ ու օգտակար օրագրական մամուլ մը ունենալու համար, պէտք է գիտնալ, որ.*

*Ազգային օրինաւոր օրագրութիւնը միայն այն ժամանակ կհիմնվի, երբ խմբագրութիւնը կազմող գրողներից ամեն մէկը գիտութեան մի որ և է ճիւղին մասնաւորապէս տեղեակ կլինի։*

(Նոյն էջ 311).

31

*Մեր աշխարհաբար լեզուի մասին Գ. Արծրունի կը գրէ.*

*Մեր աղքատ, անտաշ աշխարհաբարը նմանապէս արդիւնք է մեր աղքատ հասարակական կեանքի։*

(Նոյն էջ 338).

32

*Մի և նոյն հրապարակագիրը մեր հեղինակներուն համար սա գեղեցիկ յորդորը յայտնած է.*

*Հեղինակը պիտի հասարակութեան և ժողովուրդի կեանքի կենսական երեւոյթների մէջ միջնորդ լինի։*

(Նոյն էջ 392)․

33

***Ճոռոմ ծրագիրներով պերճաշուք և արդիւնքով սնանկ վարժարաններուն համար կարելի է գործածել Յ. Պարոնեանի այս երգիծանքը.***

*Վարժարաններու մէջ ամեն բան կը գտնուէր բացի ուսումէ։*

(Ազգ. Ջոջեր էջ 25)․

34

***Պարոնեան դատարկ գրքերը կը հեգնէ այս տողերով.***

*Լաւագոյն դասագրքերն անոնք են, որ շատ վաստակ կը ձգեն անոնց հեղինակներուն։*

(Նոյն էջ 196)․

35

***Կրթարաններու մէջ ծեծը դաստիարակու-***

*Թեան գործիք ընող կոպիտ վարժապետնե-րուն համար, հեգնական առած կարելի է ընդունիլ Պարոնեանի առ Միսաքեան ընծայած այս երկու տողերն.*

*Ճեմարանի աշակերտներուն դաս տալու տեղ սկսաւ ապտակ տալ։*

(Նոյն էջ 209).

36

*Անհոգի, անգաղափար, ունայնամիտ սակայն կոկիկ գրուածներու առթիւ, կրնանք գործածել առ Միսաքեան ուղղեալ Պարոնեանի հետագայ այս տողերը.*

*Խօսքերու վարսավիրայ մ'է, որ ասդիէն անդիէն խօսքեր հաւաքելով զանոնք կը սանտրէ, կը կոկէ, անուշաբոյր իւղով կօծէ և հրապարակ կը հանէ, և երկու տողով հասկանալի բան մը իւր գրչին տակ երկու էջի մէջ անհասկնալի կըլլայ։*

(Նոյն էջ 213).

37

*Սովալլուկ խեղճ խմբագիրներու երգիծական նկարագիրը կարելի է համարել Պարո-*

*նեանի սա տողերն. կ'ըսէ. Աստուած աշխարհ-քիս վրայ անպէտ բան չէ ստեղծած.*

*Խմբագիրներ ստեղծած է՝ ցոյց տալու համար թէ մարդս չէ կարող իւր ճակտին քրտինքովը ապրիլ։*

(Նոյն էջ 321).

38

*Իսկ կրթական առաջնորդներու, աղքատ դասատուներու դիրքը կը հեգնէ այսպէս.*

*Քաղաքագէտներն մեծ գործ մը ըրած կըլլան, եթէ կախվելու անձերն Թուրքիա խրկեն դասա-տուութիւն ընելու։*

(Նոյն էջ 324).

39

*Եւ յետոյ սա սխուր երգիծանքն ալ կը կարդանք.*

*Վարժապետի, տնօրէնի մը համար քիչ մը ստա-խօսութիւն և քիչ մ'ալ չողոքորթութիւն ան-հրաժեշտ պէտք է, և այն տնօրէնն, որ այս եր-կու առաքինութիւններէ զուրկ է՝ անպատճառ օր մը հեռանալ պիտի ստիպվի այդ ասպարէ-զէն։*

(Նոյն էջ 327–8).

## 40

Ու տպարանները որ մեր կրթութեան մտաւորական զարգացումին հոգի կը ներշնչեն, անոնց մասին ալ Պարոնեան կը նուիրէ սա երկտողը, ակնարկելով Մխիթարեանի տպարանը.

Ինչպէս բոլոր հայ տպարանները, չէր կարող իւր ծախքը գոցել հայերէն հրատարակութիւններ ի լոյս ածելով ... կեցցե՛ն ազգային գրականութիւն և անօթութիւն։

(Նոյն էջ 349).

## 41

Հ. Ալիշան բնիկ և օտար կրթարաններու մասին սա գեղեցիկ գաղափարը յայտնած է.

Օտար վարժապետք թէ շատ՝ խնամակալ եւեթ են աշակերտացն, իսկ ազգայինն հայր և դայեակ։

Եւ առաջ տանելով իր գրութիւնը կ՚ըսէ. « Նոցա ձեռամբ՝ սա սրտին ջամբէ. նոցա բաղում այն է զի վարձկանք են ըստ Տեառն բանի, իսկ սա հովիւ ճշմարիտ՝ որ ոչ խնայէ յանձն վասն հօտին սիրելւոյ ... »։

(Բազմավէպ 1840 էջ 345).

20

*Ու գրականութեամբ հարուստ, իսկ նիւթական պահանջներով սովեալներու մասին գրական այս մարգարէութիւնն ալ կ՚ընէ.*

*Մեր մէջ ոչ ոք չէ կարող ապրել ու իւրեան կերակրել ոչ հայկական գրքեր գրելով կամ թարգմանելով, և ոչ եւս հայկական օրագիր հրատարակելով։*

(Նոյն էջ 137).

21

*Հայրենիք դարձող ուսումնաւարտ ուսանողներու համար՝ Արծրունին կը գրէ.*

*Հայրենիք վերադարձած ուսումնաւարտ երիտասարդներից շատերը, թէ բժիշկներ, թէ իրաւաբաններ, թէ բնագէտներ, այնքան թոյլ, երեխայական զարգացում ունին, որ ոչ թէ միայն գրել չեն կարող մի օրինաւոր յօդուած, այլ խօսակցութեան մէջ եւս չեն կարող որոշ մէկ միտք յայտնել։*

(Նոյն էջ 158).

22

*Յառաջադիմութեան, հասարակական ոգա-*

*փեցուցիչ զարգացումին համար պէտք է հայ գիտնականներու բանակներ, ուսեալներու գործունէութիւն. Հարկաւոր է այս.*

Եթէ հարկաւոր ենք համարում մեր մէջ ուսեալ մարդիկ ունենալու, – կարող ենք այդ բանին հասնել միայն մի միջոցով. այն է գումարներ կազմել, ընկերութիւններ հիմնելով։ — Ուրեմն ի՞նչի չենք հիմնում։

(Նոյն էջ 179).

*Բայց կը շարժին, ու հիմնելու փափաք կայ, սակայն գո՞րծ, արդի՞ւնք . . .*

23

*Պարբերական օրագրութեան մասին Արծրունիի սա նախադասութիւնը շատ ճիշդ գրուած է.*

Օրագրութիւնը երկսայրի զէնք է։ Վատ կերպով գործածված նա վնաս կարող է բերել հասարակութեանը. հասկանալով իւր հասարակական պաշտօնը, նա օգուտ է բերում ժողովրդին . . .

(Նոյն էջ 193).

24

*Ու գրագէտներու համար հիանալի է սա բարոյական պատուէրը.*

*Գրողը չ'պէտք է նայէ իւր հակառակորդի վերայ ինչպէս թշնամու վերայ։*

(Նոյն էջ 194).

25

*Կարելի է յարգել Արծրունիի սա սկըզբունքը.*

*Հայերի մէջ շատ յօդուածներ են տպւում, որոնք ոչ մի ուղղութիւն չունենալով, արժանի չեն քննադատութեան։*

(Նոյն էջ 195).

26

*Արծրունին եւս ունի իր հաւատքի դրօշը.*

*Քրիստոնէութիւնը ճշմարտութիւն է, – և նա բացարձակ յայտնեց իւր ուսումը մարդին և կնոջ հաւասարապէս։*

(Նոյն էջ 221).

## 27

*Քրիստոնէութեան մասին հիանալի ճշմարտութիւն կը բովանդակեն Արծրունիի սա տողերը.*

*Քրիստոնէութիւնը, կամ աւելի լաւ ասեմ Աւետարանը, բովանդակում է իւր մէջ երեք մեծ գաղափար, սէր, հաւասարութիւն և ազատութիւն, որոնք ազգերի հասարակական կեանքում ծնել են աշխատանք, օրէնք և անհատութիւն։*

(Նոյն էջ 301).

## 28

*Մեր կրօնքի, Քրիստոնէութեան համար Գ. Արծրունի շատ վեհ գաղափարներով կը խօսի. նա կը յայտնէ իր այս համոզումները.*

*Քրիստոնէութիւնը վեր է քան աստուածաբանութիւնը ... — Քրիստոնէութեան սկիզբները, այսինքն ազատութիւն, հաւասարութիւն, եղբայրսիրութիւն ամեն մարդի, ամեն կազմվածքի, ամեն կլիմայի, ամեն ազգի, ամեն ցեղի, ամեն ժամանակի համար ճշմարտութիւն են և կմնան . . .*

(Նոյն էջ 314).

29

Գ. Արծրունի 1870 ապրիլ 27ին, ներկայ կ՚ըլլայ Վենետիկի Միաբաններուն ի պատիւ իրենց հիմնադրին կարդացուած ճառախօսութեան, այդ ճառը գրաբար ըլլալով, զայն չի կրնար ամբողջապէս հասկնալ, սակայն ըմբռնած ըլլալով որ Մխիթարայ ամբողջ գործունէութիւնը կենդանութիւն է, նոյն հանդէսը նկարագրած իր գրութեան մէջ սա դիտողութիւնը կ՚ընէ.

Ինչի՞ մի կենդանարար երեւոյթը պատմվում է մեռած լեզվով։

(Նոյն էջ 289).

Երբ տեղ մը մեռած է այս լեզուն, բնականաբար պէտք է յարգուի Արծրունիին գաղափարը, որ սակայն Մխիթարեաններուն համար չէ, վասն զի մեզի համար մեռած չէ այդ լեզուն։

30

Գրիգոր Արծրունիի մէկ յօդուածին մէջ մեր մամուլը խիստ լաւ կը քննադատուի.

*Մեր գրական ասպարէզում գործող մարդիկը, ոչ թէ միայն չպատրաստված, այլ և չպատրաստվող գրողներ են։*

***Եւ լաւ ու օգտակար օրագրական մամուլ մը ունենալու համար, պէտք է գիտնալ, որ.***

*Ազգային օրինաւոր օրագրութիւնը միայն այն ժամանակ կհիմնվի, երբ խմբագրութիւնը կազմող գրողներից ամեն մէկը գիտութեան մի որ և է ճիւղին մասնաւորապէս տեղեակ կլինի։*

(Նոյն էջ 311).

31

***Մեր աշխարհաբար լեզուի մասին Գ. Արծրունի կը գրէ.***

*Մեր աղքատ, անտաշ աշխարհաբարը նմանապէս արդիւնք է մեր աղքատ հասարակական կեանքի։*

(Նոյն էջ 338).

32

***Մի և նոյն հրապարակագիրը մեր հեղինակներուն համար սա գեղեցիկ յորդորը յայտնած է.***

*Հեղինակը պիտի հասարակութեան և ժողովըրդի կեանքի կենսական երեւոյթների մէջ միջնորդ լինի։*

(Նոյն էջ 392).

33

***Ճոռոմ ծրագիրներով պերճաշուք և արդիւնքով սնանկ վարժարաններուն համար կարելի է գործածել Յ. Պարոնեանի այս երգիծանքը.***

*Վարժարաններու մէջ ամեն բան կը գտնվէր բացի ուսումէ։*

(Ազգ. Ջոջեր էջ 25).

34

***Պարոնեան դատարկ գրքերը կը հեգնէ այս տողերով.***

*Լաւագոյն դասագրքերն անոնք են, որ շատ վաստակ կը ձգեն անոնց հեղինակներուն։*

(Նոյն էջ 196).

35

***Կրթարաններու մէջ ծեծը դաստիարակու-***

*Թեան գործիք ընող կուլիտ վարժապետան-րուն համար, հեղնական առած կարելի է ընդունիլ Պարոնեանի առ Միսաքեան ընծայած այս երկու տողերն.*

*Ձեմարանի աշակերտներուն դաս տալու տեղ սկսաւ ապտակ տալ։*

(Նոյն էջ 209).

36

*Անհոգի, անգաղափար, ունայնամիտ սակայն կոկիկ գրուածներու առթիւ, կրնանք գործածել առ Միսաքեան ուղղեալ Պարոնեանի հետագայ այս տողերը.*

*Խօսքերու վարսավիրայ մ'է, որ ասդիէն անդիէն խօսքեր հաւաքելով զանոնք կը սանտրէ, կը կոկէ, անուշաբոյր իւղով կօծէ և հրապարակ կը հանէ, և երկու տողով հասկանալի բան մը իւր գրչին տակ երկու էջի մէջ անհասկնալի կըլլայ։*

(Նոյն էջ 213).

37

*Սովալլուկ խեղճ խմբագիրներու երգիծական նկարագիրը կարելի է համարել Պարո-*

*նեանի սա տողերն. կ՚ըսէ. Աստուած աշխարհքիս վրայ անպէտ բան չէ ստեղծած.*

Խմբագիրներ ստեղծած է՝ ցոյց տալու համար թէ մարդս չէ կարող իւր ճակտին քրտինքովը ապրիլ։

(Նոյն էջ 321)։

38

*Իսկ կրթական առաջնորդներու, աղքատ դասատուներու գիրքը կը հեգնէ այսպէս.*

Քաղաքագէտներն մեծ գործ մը ըրած կըլլան, եթէ կախվելու անձերն Թուրքիա խրկեն դասատուութիւն ընելու։

(Նոյն էջ 324)։

39

*Եւ յետոյ սա տխուր երգիծանքն ալ կը կարդանք.*

Վարժապետի, տնօրէնի մը համար քիչ մը ստախօսութիւն և քիչ մ՚ալ շողոքորթութիւն անհրաժեշտ պէտք է, և այն տնօրէնն, որ այս երկու առաքինութիւններէ զուրկ է՝ անպատճառ օր մը հեռանալ պիտի ստիպվի այդ ասպարէզէն։

(Նոյն էջ 327–8)։

## 40

Ու տպարաններըը որ մեր կրթութեան մտաւորական զարգացումին հոգի կը ներշնչեն, անոնց մասին ալ Պարոնեան կը նուիրէ սա երկտողը, ակնարկելով Մխիթարեանի տպարանը.

Ինչպէս բոլոր հայ տպարանները, չէր կարող իւր ծախքը գոցել հայերէն հրատարակութիւններ ի լոյս ածելով ... կեցցէ՛ն ազգային գրականութիւն և անօթութիւն։

(Նոյն էջ 349).

## 41

Հ. Ալիշան բնիկ և օտար կրթարաններու մասին սա գեղեցիկ գաղափարը յայտնած է.

Օտար վարժապետք թէ շատ՝ խնամակալ եւեթ են աշակերտացն, իսկ ազգայինն հայր և դայեակ։

Եւ առաջ տանելով իր գրութիւնը կ'ըսէ. «Նոքա ձեռամբ՝ սա սրտիւն ջամբէ. նոքա բազում այն է զի վարձկանք են ըստ Տեառն բանի, իսկ սա հովիւ ճշմարիտ՝ որ ոչ խնայէ յանձն վասն հօտին սիրելւոյ ...»։

(Բազմավէպ 1846 էջ 345).

## 42

Հ. Ալիշան կրօնական ոգեւորութեամբ բռնկած, երբ նկատողութեան կ'առնէ համալսարանական ինչ ինչ սկզբունքները որ հոգեկան կործանում կը պատճառեն, կը զգուշացընէ Հայ աշակերտները.

Փախերո՜ւք հայրենիք իմ, փախերուք մանկունք Թորգոմայ յայդպիսեաց ուսուցչաց, զի մի՛ վարձ աշակերտութեան ձերոյ հոգիք ձեր լինիցին։

Նախ քան այս յորդորը՝ կը պարզէ համալսարանի ազդեցութիւնը. Հայրենասէր է Հ. Ալիշան, սակայն Հայ կրօնքը և հոգեկան սկզբունքը քանի որ համալսարանի մէջ վտանգի ենթարկուելիք կը համարի, շատ երկիւղածութեամբ կը զգուշացընէ։ Ահա իր անձնական ըմբռնումը. իր գրութիւնը իր գաղափարներուն թարգմանը թող ըլլայ. «Մի ծանր թուեսցին ձեզ բանքս թէպէտ և ահաւորք. օրինակք առաջի կան մեր յԵւրոպա՝ որում ի գոլենլիսն ջանամք նմանել. քաջ իսկ քննեսցուք զնա, զի մի՛ գայթակղութեան մեզ եղեալ քար՝ փոխանակ շի-

*նութեան առ նոյլաւ գթիցեմք։ Ահա հա-
մալսարանք գերապանծք և համբակք լրա-
ցեալք վարժիւք, և յաղթանակաւն իսկ պսա-
կեալք. այլ երանի՜ թէ բնաւ և չէր իսկ
մտեալ նոցա ընդ դպրոցին դուռն. երանի՜
թէ ընդ պարզամիտ խուժանին շփոթէին բաղ-
դիւն այլ ոչ հոգւոյքն ընդ չարախուժ դի-
ւաց, բաժակ գեղեցիկ թուին՝ նոքա լի ա-
մենայն զզուանօք, քան զարտաքին երեւոյթն
և զպսակսն ինչ չունելով աւելի ի բարեաց.
յոր եթէ մօտ մատչիցիս, ժահք ապակա-
նեալ վարուց անարգել արբանեկութեամբ
կրից՝ ընդ ուղիղսդ բաղխիցին, հոտ մահուն
աստուածգիտութեան զսիրտ հարկանիցէ, և
ընդ մեղու օրինակաւ թոյն ամենադառն
սփռիցի ... առաջք նոցա դրախտ փափկու-
թեան և վերջք նոցին աւերածք մահու...»*

(Բազմավէպ 1846 էջ 357).

43

*Ցանձնապաստան գիտուններու, համալսա-
րանականներու և վարիչներու մասին Հ. Ա-
լիշան եռանդուն կրօնականութեամբ կը գրէ.*

ի զուր են համալսարանքդ և նախաթոռք կըր-
թարանաց ձերոց. սուտ պարծին փիլիսոփայքդ՝
որ լռւսով բանին իւրեանց ասեն առաջնորդել
մարդկութեան. երկիւղ տեառն է կարապետ մը-
տաց։

(Նոյն էջ 358).

44

Վերոյիշեալ տողերը գրողը կը պատուիրէ
մեր դաստիարակներուն.

Ցուցէ՛ք նոցա (աշակերտաց) զճանապարհս զոր
կոխեցին աշակերտք Մեսրովպայ և Սահակայ և
Ներսիսի, զորոց զաթոռն ունիք։

(Նոյն էջ 358).

45

Հ. Ալիշան կը խրախուսէ զհայ մանկտի
ուսանողները.

Քաջալերեա՛ց արդ քաջալերեաց ուսումնավարժ
մանկտի Հայաստանեայց. դոյզն և սակաւ են
ժամանակք քրտանց և վաստակոց, յաւերժա-
կանք են վայելք հանգստեանն։

(Նոյն էջ 374).

46

Հ. Ալիշան իր Ռափայէլեան վարժարանի

*աւարտաւլարժ սանձերուն ուղղած մէկ ճառին մէջ կը յայտնէ սա միտքը.*

*Անսպառ են գիտութիւնք, և մարդս միշտ համ֊ բակ, և միշտ կարօտ և կարող յուսանել. քայլ զոր յառաջէ նա ի գիտութեան՝ խոստովանի զյետամնացութիւնն. ասպարէզ զոր կարճէ՝ նոր և ընդարձակագոյն եւս բանայ նմա. և որ յե֊ րէկն գիտուն էր ըստ ժամուն կարծեաց կամ պիտոյից՝ այսօր ընդ տգէտս դասի՝ եթէ ոչ ժո֊ ղովեաց զսերկեանս գիւտ։*

(Բազմավէպ 1848 էջ 166).

47

*Հ. Ալիշան իր աշակերտաց կը յիշեցը֊ նէ որ ինչպէս ուսանողք, այնպէս և ուսու֊ ցիչք կրնան թերանալ. երկու կողմանէ պէտք է ներողամտութիւն, և աշակերտք աւելի նե֊ րողամիտ պիտի ըլլան, վասն զի ծանր է դաստիարակին պաշտօնը.*

*Քան զդաստիարակաց արուեստ չիք ինչ դժըն֊ դակ և բազմազգոյշ։*

*Ինքը իբրեւ փորձ կը խօսի. «Ո՜հ, ո՜հ, զի ի փորձոյ ուսայ. որքան ամենօգուտ իր, այնքան խիթալի»։*

(Նոյն էջ 166).

48

*Կրօնականին հոգին է բարեպաշտութիւնը. Հայը միշտ երկիւղած աստուածասէր եղած է. Հ. Ալիշան Հայուն բարեպաշտութեան վրայ կը գուրգուրայ. այդ առաքինութենէն վեր բան չի կայ. Հայրենասէր բանաստեղծը իր սաներուն կը պատուիրէ.*

*Բարեպաշտութի՛ւն, ո՜ սիրելիք, բարեպաշտութիւն եւեթ. «Այս է մարդն ամենեւին»։*

*Սա անփոխանակելի է. ասոր՝ եթէ հարկ ըլլայ, Հ. Ալիշան կը պատուիրէ որ զոհենք նոյն իսկ սիրելի Հայաստանը. կ'ըսէ աշակերտներուն որ բարեպաշտութիւնը — «Սա լիցի և ձեզ գլուխ ըղձալեաց, ընդ որում ոչ փոխանակեսջիք և ոչ մի ինչ. այլ, ո՜հ, և զհայրենիս անգամ, եթէ հարկ ինչ այնպէս լինէր ապախտ առնել ի գիւտ սորա, ես ինքն փութացուցանէի զձեզ զոհել և զհայրենիս. ես ինքն համարձակեալ կորզէի և տայի ձեզ զջահսն եթերականս՝ հուր հարուլ խանձել զՀայաստան և ծխով նորին որպէս զհրեշտակն գեղէցիկեան վերանալ ի յերկինս»։*

(Նոյն էջ 183).

49

*Հ. Ալիշան պարզ և ժողովրդական բացատրութիւններով ապացուցած է, որ*

*Օտարի կրթութիւնն կամ քիչ կամ ոչինչ կը յաջողի, կամ կրթուողն իր ազգային ոգին կը կորսընցընէ։*

(Բազմ. 1849 եր 34).

50

*Ազգային կրթութիւնը՝ ազգասիրութեան հմայքը կը ներշնչէ հայ պատանիներուն.*

*Լաւ դաստիարակութիւնը կ'իմացընէ մարդուս՝ որ ինքը միայն իրեն համար, կամ միայն իր ընտանեացը համար չէ երկրիս վրայ. աւելի մեծ ընտանիք մ'ալ ունի որ է Ազգը։*

(Բազմ. 1849. եր 129).

51

*Կրօնքը, Հաւատքի տարաձայնութիւնները ներքին ահռելի կռիւներու և երկպառակութեանց պատճառ եղած են։ Հ. Ալիշան կը յորդորէ.*

*Ջանանք որ ամէնքս ալ միակրօն ըլլանք ուղղութեամբ, բայց քանի որ փափագնիս չէ յա-*

Ջողած՝ նախ մէջերնէս ատելութիւնը վերցընենք։
(Բազմ. 1849 էջ 132).

52

Մինչդեռ չի կար տպագրական այն մո–դական դիւրութիւնները, մենք Հայքս գրական մեծ խանդավառութեամբ ճոխացուցեր ենք հայ մատենագրութիւնը. Թանգարաններու մէջ այժմ դիզած ենք նախնեաց գրչագիրները, որոնք վկայ են մեր քրտնաջան գրագէտներու բեղմնաւոր գործունէութեան։ Հայ միտք ու լեզուն կարծես երկինք օրհնած է. և այսպէս կ'երգէ Նահապետ.

ՅԱստուծոյ առեր ըզլեզուն ու զգիր,
Թարգմաներ յամէն ազգէ գիրք ընտիր.
Ճարպիկ տղայք ղըրկել ի Ստըմպօլ, յԱթէնք,
Հայն հոռոմ լեզուով յաղթել է զՀելլէնք.
Շատ գըրքունք գըրեր մեր հարքն ու մագաղաթ
Չէտ ցորեն դիզել քանց բարձր Արարատ։
(Հայրունի էջ 273).

53

Մեր կրօնքին, մեր հաւատքին համար կ'ըսէ Նահապետ.

*Հայոց հաւատս է փրկչին հաւատ,*
*Ցառաքելոց բերած նախընծայ,*
*Լուսաւորիչըն տընկեց հաստատ*
*Ուր մեր արիւնքս ոռոգեն ըզնայ։*

(Նոյն եջ 353–4)․

54

*Անաստուածներ հազուագիւտ են և աստուածասէրներ շատե՛ր, ու ամէն ազգ ըստ իր վարչապետութեան կը դաւանի իր Աստուածը, իր բարութեան աղբիւրը․ սակայն մարդկային բարքը լուրջ քննութեան առնելով, կը տեսնենք որ աստուածպաշտներու միջեւ պէտք է խտրութիւն դնել․ շատերուն գործը չի համապատասխաներ իր հոգեկան սկզբունքներուն․ շատերը ըստ աստուածաքան ճշմարտութեան*

*խոստանան գիտել զԱստուած, և գործովք իւրեանց ուրացեալ են ի նմանէ։*

(Եզնիկ եջ 110)․

55

*Հոգեբանական և աստուածաբանական խնդրոց մէջ, քմածին բաղձանքներու հա-*

*մեր հոգեբաններն և աստուածաբանները Մարկիոնի սեփհական Եզնիկի սա խօսքը կրնան գործածել.*

*Թողեալ զճշմարտութիւն հոգւոյն և նստի առասպելս կարկատէ։*

(Նոյն էջ 253).

56

*Եզնիկ կրօնական սա խրատները կու տայ.*

*Աստուածասէրն յիւր կամացն որպէս ի թըշնամւոյ զգուշանայ։*

(Նոյն էջ 299).

57

*Կրօնաւոր մարմնասէր՝ խոզի նման է, ի ծովացեալ մեղացն հեղձնու։*

(Նոյն էջ 300).

*Արտասուս լուացումն է մեղաց, և հոգւոց հանելն ապաշխարութիւն։*

(Նոյն էջ 300).

*Եւ զոր Աստուած խնդրէ զայն ոչ ունիմք, զսէր, զխոնարհութիւն. շրթամբք սիրեմք զԱստուած, և ի զուր աշխատիմք։*

(Նոյն էջ 301).

*Մանուկ կրօնաւոր, որ ոչ էառ ուս ծերոց, անջան որս է սատանայի։*

(Նոյն էջ 302).

*Մանկագոյն կրօնաւորի մի՛ ասեր զծածուկսն քո, զի մահ է նորա։*

(Նոյն էջ 302).

*Մի՛ սիրեր զյագուրդ կերակրոց կամ զըմպելեաց. ապա թէ ոչ՝ զմարմինդ քաղաք պոռնկութեան չինես և ամրոց սատանայի։*

(Նոյն էջ 303).

*Գինի զբազմութիւն ախտից զարթուցանէ, և զերկիւղն Աստուծոյ հալածէ։*

(Նոյն էջ 303).

*Մի՛ թիւնաթափ լինիր յեղբայրն խրատու պատճառաւ։*

(Նոյն էջ 303).

*Ջվէրն՝ կակուղ դեղն բժշկէ, և զախտս՝ բարեգործութիւնն։*

(Նոյն էջ 303).

*Կրօնաւոր պճնող ասպնջական է դիւաց։*

(Նոյն էջ 303).

*Որ մարմնական ընչից ցանկայ պոռնկութիւն է։*

(Նոյն էջ 304).

## 58

Պատմիչները գրած ու նկարագրած են բաբելոնական լեզուաց խառնակութիւնը, աշտարակի կանգնումը և խորտակումը աստուածասաստ։ Ագաթանգեղոս նկարելով զայն սա հոգեպատում ճարտասանութիւնը կ'ընէ, թէ.

Փոխանակ բարձրաբերձ և վաղուեր աշտարակին՝ խաչն ճշմարտութեան կանգնեցաւ. որոյ զօրութիւնն մշտնջենական է։

(Ագաթանգեղոս 432).

## 59

Մեր սկզբունքները, մեր գիտութիւնը առանց խոր արմատի կարող չեն կեանք ունենալ, քննադատական լուրջ, և ոյժգին հարուածով ջախջախուելու վտանգի մէջ են ամէն թեթեւ գիտութիւն և գաղափար։ Առակախօս Մխիթարը՝ մեզի աւանդած է հետագայ խելացի օրինակը.

Խոհեմ ոք եհարց զծառս, եթէ զի՞նչ են պատճառք՝ զի որքան բարձրանայք, այնքան արմատս ի խոր ձգէք. և նոքա ասեն. խոհական գոլով

*զի՞արդ ոչ գիտես՝ եթէ ոչ կարէաք այսքան ոստս բառնալ և ընդդիմանալ հողմոց բռնութեան, եթէ ոչ զարմատս ի խոր՝ և բազմոստս առնէաք. տեսանես զեղբարսն մեր զհաճարի և զփիճի, զի ոչ են բազմոստք, և ոչ ընդդիմանալ հողմոց կարեն, ի խոր արմատս ոչ ունելովք։*

(Մխիթ. Գոշ. Առակք 25).

60

*Մեր ազգին անուսումնասիրութիւնը կարելի է խնդրոյ նիւթ ըլլալ, սակայն պատմական վկայութիւններ զայն դժբաղդաբար կը հաստատեն. ահա մեր պատմահայրն կը գրէ.*

*Այլ ինձ թուի, որպէս այժմ՝ և առ հինսն հայաստանեայց լեալ անսիրելութիւն իմաստութեան և երգարանաց բանաւորաց։*

(Խորէն. Պատմութ. էջ 21).

61

*Լաւ դաստիարակը կը սիրէ աշակերտներու ընտրութիւն. արհեստի յարմարը՝ արհեստի, ուսմանը՝ ուսման կը յատկացնէ. այս կը պահանջէ բարձրագոյն կրթարանին լուրջ սկզբունքը. մեր նախնիք առաջին անգամ*

որ հայկական տառերով սկսան ուսումներ աւանդել, տգէտը գիտուն աշակերտէն զատեցին. ուսմանց յարմար, ընդունակ աշակերտներով բացին վարժարանը։ Կը գրէ Խորենացին Մովսէս. «Եկեալ Մեսրոպայ, և բերեալ զնշանագիր մերոյ լեզուիս, և հրամանաւ Վռամշապհոյ և մեծին Սահակայ

Ժողովեալ մանկունս ընտրեալս, ուշեղս և քաջասունս, փափկաձայնս և երկարոգիս, և դպրոցս կարգեաց յամենայն գաւառս։

(Նոյն էջ 499).

62

Գրքերու Թշնամին ալ դժբաղդաբար դարձեալ մեր ձեռքերն եղած են։ Ս. Գ. Լուսաւորիչ կրօնական սկզբունքով հրատոչոր՝ կ'այրէ մեհենական գրքերը. յոյն գրքերը Հայաստանի մէջ լոյս կը տարածէին. յունատեաց Մերուժանը զանոնք մոխիր կը դարձնէ.

Ի Մերուժանայ այրեալ լինէին ընդհանուր աշխարհիս յոյն գիրք։

(Նոյն էջ 500).

63

*Գրոց գիւտէն առաջ, դպրութեան կարեւոր լեզուն յունարէնն էր. ինչպէս Հայերէնը այժմ, այնպէս ալ յունարէնը հին ատեն կը խաբանուէր մեր ոսոխներու բռնութեամբ։ Պարսիկներն էին թշնամին. նպատակը դիւանագիտական էր. կը վկայէ պատմագիրը թէ.*

*Զտային պարսիկ վերակացուքն յոյն ուսանել դպրութիւն ումեք յիւրեանց մասինն, այլ միայն ասորի։*

(Նոյն էջ 501).

64

*Պատմութիւնը իբրեւ տիպար կրթիչ և դաստիարակ, մեզի կու տայ Մեսրոպը. որ վարձկան վարժապետի մը պէս չէր աշխատեր.*

*Ոչ որպէս արուեստ ուսուցանէր, այլ իբրեւ զհոգի առաքելաբար աշակերտելոցն տայր։*

(Նոյն էջ 518).

65

Երբ ուսման լոյսը տառերու գիւտով կը լուսաւորէ Հայաստանը. ուսման նախանձը կը վառի ամէն ուսումնատենչ սրտերու մէջ։ Սուրբ է այդ նախանձը. ոմանք փութով Բիւզանդիոն կ'երթան.

Նախանձաւոր բարեաց եղեալ ուսմանց։

66

Ուրիշներ ալ ուսման նախանձով ճամբայ կ'ելլեն, բայց նպատակնին հետաքրքրական ուղեւորութիւնն է. Սահակ և Մեսրոպ զանոնք, որ է ըսել Յովհան և Արձան կանխաւ ուսման համար ճամբայ կը հանեն, բայց անոնք ըստ Խորենացիին,

Յուլաբար ուղեւորեալ, և ծուլաբար դեգերեալք պատաղեցան ի Կեսարիայ։

Նման ուսանողներ Եւրոպայի մէջ այժմ ևս անպակաս չեն։

(Խոր. Պատ. 520–1).

67

Երբ Խորենացիին ուսուցիչները կը վախ-

*ճանին, Պատմահայրն, ըմբռնելով ուսմուն-
քը յարգող և ուսման յորդորող վարժապետ-
ներուն և առաջնորդներուն թանկագին նշա-
նակութիւնը, կ՚ափսոսայ.*

*Ո՜վ այսուհետեւ զմերս յարգեսցէ զուսումն. ո՜վ ուրախասցի ընդ առաջադիմութիւն աշա-կերտին:*

(Նոյն էջ 550).

68

*Հայաստանի ողբալի կացութեան հետ ող-
բալի են և վարժարանները. Խորենացին այդ
առթիւ կը գրէ.*

*Աշակերտք հեղք առ ուսումն և փոյթ առ ի վարդապետել, որք նախ քան զտեսութիւնն աս-տուածաբանք:*

(Նոյն էջ 553).

69

*Մտքին գործիքներն գրքերն են, սակայն
ամէն միտք հաւասարապէս այդ զէնքերով
մտաւորական հրաշագործութիւն չի կրնար
ընել. տաղանդ, յիշողութիւն մեծ դեր կը*

*խաղան․ այս պարզ ճշմարտութեան կա֊րող ենք իբր առակ գործածել սա սովո֊րական առածը․*

*Բեր զայն աչն, որ բռնէ զայս խաչս։*

*Այս է պատմութիւնը․ կը գրէ առակա֊խօսն Վարդան․ «Իշխանի միոյ որդին մե֊ռաւ․ և բերին զխաչն ի վերայ սպասաւորք խաչին․ և յարեաւ որդի իշխանին․ զի էին ընտիրք սպասաւորքն այնորիկ։ Եւ եղեւ զի այլ ումեմն իշխանի որդի մեռաւ․ և բերին զնոյն խաչն ի վերայ․ և ոչ յարեաւ։ Եւ աղաղակէր հայր մանկանն և ասէր, թէ խաչս այն խաչն է և աստուած այն աստուած է․ զիմ՞րդ ոչ յարեաւ մեռեալս։ Եւ հրեշտակն երեւեալ ասաց, թէ խաչս այն է և աստուած այն է․ բեր զայն աչն, որ բռնէ զայս խաչս»։*

(Ժողով․ Առակ․ Վարդ․ էջ 213)․

70

*Աստուածային, հոգեբանական և իմաս֊տասիրական խնդրոց համար, ունինք ազգա֊յին մատենագրութիւն մը, ուսկից հոգեկան*

*խնդիրները կարող են օգտուիլ, երբ հարկ ըլլայ զանոնք պաշտպանել կամ ջատագովել։ Եզնիկ իր գիրքը կը սկսի.*

*Յորժամ զաներեւութէն և զնորին զմշտնջենաւոր զօրութենէն ճառիցէ ոք, քանզի մարմնաւոր լեալ է, պարտի զմիտս յստակել և զխորհուրդս սրբել . . .*

(Եզնիկ էջ 5).

71

*Մեր պատմութիւնը թէեւ ունի անմխաբանութեան, տիրանենգ գործերու տխուր եղերերգական էջեր, ունի պառակտումէ և ներքին թշնամութիւններէ ծագած ահաւոր ազգակործան հարուածներու ողբերգական աւերումներ, սակայն ճշմարիտ է նոյնպէս, որ ասիական ազգաց մէջ աւելի ընդունակ եղած ենք բարեկարգութեանց և բարեշրջումի ու սիրած ենք ինչ որ լոյս է և յառաջադիմութիւն. սիրած ենք իրաւունքը, և ատած ապօրէն վարչութիւնը։ Սահակ Հայրապետի մահուընէ վերջը, այլ եւս մեր երկրի կրօնական ու քաղաքական ընթացքը շատ սրտաճմլիկ շրջաններէն անցնելով,*

հայրենիքի բարոյական կործանումը ակն յայտնի կ'ըլլայ։ Պարսից Յազկերտ Թագաւորի վեցերորդ տարին, Շահապիվանի ժողովը կը գումարուի, ուր մեր նախնիք, լրջախոհ եկեղեցականք և զօրականք միաբանած, կը դնեն «Սահմանք և կանոնք միաբանութեամբ աւագ Հայոց. ի հինգերորդ ամի վախճանելոյն Սահակայ»։ Անոնք Ս. Գրիգոր Լուսաւորչէն՝ մինչեւ Սահակ Պարթեւ եղած ծանօթ կարգ ու կանոնը կը հաստատեն. և միաբերան կը փափաքին որ «Առաքելական կանոնն և Նիկիականն հաստատուն կացցէ, և մենք հնազանդեալք եմք. և որ ինչ պիտոյ է ի նոսա ի լրումն, և մանաւանդ ի մէջ տանս Թորգոմայ և կողմանց արեւելեայցս՝ հաստատեսցուք...» ամէն կարդ ու կանոն երբ կը հաստատուի ու կը կարդացուի, զօրքերը, զօրավլուխները, և իշխանները միաբերան կը կոչեն.

Այո՛, այո՛. կարգք և օրէնք այդ կացցեն, ինչ որ վասն մեր օգտի ի փրկութիւն հոգւոց և մարմնոց մերոց։

Ու այս միաբերան համերաշխ օրինակ-

*րութիւնը մեր մէջ գեղեցիկ առակ կրնայ մնալ։*

(Հայապատում Բ, էջ 159).

72

*Մեր ազգին կրօնականութիւնը, յատուկ անկեղծ վեհութեամբ միշտ դիւցազնական երեւցած է։ Կռապաշտ հայը արիւն թափած է իր Աշտիշատի աստուածներուն համար. Քրիստոնեայ հայը արիւնով ողողեր է հայրենի դաշտերը իր Քրիստոսին համար։ Աւարայրի պատերազմէն վերջը, տարօրինակօրէն կը ջլատուին հայկական ջղերն. սակայն հայը լքեալ չէ՛, տխուր չէ՛, անխորտակելի յուսով կ'ապրի և ուրախ է։ Իրեն սրտին մէջ կը տիրէ երկնային անպատում մխիթարանք. Եղիշէ՝ անտէր և կործանուած հաւատացեալ ամբոխին համար կ'ըսէ.*

Ամենայն մարդ յանձն իւր եկեղեցի էր, նոյն ինքն քահանայ. մարմինք իւրաքանչիւր սուրբ սեղան, և ոգիք նոցունց՝ պատարագ ընդունելի։

*Ինչո՞ւ այսպէս. «Քանզի ոչ ոք ի նոցանէ ողբայր յուսահատութեամբ զանկեալսն ի սրոյ, և ոչ ոք հեծեծելով հառաչէր ի վերայ մերձաւոր սիրելեաց իւրոց։ Խնդութեամբ ընկալան զյափշտակութիւն ընչից բազմաց..» Հայեր են ասոնք հայրենի կրօնքի եռանդուն նախանձախնդիր. որոնք՝ «Թողին այնուհետեւ իւրաքանչիւր զգեօղս և զաւանս և զագարակս. ելին հարսունք յառագաստից և փեսայք ի սենեկաց, անկան ծերք յաթոռոց և տղայք ի գրկաց. երթային երիտասարդք և կուսանք և ամենայն բազմութիւն արանց և կանանց, հասեալ ունէին զամուրս անապատին և զանխաբ տեղիս բազում լերանց». պատմիչը կը յաւելու.*

*Լաւ համարէին զգազանաբար բնակութիւն՝ աստուածպաշտութեամբ ի քարանձաւս կելոյ, քան ուրացութեամբ փափկանալ յիւրաքանչիւր շինուածս։*

(Եղիշէ էջ 219-20).

*Այս է ճշգրիտ պատկերը հայութեան բնագրոշմ կրօնականութեան. պատկեր մը, որ ամէն դարերու մէջ անջնջելի մնացած է։*

73

Մտաւորական լոյսի և յառաջադիմութեան պապակող Անանիա Շիրակացին՝ ըսած է.

Ի Հայս ոչ գտի մարդ՝ որ գիտակ էր իմաստասիրութեան, և ոչ գիրք արուեստից ուրեք գտի յաշխարհիս։

(Հայապատում Բ. էջ 232).

Որով կը դիմէ Յունաստան։ Այն վաղեմի ժամանակներէն ի վեր Հայաստանի այդ տխուր դրութիւնը՝ բարւոքումն չունեցաւ՝ այն ամեն տաղանդաւոր ուսումնասէր հայերուն համար, որ մայրենի երկրէն արտասահման կը դիմեն և հետամուտ կ՚ըլլան բարձր գիտութեանց։

74

Նոյն վարդապետը ոչ միայն գիտութեամբ կ՚ուզէ ճոխանալ, այլ իր մտքի լուսով կ՚ուզէ լուսաւորել նա և հայրենի մանկտին. կը գրէ. « Ես տրուպս ի հայաստանեայց, ուստ ի նմանէ (Տրապիզոնի Տիւքիկոս հմուտէն) հզօր արհեստս զայս, (չափաբերութիւն) որ թագաւորաց է ցանկալի, և բերի յաշխարհն

մեր, առանց ուրուք ձեռնտու լինելով»։ Սակայն Հայաստանի մէջ գիտութեան սէր, կրակ չի գտներ.

Ոչ ոք եղեւ շնորհակալ և մեծարող իմոյ աշխատութեանս. և ոչ սիրեն Հայքս զիմաստ գիտութեան, այլ ծոյլք են և ձանձրացողք։

Ցօղս գրպարտութիւն մը չէ այս։ Անանիա Շիրակացին առաջ տանելով իր խօսքը կ՚ըսէ. «Զի իբրեւ եկի ի Հայս, բազումք եկին առ իս ի յուսումն, և սուղ ինչ խելամտեալ՝ ոչ մնացին կատարման արուեստին. թողին զիս և մեկուսացան, և սկսան ուսուցանել զոր ոչն գիտէին և ոչ էին հասու». և այդ իմաստակ գիտուններուն համար կ՚ըսէ նաեւ

Կեղծաւորք և սնափառք, ցուցանել կերպարանս գիտութեան. և կոչիլ ի մարդկանէ Ռաբբի։
(Հայապատում Բ. էջ 233).

75

Հայ եկեղեցին ազգային տանջանքներով շատ կրեր ու տուժեր է. ու երբ հայ հոգին վերակենդանացած շունչ քաշեր է,

*եկեղեցին ալ իրեն հետ պայծառացեր է. Սոփերքի մէջ Ներսէս Կլայեցւոյ կենսագրութենէն այս տողերը վկայ են մեր խօսքին.*

*Լուսաւոր կարգ եկեղեցւոյ ի սուրբ լուսաւորչացն հաստատեալ՝ յանիշխանութենէ ազգիս մերոյ բարձեալ, և խաւարաւ մոռացութեանն նսեմացեալ խրթնատեսակ անզարդութեամբ։*

(Սոփերք ԺԳ. էջ 37).

76

*Հոգեշնորհ տաղանդաւոր քահանայից յարմար է Շնորհալի Ս. Ներսէսին սեփհական սա տողերը.*

*Լցեալ անթերի լրմամբ շնորհաց Հոգւոյն Սրբոյ, իբրեւ զծով համատարած ինքն առ ինքեան ծփայր միշտ։*

(Նոյն էջ 41).

77

*Ուսման և գիտութեան նուիրուած, հազուագիւտ անխոնջ պարապողներուն համար, կրնայ ըսուիլ Շնորհալւոյն սեփհական սաբացատրութիւնը.*

*Ցարաժամ մելան և քարտէս պատրաստական լինէր մերձ նմա առ ի գրել։*

(Նոյն էջ 42).

78

*Ժողովրդասէր գրագէտը շատ անգամ կը զոհէ իր իմաստութեան մէկ մասը ։ Մխիթար Հերացի անտարակոյս կարող էր պերճ գրաբարով մը գրել իր բժշկարանը, սակայն այնպէս չըներ. կը գրէ յառաջաբանին մէջ.*

*Եւ արարի զսա գեղջուկ և արձակ բարբառով, զի դիւրահաս լիցի ամենայն ընթերցողաց։*

(Մխիթ. Հեր. Ջերմանց գիրք).

79

*Գիրք մը որ ամենուն կրնայ օգտակար ըլլալ, անոր ճակատը արձանագրելու է Մխիթար Գոշի դատաստանագրի սա հիանալի բացատրութիւնը. մէկը չի պարսաւէ — կ'ըսէ — ըսածներս.*

*Զի եթէ ախմար ոք իցէ՝ ուսցի, և եթէ ամենակատար իմաստուն՝ զթերին լցցէ։*

(Հայապատում Բ. էջ 406).

## 80

*Դատապարտուած է մեր ազգային անուսումնասիրութիւնը. Աբովեան կը գրէ.*

*Ում հետ էլ որ խօսում էի, էն էին թանխայ տալիս՝ թէ մեր ազգը ուսումնասէր չի՛, կարդալը նրա համար գին չունի, բայց ես տեսնում էի, որ էս մեր կարդալ չի սիրող ազգը Ռոպէնսոնի պատմութիւնը, Պղնձէ քաղաքի յիմար գիրքը ձեռնէձեռ էր ման ածում։*

(Վէրք Հայաստանի էջ 7–8).

*Ուրեմն այս խօսքերէն պէտք է հետեւի որ մեր ազգը ուսումնասէր է բայց ընթերցումի ընտրութիւնը պակաս է։*

## 81

*Աբովեան եւս կը խոստովանի՝ մեզի համար առակ եղած սա ճշմարտութիւնը թէ.*

*Մէկ ազգի պահողն էլ լեզուն ա ու հաւատը, թէ սրանց էլ կորցնենք, վայն էկել ա մեր օրին։*

(Նոյն էջ 9).

## 82

*Տաղանդները երբ խանդավառօրէն նուիրուած են ուսման և գրքի, անզսպելի է ա-*

նոնց այդ մտաւորական արշաւը։ Աբովեան ընդ երկար կը տոչորուի գիտութեան և գրական արտայրութեան բուռն փափագովը. բարեկամ մը կը սքանչանայ անոր տաղանդին, վիպասանը կը քաջալերուի և շուտով գրիչը առած՝ այն շատ սիրուած հռչակաւոր վէպը կը շարադրէ. Հայաստանը հրեշտակի պէս իր առջեւը կանգնած, իրեն «Թեւ էր տալիս»․ ու աշխարհքը մոռցած, անձնատուր կ՚ըլլայ իր սիրած գրչին.

Գիշերվան մինչեւ սհաթի հինգը ո՛չ հացի մտիկ արի, ո՛չ չայի, չիբուխն էր իմ կերակուրը, գրիչը իմ հացը։

(Վէրք Հայաստանի էջ 9).

Տնեցւոց խնդրանքին անունկնդիր՝ անընդհատ կը գրէ։

83

Աբովեան ամբողջ գիտութեամբը՝ իր ազգին նուիրուած է. կը գրէ.

Թո՛ղ ինձ այսուհետեւ տգէտ կանչեն. լեզուս բաց ա էլէլ՝ իմ ընտիր, ազիզ, իմ սրտի սիրեկան ազգ։ Թո՛ղ՝ տրամաբանութիւն գիտցողը իրան

*համքեարի համար գրի, ես, քո կորած, չվարած որդին՝ քեզ համար։*

(Նոյն էջ 10).

84

*Իր կարծիքով մենք նախ պէտք ենք զարգանալ, յետոյ ժամանակին՝ կարելի է մեզի դժուարամարս գիտութիւններ ալ ներկայացընել. «Երբ որ կմեծանամ, խրթին լեզւով էլ կխօսանք»։ Սակայն առ այժմ կ'աղաչէ.*

*Թաք ըլի դու, դու իմ պատուական ազգ՝ քո որդու արածը՝ քո որդու խակ լեզուն սիրես, ընդունիս, ինչպէս հէրը իր մանուկի կմկմալն, որ աշխարքի հետ չի՛ փոխել։*

(Նոյն էջ 11).

85

*Արարչին բարութիւնը, հրաշագործութիւնները Աբովեանին բերնէն կը լսենք սա հիացումի օրհնենքը.*

*Ա՜խ՝ ո՞վ ես դու՝ ո՞վ՝ եարաղանիդ ղուրբան՝ Աստուած՝ որ էսքան բարիքը ստեղծել ես մեզ համար։*

(Նոյն էջ 18).

86

*Մեր ազգը իր հաւատքով կը պարծի. կը գրէ Աբովեան.*

*Էլի Աստուած օրհնի՛ մեր հողը, մեր ջուրը, էլի թէ հոգի կայ, հաւատ մեզանում ա։*
(Նոյն էջ 32).

87

*Հայը իր . հաւատքը մարտիրոսութեամբ գնեց, և հալածանքով պահպանեց.*

*Ազատութիւն, թագաւորութիւն, իշխանութիւն, մեծութիւն, բոլոր, բոլոր կորցրեց, իր հաւատին մատաղ տվեց։*

*Եւ « աղքատութիւն, նսքալութիւն, գերութիւն, ղարիբութիւն, տանջանք, չարչարանք, սով, մահ յանձն առաւ, որ իր սուրբ եկեղեցին, իր լիս, լուսաւորչական օրէնքը՝ ամուր հաստատ ու անխախտ պահի։ Է՛ս ա հսկայութիւն...»։*

(Նոյն էջ 89-90).

88

*Եւ քնքշօրէն կը բացագանչէ.*

*Ա՛խ՝ լեզուն, լեզուն, լեզուն որ չըլի, մարդ ընչի՞ նման կըլի։ Մէկ ազգի պահողը, իրար հետ միացնողը լեզուն է ու հաւատը։*

(Նոյն էջ 91).

*Լեզուդ փոխի՛ր, հաւատդ ուրացի՛ր. էլ ինչով կարես ասել, թէ ո՛ր ազգիցն ես։*

*Լաւ կը գրէ այդ միեւնոյն վիպասանը. «Ինչ քաղցր, պատուական կերակուր էլ տաս երեխին, էլի իր մօր կաթը նրա համար շաքարից էլ ա անուշ, մեղրից էլ»։*

(Նոյն էջ 91).

89

*Ու Հայ երիտասարդաց կ'ուղղէ իր գորովալի աղաչանքը.*

*Ձե՛զ եմ ասում՝ ձեզ Հայոց նորահաս երիտասարդք՝ ձեր անումին մեռնիմ. ձեր արեւին ղուրբան, տասը լեզու սովորեցէ՛ք, ձեր լեզուն, ձեր հաւատը ղայիմ բռնեցէ՛ք։*

*Եւ կը շարունակէ. «Մէկ դարդակ լեզուն ի՞նչ ա, որ մարդ չկարենայ սովորել։ Բաս չէ՞ք ուզիլ, որ դուք էլ գրքեր գրէք, ազգի միջումն անուն թողաք, ձեր գրքերն էլ օտար ազգեր թարգմանեն, ձեր անունը*

*յաւիտեանս յաւիտենից մնայ անմահ։ Ինչ կ՚ուզէ ֆրանցուզերէն, նեմեցերէն գիտենանք, մենք չենք կարող ինչպէս բան գրել, որ նրանց միջումն անունն ունենայ, չունքի նրանց միտքն, նրանց սիրտն ուրիշ ա, մերն ուրիշ... Աստուած կեանք տայ էն ծնողացը՝ որի որդիքը ինձ մօտ են։ Նրանց առաջին խնդիրն միշտ էն ա էլել, որ նրանց որդիքը հայերէն լաւ գիտէնան ։ Գերեզմանն էլ որ մտնիմ, նրանց էս սուրբ խօսքը մաքիցս չի գնալ»։*

(Նոյն էջ 93).

90

*Հայը իր հաւատքին կուռ, սրտապինդ է, անխախտ. այսպէս եղած է հին հայութիւնը և նորը որ կը ներշնչէ նախնեաց կրօնական անտեղիտալի հոգին. այդպիսիններուն համար թերեհաւատութեան ամէն պատրանք ծաղր ու ծիծաղ են։ Աբովեան կը գրէ.*

Իր հաւատին պինդ մարդի գլխին քար էլ աղայ, հէնց կիմանայ, թէ դափ (տէֆ) ու զուռնայ ես ածում։

(Նոյն էջ 103).

91

*Նոյն վիպասանը դարձեալ հայ հաւատացեալին համար կը գրէ.*

*Հայ ազգը ո՛չ Թրից ա վախէնում, ո՛չ Թվանքից, ո՛չ Թօփից։ Կրակն ես քցում՝ էլի իր հաւատն ա պաշտում, ծառին ես կախ անում, միսը պոկում, բերանը տալիս՝ էլի իր խաչն ա պաշտում, իր Քրիստոսի անունը տալիս։*

*Ու այլազգին կը զարմանայ Ս. Խաչի զօրութեան վրայ. «Էս մէկ կտոր փէտն ի՞նչ ա ախր, որ սրանք էսպէս ապաւինել են. որդին ես քաշում՝ ինքն ա հետը կրակն ընկնում, հօրն ես բռնում՝ որդին ա գլուխը մահի տալիս»։*

(Նոյն էջ 188–89).

92

*Ո՛րքան նախանձելի է երբ ազգութիւն մը մտքով և հոգւով համերաշխ, միաբան կ՚ապրի, միասին կը գործէ. Հայը իր նահապետական դարերու առեն վայելած է այդ երանութիւնը. քերթողն Բագրատունի կ՚երգէ.*

Ո՛վ դարուն երանութեան, ուր միախոհ միտք ընդ սըրտից
Միաբան կային սերտիւ ակն յանդիման սուրբ արարչին
Սեռըն սիրոյ հաւատոց մատուցանել աննենգ պաշտօն ։

(Հայկ դիւցազն 484).

93

Մատաղ հասակէն պէտք է պողպատել դեռափթիթ մտքերը. Մխիթար Աբբան կը գրէ. « Որպէս եթէ գարբին զերկաթն հրացեալ ոչ կռանեսցէ առժամայն՝ պաղի և ոչ կոփի, այսպէս,

Եթէ համբակ ոչ վաղ զուսմամբ բերցի՝ բթանայ ։

(Հատք էջ 84).

94

Գիտուն մնալու համար, գիտութենէն երբեք պէտք չէ հեռանալ ։ Մխիթար Աբբահայր կը գրէ.

Որպէս միով բախմամբ կռանի՝ ոչ կակղի երկաթ, այսպէս և յուսման ստէպ դարձ պիտի ։

(Նոյն էջ 84).

95

*Ազգն իսկ միաբերան կը խոստովանի Մխիթարեան մամուլի վերակենդանացուցիչ նպատակը և Մխիթար Աբբահայր յայտ յայտնի քարոզած է, որ այդ նպատակը չէ եղած շահասիրութիւն, այլ ազգասիրութիւն.*

*Մեք տպագրեցաք և տպագրեսցուք գրեանս, ոչ ի շահ դրամոց, այլ յօգուտ ազգին։*

(Նոյն էջ 135).

96

*Գործունէութիւնը և գործին գիտութիւնը իրարու հետ սերտ յարաբերութիւն ունին. մէկը որ դեռ չէ ուսած գործել, բայց այդ գործին ծանօթ է, պէտք չէ արհամարհել անոր գիտութիւնը։ Հայաստանցիք կ'ըսեն.*

*Թի որ (թէ որ) ցորեն (ցորենի հաց) չ'կերեր ենք,*
*յերդի (յարդ) մէջ պարկեր ինք։*

*Ըստ «Ազգագրական հանդէս»ի կը մեկնուի. «Ցոյց տալ թէ օրչափ գործ մը ըրած չ'ենք, բայց ծանօթութիւն ունինք վրան»։*

(Ազգր. Հանդէս Գիրք VII. VIII. 1901 էջ 465).

97

*Սրուանձտեանցի համով հոտով գրիչը՝ իր «Թորոս Աղբար» գրքին մէջ տեղագրելով Մարսուան քաղաքը, կը յիշատակէ տեղացի հայ ազգութեան «Պաշտպան կրօնի և ազգութեան» անունով ընկերութիւնը։ Սըր-բազանը դիտել կու տայ որ*

*Պաշտպան լինելէն աւելի՝ ես կը փափաքէի պաշտել գիտնային կրօնքն ու ազգութիւնը։*

*Այդ ընկերութեան նպատակն էր քաղա-քակրթել և զարգացընել հայութիւնը. սա-կայն Սրբազանը զայն այդ գործին ձեռնհաս չի գտնելո՛վ կը հեգնէ.*

*Խօսք մը՝ երբ խօսողն չհասկնայ, լսողին ինչ-պէս հասկըցընէ։*

*Խօսելով տեղական վարժարաններու վը-րայ, կ'ողբայ անոնց միջնադարեան կաս-տութիւնը. հայ տղաքները կրթելու համար կրթիչ պէտք է . . .*

*Իսկ վարժապետները ո՞վ կրթէր։*

(Թորոս Աղբար Ա. էջ 17–21)։

98

***Միեւնոյն հեղինակը հայկական կրթութեան համար կ'ըսէ.***

*Հայոց ազգ, քեզ երկու թեւ պիտոյ է ազատութեան բարձունքը թռչելու բարձրանալու համար. վարդապետ և վարժապետ, մեծերը առաջնորդելու, մանուկները դաստիարակելու ...*

(Նոյն էջ 21).

99

***Կրթական յառաջադիմութիւնը ամենէն աւելի մտածութեան նիւթ պիտի ըլլայ ծնողաց. ամէն ընտանիք իր զաւակներուն կրթութեան համար համախմբուած պէտք է մտածեն հասարակաց բարեկարգ վարժարաններ հաստատելու և հաստատուն պահելու։ Սրբ. Սրուանձտեանց Փոքր Ասիոյ հայկական վարժարաններու ջախջախիչ կացութիւնէն յուսահատ՝ կ'ողբայ «ազգային յուսոյ անյոյս յարկերը». ու կը հառաչէ.***

*Ա՜հ, Հայեր, ա՜հ, հայրեր ու մայրեր, ինչո՞ւ դուք ձեր ոտքով կը զարնէք ազգային յառաջադիմութիւնը և յետս կ'ընկրկէք։*

(Նոյն էջ 52).

100

Հայ կրօնք և հաւատք հաստատրմատ ուռճացած են հայ սրտերու մէջ. փոթորիկը ուզած է խորտակել այդ նուիրական ծառը, շանթեր ուզած են կայծակնահար մոխիր դարձնել զայն, բայց քիչ անգամ յաջողած են. դիմադրողները կրօնական դիցազնութեան օրինակներ մնացած են պատմութեան մէջ. այդ դիւցազներէն մին կ'անմահացընէ Սրուանձտեանց սրբազանի հետագայ պատմութիւնը. ըստ աւանդութեան. «Կաշոցիք՝ թրքաց բռնութենէն ազատելու համար կ'որոշեն տաճկանալ, և կը տաճկանան. գեղի քահանայն այգի կը գտնուի այս ժամուս. երէցկինը կը վազէ դոյժ տալ երիցուն, թէ, փութա՛, գեղացիք ամէնքը տաճկցան։ Երէցը կը դառնայ կը պատասխանէ. «Վա՛յ, գարը սէն տահա կեալուռճա՞ մը սէօյլէրսըն, պէն չօղտա՛ն Տաճիկ օլմուշում»։ Խեղճ երէցկինը այլայլած, մազերը փետտելով կը թռի ժայռի մը գլուխ, ձայն կ'արձակէ Կամրկապցւոց.

*Ես մինակ մնացի Հայ. ձեր Աստուած կը սիրէք, կամարկապցիք, իմ հոգւոյն խունկ ծըխեցէք, աղօթք ու պաշտօն կատարէք։*

*Եւ Կամրկապցւոց աչքին առջեւ զինքը կը գահավիժէ, Եփրատին հոսանաց մէջ կը սուզանի. Կամրկապցիք անոր մարմինը կը հանեն կը թաղեն, ամեն տաղաւարին անոր գերեզմանը կ'օրհնուի և ամեն կիրակամտին Կամրկապու մայրերը երբ տանիքը խունկ կը ծխեն, սոյն աղօթքը մրմնջելով, «Աստուած ողորմի հին ու նոր անցաւորաց, անօրէն սպաննուածին, ծովն ու ցամաքը մեռածին, ճամբայ շինողին, աղբիւր բերողին, կամուրջ կապողին, քարերը խտակողին» եւն, կը յաւելուն ասել, «Աստուած ողորմի Կաշոյի Երէցկին Մամային»։*

(Նոյն էջ 250–1).

101

*Կրթութեան ամենէն զօրաւոր զէնքը պատիարակին կամ տեսչին ազնիւ ու կիրթ ճարտասանութիւնն է. մեր մէջ պժբախտաբար ջաւազանը ու ֆալախան գերայաս համա-*

րուած են. և Հայաստանի խորերը դեռ մոռցուած չեն այդ կոպիտ զէնքերու պաշտամունքը։ Ծեծ և կշտամբանք խրատիչ և ուղղիչ կը համարուին, և ասոր համար Խարբերդի Ս. Ստեփանոս եկեղեցին վարժարանին մէջ՝ գործածուած փալախան կը կրէ սա բարոյական... արձանագրութիւնը.

Գանք և կշտամբանք վարուց ուղղութեան,
Կարգեալ ի խրատ բարուց մանկութեան։

(Թորոս Աղբար Բ. էջ 76).

102

Ո՛վ որ հայութիւնը իբրեւ հայ սիրած է, ան գուրգուրացեր է անոր լեզուին, և վրէժխնդիր եղած է այդ լեզուին պահպանումին ու զարգացումին. այդ հարազատ հայերէն է Սրուանձտեանց սրբազանը. սա իր «Գրոց ու բրոց»ին մէջ կը գրէ. «Այն օրուընէ, երբ մեր դպրոցներու սեմէն ներս մտաւ օտար լեզուաց ուսումը. և բաւական ուսանողներ հասան, այդ լեզուաց մէջ իրենց ունեցած յառաջդիմութեան հետ՝ նոր և կարօտալիր ճաշակ մ'ալ ունեցան այն լե-

*զուններով գրուած մատեաններուն, ծանօթացան և ընտելեցան անոնց պարունակած գաղափարին և նկարագրին. սիրեցին զայն, յարմարեցան անոնց, և յետս թողին իրենց բնիկն, Հայրենին ազգայինն ու ընտանին։*

Կը խօսին այդ պարոններն ու օրիորդները քաջ քաջ Եւրոպական լեզու մը. իսկ հայերէնն խօսելու ժամանակը՝ կը հանգուին ու կը կանգըուին, օժանդակ կը խնդրեն ու կը կոչեն գաղղիերէն մը, ռուսերէն մը, տաճկերէն մը...

*Եւ կը մեղադրեն հայերէնը... Թերի, անտաշ ըլլալն ու կը յանդգնին ըսել. «Է՜հ սա մեր Հայերէն լեզուն որքան պակաս և կրճատ է»...*

(Գիրոց ու Բիրոց էջ 17–8).

103

*Փափուկ է դաստիարակին պաշտօնը վասն զի մատաղ ու դեռատի սրտերու հետ է իր գործը. դաստիարակին բարքն ու գործը աշակերտին վրայ անմիջապէս կ'ազդէ, և կը տոգորուի։ Յարութիւն քահանայ Ալամդարեան կը գրէ. «Եթէ աւաղս կարդայ*

Աստուածախօս Աւետարանն ի գլուխ որոյ զմի ի մարդկանէ գայթակղեցուցանէ, ապա զո՞րպիսի պատիժ պատուհասի յանձն իւր ձգէ՝ որ զպարականոն բարոյականութեամբ ոչ միայն ի գուբ գայթակղութեան խարդաւանէ զբազմութիւն քնքուշ պատանեկաց, այլ և միանգամ տպաւորեալ ի սիրտս նոցա զբիծ խեղաթիւր վարուց՝ մինչեւ ցմահ թշուառականս առնէ»։ Դաստիարակին բարոյականութի՛ւն կը պատուիրէ և միանգամայն հայրութիւն. կը գրէ միեւնոյն բարեյիշատակ քահանայն.

Վարժապետն հայրագորով գթով սիրեսցէ զամենայն աշակերտեալսն ինքեան. զորդիս մեծատանց և աղքատաց միօրինա՛կ խնամեսցէ զիւրաքանչիւրսն քաղցրութեամբ դաստիարակելով։

Եւ խստութեան ու քաղցրութեան մէջ, դաստիարակը պէտք է յարգել չափաւորութիւնը. Ալամդարեան կը գրէ.

Վարժապետին օրէնք են ի գով և ի պարսաւ աշակերտին զկշիռ շրջանկատ չափաւորութեան ի ձեռին ունել. ոչ յառաջնում դիպուածի ի խորխորատ յանդգնութեան մղել զնա, և ո՛չ յերկրորդումն ի յուսակտուր լքումն։

(Պատմ. Ներսէս. Հայ. Հոգ. Դպր. էջ 93).

104

*Հայ հաւատքը և կեանքը միշտ իր ճգնաժամի սահմռկող օրերում սոսկացել է. Հայ հողը արիւնով ներկուելով, երբէք չի չորնար Հայրենիքի հաստատրմատ կոճղը. միա՛յն, եթէ քաջ ենք պահպանել անոր հոգին. Խաղ՝ Ներսէս Հայրապետի տեղապահը կը ճառախօսէ. «Հայրենիքը վտանգի մէջ է, այո՛, բայց աւելի մեծ վտանգի մէջ է եկեղեցին։ Պարսկական պղծութիւնը արդէն մուտք է գործել մեր տաճարներում։ Մեր սուրբ սեղանների վրայ վառվում է որմզդական կրակը ... Մեր նախարարներից ոմանք, պարսից արքային աւելի հաճոյանալու համար, իրանց տներում ատրուշաններ են կառուցել։ Մեր բազմաչարչար Լուսաւորիչ հօր դառն աշխատանքներով հիմնած եկեղեցին այժմ կործանուելու մօտ է։ Պարսիկը շատ անգամ արշաւել է մեր երկիրը, շատ անգամ յաղթել է մեզ, և շատ անգամ յաղթուել է մեզանից։ Մեր երկիրը միշտ ողողուած է եղել անընդհատ պատերազմների*

արինով։ Բայց անցել են կռիւի ու կոտո-
րածի մութ օրերը, և արեան հետքերի
վրայ՝ կրկին ծաղկել է ժողովրդի կեանքը
և նրա բարօրութիւնը։ Իսկ

Այժմ սպանվում է եկեղեցին, սպանվում է կրօնը, և իւր հետ դէպի յաւիտենական մահ է տանում ամբողջ ժողովրդին։

(Սամուէլ էջ 474).

Խաղը հայութեան մահը կը համարի հայ կրօնքի ջնջումը, բարձումը. կոտորած, աւեր ու քանդ նշանակութիւն չունին. հայ հոգին թող ողջ մնայ, այն ատեն չարչա-րուած հայ կոճղը դարձեալ կը ծլի, կը ծաղկի, կը պտղաբերէ։ Քրիստոնեայ կրօն-քը նէթէ խախտէ իր կրօնական սկզբունքնե-րը, ազգութեան շէնքը փլած է և կանգնումը անկարելի է. և այս պատճառաւ հայը ամ-րապինդ կը մնայ իր Քրիստոսին...

105

Գրքի, գիտութեան սիրահար իմաստասէ-րը կ՚արհամարհէ ամենայն ինչ, ուր չի կայ մտաւորական և հոգեկան կորովի հրաշա-

գործութիւնը։ Զուարճութիւն, վայելք, փառայեղ կացութիւն, ընտանիք, սէր և մտերմութիւն և ամենայն ինչ անցաւոր է, ծուխ մը որ կը բարձրանայ և որուն ետեւէն իմաստունին միտքը չի հասնիր. «Բանք իմաստասիրաց» մատւորական գանձարանին մէջ՝ հետաքրքրական է աւանդութիւնս.

ԶԱղեքսանդր յօժարեցուցանէին բարեկամքն ստանալ որդիս. և նա ասէ. Մի՛ տագնապիք, քանզի թողում ձեզ յետամնաց զբանս և զիմաստութիւն և զարիութիւնս իմ։

(Սոփերք. Ա. էջ 11).

106

Մենք ուրիշէն երբ գիտութիւն կը պահանջենք, մենք ինքնին գիտե՞ն ենք... Երբ Եմպեդոկլրատես կ'ըսէ. «Ոչ գտի իմաստունս թանի. իրեն կը պատասխանեն.

Որ խնդրէ իմաստուն, նախ պարտ է զի ինքն իցէ իմաստուն։

(Նոյն էջ 12).

107

Կարդալով, ճառեր լսելով չէ որ մարդ

գիտուն կ՚ըլլայ, այլ հմտանալով, ամբարելով գիտութիւնը։

Իմաստասիրաց առակներուն մէջ ուշագրաւ է միջադէպս.

Դիմոկրիտէս՝ քանզի պատանի ոմն նստեալ ի թէատրոնի ասէր զանձնէ իմաստուն գոլ, քանզի ընդ բազումս խօսեալ եմ իմաստունս. ասէ. Եւ իմ ընդ բազում մեծատունս, բայց սակայն մեծատուն ոչ եմ։

(Նոյն էջ 12).

108

Տգիտութիւն և արբեցողութիւն համանման խեղճութիւններ են, խոհականը հաւասարապէս կ՚ուզէ հեռու մնալ երկուքէն ալ։ Իմաստուններուն պատուէրն է.

Զգաստից ընդ արբեցողս և իմաստից ընդ անմիտս խօսել չէ պարտ։

(Նոյն էջ 13)

109

Օրէնքը յարգուած է միշտ. թէ հեթանոսը և թէ քրիստոնեան, կեանքը բարձրացուցած է օրէնքներու վրայ. և ըստ իմաստասիրաց.

*Որպէս մարմին առանց հոգւոյ մեռեալ է, նոյնպէս և հոգի առանց օրինաց մեռեալ է և աւերակ։*

(Նոյն էջ 46).

110

*Նուիրական է եղած «Արդարոց օրէնք ոչ գոյ» բացատրութիւնը. նման է ատոր՝ իմաստասիրաց այս բնական եզրակացութիւնը.*

*Ուր օրէնքն յաճախեն, անդ և անօրէնութիւնք յոլովք։*

(Նոյն էջ 47).

111

*Պատկանեան երկու համեստ տողերով կը խարազանէ ագիտութիւնը.*

*Հայի դըպրոցը դարձաւ մաքսատուն,*
*Զունի և ոչ մի վարժապետ գիտուն։*

(Պատկանեան. Բանաստեղծ. էջ 235).

*Ցաւակնոտ մեծամիտները ընդհանրապէս հակառակ իրենց ագիտութեան, վարժապետի դեր կը կատարեն. Պատկանեան կը գրէ.*

*Զարմանք պան է՝ էնկ տըգէտը*
*Էղիլ է մեր վարժապետը։*

(Նոյն էջ 327).

***Մեր կարգ մը հայ ուսանողներու համար կարելի է գործածել սա նախադասութիւնը.***

*Ուսանողների համար հետաքրքիր չեն ազգային կեանքի երևոյթները, նոցա օգուտները համապատասխան չեն հասարակական օգուտներին։*

(Գ. Արծրունու Աշխատութիւնները Հ. I., էջ 163).

112

***Երբ գիտունները կը տեսնեն որ տղէտները կը քննադատեն իրենց գործերը, կրնան յիշել և յիշեցընել Վարդան առակախօսի գայլի սա խօսքը.***

*Ես ի սկզբանէ մսայգործ էի և արդ ո՞յ արար զիս պայթար։*

***Ահա զուարճալի պատմութիւնը. «Գայլն էգիտ էշ մի գէր և կամեցաւ ուտել զնայ. և ասէ էշն. աղաչեմ զքեզ, ով գայլ, հան զայս խոցս ի յիմ սրտէս և ապայ ուտես զիս. զի աստուած ետ զիս ի ձեռս քո կերակուր. քանզի բեւեռ չար հասաւ յոտս***

իմ և սանջէ զիս։ Եւ անցեալ զայն յետոյ կողմանէ, զի հանցէ զբեւեռն. և էջն ամենայն զամեհայն զաւրութեամբ իւրով կիցս եհան և եհար զբերան զալուն, և ջախջախեցաւ խամծերք նորա. և զայն լար դառնապէս և ասէ. յիրաւի կրեցի զայս ամենայն վիշտս. զի ես [ի սկ.] զբանէ մսայգործ էի. և արդ ո՞յ արար զիս պայթար»։

(Ժողով. Առակ. Վարդ. էջ 56–7).

113

Անձ մը իր կարողութեան սահմանէն անդին ստանձնելով, անվտանգ չի մնար. յայտնի է կապիկի սա օրինակը.

Կապիկն... ետես, զի ձկնորսն ձգել զուռկանսն ի վերայ ձկանցն և գնաց ի հաց. և իջեալ ի ծառէն կապիկն և էառ զուռկան և նման ձկնորսի ձգել ի վերայ ձկանցն կամեցաւ և ինքնն ըմբռնեցաւ ի նմայ և ասէ. յիրաւի ըմբռնեցայց. զի յան ձեռն արկի, որ չէի հմուտ։

Կը մեկնէ. «Ցուցանէ առակս, թէ մի ձեռն արկեր և մի ցանկար գործոյ, որ չես հմուտ»։

(Նոյն էջ 120).

## 114

Ցգէտներու հետ բարեկամութիւնը վտանգաւոր է. կարելի է նկատողութեան առնել Խիկարի սա խրատը.

Որդեակ լաւ է ընդ առն իմաստնոյ քարինս կրել, քան ընդ առն անմտի գինի ըմպել։

Դարձեալ կ'ըսէ.

Որդեակ ընդ իմաստունն մի անմտիր, և ընդ անմտին մի իմաստնանար։

Կը յորդորէ նոյնպէս.

Որդեակ, կցորդ լեր առն իմաստնոյ, որ իմաստուն լինիս եբրեւ զնայ։

(Խիկար էջ 13–4).

## 115

Ըստ Աբովեանի, մեր տգիտութեան պատճառը՝ գիտուն վարիչներ, առաջնորդներ, խելահաս և կրթուած լուսաւորիչներ չունենալնիս է։ Կը գրէ վիպասանը. «Թէ սուտ եմ ասում՝ ա՜յ ջամհաթ՝ մատըներդ կոխեցէ՛ք, աչխ հանեցէք թէ չէ՝ ախր մեր ազգը որ խեղճ ա մնացել, թրի, կրակի եսիր, բոլորի պատճառն էս ա՝ որ մեզ մէկ ասող չի՛ ըլում՝ թէ

մենք ո՞վ ենք, մեր հաւատն ի՞նչ ա, ընչի՞ համար ենք եկել աշխարհ.

Քոռ գալիս ենք, քոռ գնում։

(Վէրք Հայաստանի էջ 34).

116

Կարեւորը սորվիլ, անպէտքը զանցառնել, այս խե՛լք է։ Հայաստանցին կ'ըսէ.

Գիշեր ու ցերեկ գինայ (գիտէ),
քաղքի ճամբան չ'գինայ։

Բուն մեկնութիւնն է։ «Կարեւոր բաները անգիտանալ, և անկարեւորը սորվել ու միտք պահել»։ Այս առթիւ «Ազգագրական Հանդէս»ը հետագայ միջադէպքն ալ կը պատմէ. «Էշի կարաւանատէր մը իր էշերով ցորեն կը տանի Բաղէշ։ Մութը գիշերին ճամբան կը կորսնցնէ, ու մինչեւ առաւօտ լեռներու մէջ կը թափառի։ Աղօթարան բացուելուն պէս էշը կը զռչէ, իսկ ակէրը բարկանալով կը ծեծէ զայն ու կ'ըսէ, «Գիշեր ու ցերեկ գինաս (գիտնաս), քաղքի ճամբան չ'գիտնա՞ս։»

(Ազգր. Հանդէս. Գիրք VII VIII 1901 էջ 460).

117

*Հայը կ՚ընտրէ գիտուն թշնամին, քան թէ տգէտ բարեկամը. անոր համար ունի սա առածը.*

*Գիտունին եղիր գերի*
*ոչ անգէտին սիրելի։*
(Նոյն էջ).

118

*Հանճար ու գաղափար անմահութեան ա-թոռակից նախանձելի յատկութիւններ են. ոսկին և ուժը կը փճանան, սակայն հանճարն ու գաղափար յաւիտենականօրէն կը շողան, կ՚ապրին. շատ գեղեցիկ կը գտնեմ Րաֆֆիի սա բացատրութիւնը.*

*Դուք սպանում էք իմ մարմինը, բայց չէք կարող սպանել իմ սերմանած մտքերը ...*
(Խենթը 307).

119

*Հայ կանանց դաստիարակութեան, կրթութեան համար, Արծրունին այսպէս կը հառաչէ.*

Խեղճ հայոց կանայք, կարծում են թէ ձեզ հարկաւոր չէ կրթութիւնը. ձեր հայրերը չեն տուել ձեզ կրթութիւն և չեն էլ տալիս մինչեւ հիմա.
(Գ. Արծրունու Աշխատութիւնները հատ. I. էջ 12).

120

*Հ. Ալիշան հայկական հանճարին վրայ ճառելով, կ'ըսէ.*

*Ի մտաւորական ասեմ իմաստից, երեւին ինձ Հայք և ի սէր և ի բարգաւաճանս ուսմանց բաւ բենչան զօլ յազինս ամենայն։*

(Բազմավէպ 1844 էջ 348).

121

*Կը հարցընէ Նահապետը.*

*Ո՞ւր ես Հայ հանճար. – անցե՞ր ես անցեր։ . . .*
*Հին և երկայն դարք այլեւայլ բաղդով*
*Մեր հայ հայրենեաց վրայէն սահելով՝*
*Սեւ ու սըպիտակ քօղերով պատեր*
*Ջաղուրն այն ծածկեր*
*Անցե՞ր են անցեր։*

(Հայրուենի էջ 342).

122

*Բայց մեր կեանքն է այդ հանճարը. ահա՛*

*Կ'երդնու Նահապետ, կանչէ ձեզ Հայե՛ր,*
*Հանճարն է մեզ կեանք. ըզնա վառեցէք,*
*Մեծ պզտիկ՝ այտոր սիրով վառուեցէք ...*
*Տազէ՛ Հայ հանճար, փայլէ՛ բիւր բոցեր,*
*Իմանան ազգեր՝*
*Թէ հայք չեն անցեր։*

(Նոյն էջ 345).

## 123

*Հանճարներու, իմաստուններու յարմար է սա զրոյցը.*

*Իմաստուն մի ասաց, թէ այն է իմաստուն, որ նման աղի համեմէ զամենայն մարդ և նման ճրագի լուսաւորէ զմերձակայքն և զանկեալքն ի մեղս հոգևոր խրատով կանգնէ և զտգէտսն ուսուցանէ։*

(Ժողովածոյ Վարդ. Առակ էջ 281).

## 124

*Հանճարեղ, յաջողակ ու կարողութիւն ունեցող անձը՝ եթէ օգտակար չընէ իր մտքի գեղեցիկ յատկութիւնը, մարդկութեան համար ներկայապէս այդ փառքը ծուխ մ'է, որ ապագային յաւիտենականօրէն կը չքանայ առանց նշան մը ձգելու. Եզնիկ լաւ կը գրէ.*

*Որպէս ոք եթէ ճարտարութիւն իրաց ինչ գիտիցէ, եթէ վնուազածութեան և եթէ զբժշկութեան, եթէ զհիւսնութեան, և արդեամբք զճարտարութիւնն չցուցանիցէ. ի զուր ունի զհանգամանս ճարտարութեանն՝ ուստի ոչ ինքն վայելեսցէ, և ոչ այլոց զգիտութիւն արուեստին ցուցանիցէ։*

(Եզնիկ էջ 236–7).

## 125

*Հանճարեղներու, իմաստուններու համար լաւ և գեղեցիկ ճշմարտութիւն մը կրնանք ընդունիլ Մխիթար Աբբահօր, այս տաղանդաւոր բացատրութիւնը.*

*Որպէս կաթ մի մեղր միշտ ի մէջ ծովուն կորնչի, նոյնպէս և մի իմաստուն ի բազմութեան յիմարաց։*

*Ի՞նչ պատճառաւ «զի չունի մկայս . . . Եւ կորնչի ոչ ըստ ինքեան, այլ ըստ յիմարացն, զի ոչ հաւատալով ի նա՝ և ոչ շահին ի նմանէ, և այսպէս կորուսանեն զնա առ յինքեանց»։*

(Հատք էջ 82).

## 126

*Հանճար ունենալով մարդ իմաստուն չըլլար, այլ ուսումը մշակելով մարդ իմաստուն կ'ըլլայ. ըստ Մխիթար Աբբահօր.*

*Սողոմոն միայն իմաստուն էր, այլ ոչ նաեւ իմաստութիւն։*

(Նոյն էջ 84).

127

Ձեռքը չէ որ կը հրաշագործէ, այլ խելքը։ Ալաշկերտցիք հետագայ գեղեցիկ առածը ունին.

Մէկ մեռի՝ հազար չիւարի (չուարիլ)։
Հազար մեռի՝ մէկ չ'չիւարի։
(Ազգր. Հանդէս Գիրք VII. VIII. 1901 եջ 473).

Կը մեկնուի. «Ցոյց կը տրուի որ գործի մը աջողութեան մէջ գործողներու քանակութիւնը նշանակութիւն չունի. այլ խելքը։ (Այս առածը կ'ըսուի երբ չ'կայ այլ եւս խելացի գործողը, ու գործը խանգարուած է)։

128

Հասարակաց համոզումն է որ խելքը աղքատին է, ստակը հարուստին. նման առածներ շատ կան, այսպէս և հետագան.

Շորերս հին ա.
Խօսքս անգին ա։

Մեկնուած է. «Շատ անգամ ցնցոտիներ հագած մարդերը ընտիր խօսքեր և մեծ արժանիք կ'ունենան։

(Նոյն եջ 476).

129

*Սովորական զրոյց մըն է դարձած, կ'ըսուի որ խելացին անօթի չի մնար. և անոր համար Ալաշկերտցիք կ'ըսեն.*

*Սարգիս, խելք ունի՞ս, կապրիս։*

*Ըսել կ'ուզեն. « խելացիութիւնը և ո՛չ մէկ բանի կարօտ կ'ընէ մարդս »։*

(Նոյն էջ 481).

130

*Հայու խելքին համար հանրացած է սա գեղեցիկ առածը.*

*Հարի (մինչեւ) հայուն յետին խելքն ի գայ,*
*առաջին խելք կ'երթայ։*

*Այսպէս է առակիս մեկնութիւնը. « Ամէն հայ առաջին գործողութեան կը սխալի։ Փորձը միայն լաւ խելք կը բերէ հային, բայց այն ատեն գործելու առիթները ձեռքէ կ'ելնեն։ Ասոր կ'ըսեն « Հայու խելք »։ Քիւրտերը կ'ըսեն « Հայու յետին խելք ինձի եղնէր »։*

(Նոյն էջ 495)

# ԳԼՈՒԽ Բ.

## ՍԷՐ, ՃԱԿԱՏԱԳԻՐ, ՊԱՀԱՆՋ, ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆ, ԱԶԳԱՍԻՐՈՒԹԻՒՆ

131

*Գամառ Քաթիպա մեզ կը պատուիրէ, որ եթէ, հայ ենք՝ սիրենք հայութիւնը և Հայաստանը մեր յուսոյ աստղը նկատենք. կ՚ըսէ*

*Օտարինը դու մի՛ ատիլ, մի՛ էլ սիրիլ կուրօրէն,*
*Բայց դու հայի օգուտները միշտ վեր դասէ ամենէն։*

(Գամառ Քաթիպա. «Ոտանաւորներ» էջ 61).

132

*Նոյն բանաստեղծը կը շարունակէ ազգասիրական պատուէրները.*

*Սիրէ՛ ազգըդ ո՛չ լոկ խօսքով, սիրէ՛ ինչպէս քու անձը*
*Նրա օգտին թէ պէտք լինի, զոհէ բոլոր քու գանձը.*
*Մի խնայիլ կեանքըդ անգամ, արիւնըդ բե՛ր նորան զոհ.*
*Ո՛չ այն յուսով, որ քու ազգը խսկոյն լինի քեզնից գոհ։*

(Նոյն էջ 61).

133

Մեր այդ կրակուբոց բանաստեղծը՝ անտարբեր Հայուն գլխուն անէծք կը կարդայ.

Բայց վա՜յ նոցա, որք անզգայ են իւր ազգի վիճակին,
Հազար անէծք նոցա վերայ, էրնե՜կ չան պէս սատակին։

(Նոյն էջ 61).

134

Կը հարցընէ նոյն բանաստեղծը.

Դու պատրա՞ստ ես թողնել կայքըդ, ծընողք, եղբարք սիրական,
Սիրելույդ տեղ կըրծքիդ սեղմել միշտ մահառիթ հըրացան.
Դու պատրա՞ստ ես անվախ երթալ թշնամի սուրի դէմ,
Սարսափելի մահըդ տեսնել դու կարո՞ղ ես ծաղրադէմ։

Այն ժամանակ մենք հայ ենք ...

(Նոյն էջ 62).

135

Բանաստեղծ Քաթիպան կ'ըսէ, տատասկէն չէր վարդ մի սպասեր. այլ,

*Սէրը նըմանից պէտք է պահանջել։*
(Նոյն էջ 84).

136

*Գամառ Քաթիպա Հայ պատանեկին կուրծ-քը թմրացուցած է հեռաւեալ խիղախ երգով.*

*Մեր յոյսը միայն մեր վըրայ լինի,*
*Չէն պէտք մեզ նպաստ մեծատուններին,*
*Ողորմութեամբ թող մուրացիկը ապրի,*
*Մուրացողըն միշտ ստրուկ է օտարին։ . . .*
*Օտարի շահը թոյն է մահաբեր,*
*Աչք է կուրացնում, միտք է պըղտորում,*
*Գերի է դարձնում մարդ ազատասէր,*
*Ոսկի շըղթայով ձեռք ոտք է կապում։*
(Նոյն էջ 110).

137

*Բանաստեղծը իր « Թէ իմ ալեւոր հերքս սեւնային . . . » սրտառոփ երգին մէջ, Հայ օրիորդներուն՝ կ՚երգէ.*

*Ժանգոտած ու գուլ են մեր թըրերը։*
*Տուէ՛ք բեհեզեայ մեզ ձեր շապիկը,*
*Որ մենք փաթաթենք մեր մարմնու վէրքը*
*Վիրակապ հիւսէ՛ք դուք ձեր մազերից։ —*
*Այսպէս յայտնեցէ՛ք դուք մեզ ձեր սէրը։*
(Նոյն էջ 126).

138

*Քաթիպայի ազգասիրութիւնը անկեղծ է, նա Հայ կրօնք և ազգութիւն ուրացողը վայրի գազան կը համարի «Ազգուրացն, ասէք, չէ՞ վայրի գազան. նա չի կրնար մոռանալ Աւարայրի նահատակները, չի կրնար հրաժարուիլ ազգէն, ինչպէս որ միսը ոսկրէն չի բաժնուիր.*

*Սինլըքօր կը մնամ, ըստոր ու ատած,*
*Բայց ես չեմ լինել երբէք ազգուրաց։*

(Նոյն էջ 168).

139

*Բանաստեղծը «Ի՞նչ է մեզ պակաս» երգով, ցոյց կու տայ որ Հայը բթամիտ չէ, ծոյլ չէ, անգործ չէ, կրօնազուրկ չէ, ունի Լօռիս Մէլիքօվի պէս քաջեր, շնորհալի հայեր, խելացիներ. ժիր, համեստ հայութիւն մը, որուն կը պակսի միայն գիրար սիրել. կ'երգէ*

*Հա՛յեր, չի լինիլ անտեղի գովեստ,*
*Թէ ձեզ անուանեմ խելօք, ժիր, համեստ.*
*Միայն կը մընայ ձեզ իրար սիրել*
*Ու աշխարհ տիրել։*

(Նոյն էջ 175).

140

*Ոչ դրամասէր, այլ ազգասէր պէտք է ըլլայ հայը.*

*Ա՜խ, Հայե՛ր, Հայեր. թէ որ ձեր ոսկին*
*Կիսով չափ զոհուէր յօգուտ հայ ազգին,*
*Առ միշտ կը դադրէր ձեր լացն ու կական*
*Ու դրախտ երկրաւոր կ'ըլլար Հայաստան:*
(Նոյն էջ 186).

141

*Նոյն բանաստեղծը ունայն սիրոյ մասին կ'ակնարկէ.*

*Իր ձեռքով բռնել գիշերվայ խըպլիք –*
*Ճէպի զարար է – ամենքըդ գիտիք:*
(Նոյն էջ 316).

142

*Գ. Արծրունի ազգասիրութիւնը ի՞նչ է հարցման կը պատասխանէ.*

*Ազգասիրութիւնը այնպիսի զգացումն է, որով մարդը պարտաւորում է «օգտակա» լինել իւր հասարակութեան:*

(Գ. Արծրունու Աշխատութիւնները Հ. I. էջ 149):

143

*Առանց լուսաւոր պահանջների չի կայ յառաջադիմութիւն. իրաւացի է Գ. Արծրունիի սա խօսքը.*

Ինչքան լուսաւորվում է մի հասարակութիւն, այնքան բազմանում են հասարակութեան անդամների պահանջմունքը։

(Նոյն եր 350)։

144

*Ձնայելով մխուր և ակարայնող հանգամանքներուն, եթէ մէկը համեստ ուժերէն մեծամեծներ պահանջէ, կարելի է Ալիշանին հետ այսպէս պատասխանել.*

Իսկ եթէ Խորենացին հոմերականս պահանջիցէ բանահիւսութիւնս, այլ խնդիր է։

(Բազմավէպ 1844 եր 348)։

145

*Հ. Ալիշան՝ ազգատեացը անհեղեղ հրէշ կ'անուանէ, իսկ անկեղծ ազգասէրին վրայ կը հիանայ, իրեն համար.*

Անկեղծ հայրենասէրն՝ յանմահութիւն ճակատագրեալ է։

(Նոյն եր 368)

146

Թէ կը պանծանք հայրենասիրութեամբ, կը պատուիրէ Հ. Ալիշան.

Պանծա՞յք դուք ընդ հայրենասիրութիւն ձեր. նորոգեցէք ապա գյիշատակս նախնեաց։
(Բազմ. 1845 եջ 334).

147

Ամէն հայ իր կարողութեան համեմատ պէտք է օգտակար ընել իր ազգասիրութիւնը։ Հ. Ալիշան կը պատուիրէ, որ, ո՛չ ոք լքանի, այլ.

Բուռն հարցէ ամենայն ոք յօգուտ ազգին որով կիրք և ձեռնհաս իցէ, որ հանճարով՝ հանճարով, որ իշխանութեամբ՝ իշխանութեամբ, որ յարուեստէ՝ յարուեստէ, որ ընչիւք՝ ընչիւք։
(Նոյն եջ 335).

148

Հ. Ալիշան անկեղծ ու բարի ազգասէրներուն յորդոր կը կարդայ. «Ո՛ւր ո՞նչ հայրենասիրացդ նկրտիցի օգտակար ջան։ Զի հայրենիս ունիցիք ընտիրս և բարեկեցիկս... Քանզի անմարթ է բարւոյ իմիք ,հաստա-

*տութիւն առնուլ ի հայրենիս և բարդաւաճել՝ մինչև ոչ քաղաքացիքն իցեն բարիք. « Ուր չիք հայրենիք, առէր ոմն փիլիսոփայ, չեն անդ և քաղաքացիք ». Սակայն Հ. Ալիշան անելին ալ կ'ըսէ.*

Ուր քաղաքացի չիք. չկան և հայրենիք, և են ինձ քաղաքացիք՝ ընտիրքն ի մարդկանէ, որ միայն են պատճառք շինութեան աշխարհի։

(Բազմ. 1895 էջ 343).

149

*Միևնոյն յորդորախօսը իր միտքը հետագայ տողին մէջ աւելի լաւ կը բացատրէ.*

Բուն իսկ հայրենիք մեք եմք անձն իւրաքանչիւր, և լաւութիւնք մեր նեցուկք են նորա։

(Նոյն էջ 343).

150

*Ազգասիրութեան, Հայրենասիրութեան մասին Հ. Ալիշան Ռափայէլեան վարժարանի աւարտաւարժ աշակերտաց շատ անկեղծ և հրատապ սրտով կը խօսի. ով որ անտարբեր է դէպ ի հայրենիքը, ան իրաւունք չունի ընկերութեան մէջ ապրիլ, դուրս պէտք*

*է եղել « յազգէս . ի բնաւ իսկ մարդկանէ, յանուանս յանապատս ի սառամանիս դիցէ զբոյն իւր »: Հ. Ալիշան իր ազգասիրական գրօշակին անձնանուէր քարոզիչն է. և կ'ըսէ , որ եթէ ինքը հայրենասիրութեան մէջ չափազանցէ , ու իր ազգասիրութեամբ եթէ փնասէ հայրենեաց՝ « Թո՛ղ կապեսցեն արկցին զիս ի ծծմբահոտ վիհս Մասեաց , անդ քաւեցից զառաւել սիրոյն իմոյ մեղանս »: Սակայն ինչ որ ալ ըլլայ, նա կը խոստովանի և կը քարոզէ.*

*Այլ ես սիրեմ և առաւել սիրեմ զՀայաստան հայրենիսն իմ, և զնոյն սէր անխիղճ քարոզեմ ամենեցուն:*

*Եւ կ'ըսէ. « Պարտք են ձեզ որդիք Հայկայ ճանաչել զի՞նչ են հայրենիք, և որպիսի՞ ձիրք. և ի՞մ իմիք կարօտ, և դուք որո՞վ ձեռնհաս էք նմա յօգնել. սիրել զազգս Հայոց առաւել քան զայլս յազգաց, որպէս զանձն քան զայլոց անձինս. ճանաչել և պահել անվթար զսեփական շնորհս ազգիս, զլեզու նորա, զպատմութիւն նորա, զսովորութիւն և զախորժակս նորա անփոփոխս, զհա-*

բազատ պպրութիւն նորա, զստացուածս նորա և զփառս անուան նորա։ Զայսպիսի կամիմ Հայրենասիրութիւն, և ի սմին վառել զամենեսին . . . »։

(Բազմավէպ 1848 էջ 181)։

151

Քաջալերիչ և արիական ոգի մը կայ Հ. Ալիշանի այս խօսքերուն մէջ.

Արիութիւն առաջին օրէնք են հայրենասիրութեան։

Այս օրէնքը քաղուած է Ռոսփայէլեան վարժարանի աշարտավարժ սաներուն. կը պատուիրէ որ այդ ոգւով եղծան մանեն Հայաստան. զանոնք կը խրախուսէ, անոնց պիտել կու տայ, որ « փառաւոր նահատակութիւնք » դժուարաւ ձեռք կը ձգուին։ Աշակերտաց արիասրտութիւն կը քարոզէ, « ի վատասրտութենէ ի բազում չարիս կործանեցաւ ազգս մեր և համապազօր ի նոյն տառապի »։

(Բազմ. 1848 էջ 182)։

152

Հ. Ալիշան՝ մարդասիրութիւնը ազգասիրութենէն չի զանազաներ. կ'ըսէ. «Սուտ է այն փիլիսոփայն որ ազգասիրութիւնը մարդասիրութեան դէմ կը կարծէ»: Նահապետը մարդասէր է, սակայն աւելի հայասէր. իրեն համար նախ ազգը, յետոյ օտար մարդկութիւնը . . .

Մարդկային բնութիւննիս մեզ կը սորվեցընէ մարդասէր ըլլալ, սիրել մեր ազգայինները քան զուրիշ ազգեր:

(Բազմավէպ 1849. էջ 98).

Այդ էջերուն մէջ միջազգային և ազգային սիրոյ միջեւ՝ մանրամասնօրէն խորհներ զննելով, կը պաշտպանէ կեդրոնացած ազգասիրութիւնը, այսինքն զուտ և միակ հայասիրութիւնը:

153

Հայերէն լեզուն մեր ազգասիրութեան ոսկի շղթան է. լեզուի մոռացութիւնը, կը վտանգէ մեր ազգային ոգին. այս առթիւ կը գրէ Հ. Ալիշան.

*Ուր որ լեզուն մնացեր է՝ դեռ ազգասիրութիւն ալ կայ հոն, ուր որ բոլորովին լեզուակորոյս են եղեր՝ հոն նաեւ ազգասիրութիւնը բոլորովին կորածի պէս է։*

(Բազմ. 1849 եջ 130).

154

*Խաղաղաբարոյ և համեստ Նահապետը ի սէր ազգային պատուոյն զայրոյթ կը քարոզէ.*

*Կրակ դառնանք. երբոր մէկը մեր նախնիքը մեր ազգութիւնը կը նախատէ։*

(Նոյն եջ 131).

155

*Ազգասիրական ոգւոյ կոյր թշնամութիւն մը կրնանք համարիլ գաւառի ու մայրաքաղաքի ազգայնոց միջեւ ծագած դրսեցի, ներսեցի անիմաստ խտրութիւնները։ Այդ ոգւոյն հակառակ է և Հ. Ալիշան. ինքն եւս ըլլալով մայրաքաղաքացի — Պոլսեցի, կը պախարակէ այն ատելութիւնը որ դէպ ի գաւառացիներն ունի Պոլսեցի հայ հասարակութիւնը. պէտք է այս որոշ սկզբունքը ունենալ, որ*

Մեր ազգին սկիզբը ոչ ի Պօլիս եղեր է, ոչ Գաղատիա, ոչ Կաֆա, ոչ Կալկաթա. ամէնքս ալ մէկմէկէ առաջ ետեւ Հայաստանէն եկած ենք, և հիմայ ուր ալ որ ենք պանդուխտ ենք։ Վերցընենք ուրեմն աս գաւառական զանազանութիւնները։

Ինչո՞ւ, վասն զի անոնք «բարակ առուներ կը նմանին, շատերը տղմի մէջէն երթալով, և բուն աղբիւրը փնտռենք ու միանանք մեր ազգակցութեան սիրով՝ իմանանք որ ասոնք են մեր մէջ առակ եղած ու նզովուած անմիաբանութիւնը սնուցանող»։ Այս է Հ. Ալիշանի նահապետական յորդորը։

(Բազմ. 1849 էջ 131).

156

Օտար քնարը չեմ՝ գիտեր կրցե՞ր է երգել և աստուածացընել սէրը, այն կուսական սէրը, ինչպէս որ բամբռահարեր է գրախտի մէջ կատարուած ամուսնական, սէրը մարդկութեան անդրանիկ անարատ կոյս ամոլներու օրհնեալ և քաղցրանոյշ սէրը։ Նահապետ իր «Հարսներգ առագաստի նախածընողացն յԵդեմն գրդարանի» հրաշահիւս

*քնարերգութեան մէջ, օրհնելով նախնական ամուսնութիւնը, կը հնչեցնէ սիրոյ դրուա-տիքը.*

*Ն՛վ սէր, երեւեաց ի յարարածս ի քէն հաստեալս.*
*Համբուրեցէ՛ք ոգիք գիշերւոյ զդէմս Ադամայ,*
*Ղընչեսջի՛ք սողոխք ի հոպոպիս մեղոյշն Եւայ.*
*Բուրեսցեն ծաղկունք բուրմունս անոյշ ի հարս-*
*նարանն . . .*
*Հընչէ՛ք մի՛ լըռէ՛ք, օդք համասփիւռ ըզսէր հընչէ՛ք.*
*Ըզսէր՝ երկինք, ըզսէր՝ երկիր, ըզսէր՝ ո՛վ բնու-*
*թիւն.*
*Համա՜յն հաստուածք միաբարբառ հընչեցէ՛ք Սէ՜ր,*
*Սէ՜ր . . .*

(Հայրունի էջ 32).

157

*Հ. Ալիշան գրախտի կուսական սէրէն ա-ւելի ուրիշ գոռ սէր մը կը բոմբիւնէ. հայ-րենիքի սէրը — ազգասիրութիւնը։ Իր « Հայ-րունի » նուագները կ'որոտան Նահապետի սրտին այդ սէրը։ Գրչով ու սրտով քաջամար-տիկ դիւցազը կը յորդորէ ի զէն և ի յաղթ.*

*Ընթացուք ի զէն ի մարտ և ի յաղթ,*
*Հայրենեաց հիմունք ամրասցին անխախտ.*
*Հայոց հաւատք Հայոց տուն*
*Կացցեն ազատ հաստատուն։*

(Նոյն էջ 101).

158

Իսկ ընդհանուր մարդասիրութեան գալով, կրնանք յիշել Եզնիկայ սա խօսքը, թէ

Եղբայրասէր կրօնաւոր ազգակցութիւն ունի առ Քրիստոս.

(Եզնիկ էջ 304).

159

Ազգասիրութիւնը Աբովեանի սրտին մէջ շատ մեծ անկեղծութիւն մ'ունի։ Իր «Վէրք Հայաստանի» անունով վիպասանութեան յառաջաբանին ոգին՝ վկայ է իրեն այդ սուրբ զգացումին։ Ջինջ, պարզաջուն բոց մը կը հրդեհի իր ազգասէր սրտին մէջ, հայութեան ամէն մէկ նշխարին պատրաստ է ողջակէզ ըլլալ. կը գրէ.

Շատ անգամ մէկ Հայ տեսնելիս՝ ուզում էի՝ էլած շունչս էլ հանեմ, նրան տամ, բայց ախ լեզուս փակ էր . . .

Ինքը բացաւ այդ փակ լեզուն, ինքը կըտրեց ժողովուրդի համրութեան լարը. խօսեցաւ, գրեց գեղջուկին լեզուով. հայրենասիրութիւնը, ազգասիրութիւնը զինքը մղեց նոր Հայութեան նոր Մեսրոպը ըլլալ. . .

(Վէրք Հայաստանի էջ4).

160

*Ճաշակի դատաւոր կարելի չէ ըլլալ. ամէն մարդ իր գաղափարին համեմատ կը սիրէ, կը խորհի ու կը քննէ։ Կը գրէ ռուսահայ ծանօթ վիպասանը Խ. Աբովեան.*

Ամէն մարդ իր սրտի խաբէ բան կ'ուզէ։ Քո ղաբլու փլաւն ինձ ի՞նչ օգուտ, որ ես չեմ սիրում։

(Վէրք Հայաստանի էջ 7).

161

*Աբովեանի կուրծքին մէջ ազգասիրութիւնը կաթոգին կը տրոփէ.*

Հայոց ազգ, Հայոց ազգ, ձեր ջանին մեռնիմ.
Հայոց ազգ քո հողին մատաղ . . .

(Նոյն էջ 78).

162

*Օրինաւոր հարս ու փեսի սէրը կ'ողբերգէ Աբովեան։ Պանդուխտ Աղասին է որ իր Նազլուն կու լայ.*

Գարունքը բացվել ա, դաշտեր կանաչել,
Ծառերը ծաղկել, սարեր զարդարել,

Բլբուլն իր վարդի սիրովն կշտացել.
Հէնց ես՝ ա՛խ՝ սիրոյդ կարօտ մնացել։

Խեղճը կ'երգէ.

Ինչ քար տեսնում եմ՝ դո՛ւ ես առաջիս,
Ինչ խոտ կոխում եմ՝ դու միտս գալիս.
Աղբրի ջուրն էլ քո՛ համն ա տալիս,
Հանդի ծաղիկն էլ իմ օրը լալիս. ա՛խ՝ օրս
լալիս։

(Նոյն էջ 219).

163

Աքուլեան սիրոյ համար ըսած է. «Մեր ու նշանած գլխիս կրակ են ածում, սար ու ձոր ինձ ինչ ա մնում ուտեն, մէկ քար չունինք, որ գլխներս վրէն դնենք. էլի դո՛ւ ո՛վ սէր, ո՛վ ընութիւն՝ ուզում ես ցոյց տալ քո զօրութիւնը։ Ա՛խ՝ ո՛ւր կորչի մարդ, որ քո ձեռիցը պրծնի. քո ցաւը չը տեսնի. առաջ վառում, բորբոքում ես մեր սիրտը, յետոյ էրում, խորովում». սէրը,

Առաջ վարդի հոտով գալիս՝ մեր սիրտը մըտնում, յետոյ փուշ ու սուր դառնում, մեզ կտրատում։

(Նոյն էջ 226).

164

*Ժողովրդական մուսայներու քնարը շատ շիկնելով կը ձայնէ սէրը. մենաւոր, լքեալ հոգին, իր տարամերժեալ եարը կարօտով կ'երգէ. իր հարազատ սրտակիցը հեռու է, ծովերով բաժնուած. մատղաշ կինը կ'երգէ. «Ծովը մահանայ կ'ընես ...*

*Թեւերս կարմունջ կապեմ,*
*Ծովեզերէն անցնիս ու գաս ...*

*Տենչալով կը հրաւիրէ որ գայ իր պանդուխտ ամուսինը, իր երգով անոր կը պատրաստէ խնջոյք. գինի կը հրամցնէ որ խմէ. «Խըմէ. ուր ըսեմ, անոյշ ...»*

Համով-Հոտով էջ 296)

165

*Հայաստանցի հարսու փեսի սէրը կուսական է, անոնց վշտերը սրտաճմլիկ. վկայ է Ակնայ «Անտունի» երգի հետագայ քնքուշ բանախօսութիւնը, զոր կ'ընեն հարսն ու կեսուր.*

*Հարսնուկ, քու ո՞ր տեղդ ցաւցեր,*
*Մարիկ, քու որդւոյդ սիրոյն*

Իմ ամէն տեղիկս է ցաւցեր։
Մի լար, ջահելուկ հարսնուկ,
Գիր կանեմ որդիս կ'բերեմ։
Գիր անես որդիդ բերես,
Աստուծոյ լուսոյն տիրանաս.
Գիր չանես որդիդ չ'բերես,
Կանիծեմ ուր քար կու դառնաս։

Սարէն լուսիկ մը կը փրթի, հարսը ա-նոր գանգատելով կը պատուիրէ.

Գնա Ղարիբիս ըսէ,
Ջ'կենայ ու ելլայ գայ։
Խօսքունքդ գլխուս վրայ,
Դուռը չ'գիտեմ ղարիբիդ։
Եկոր նշանով ցոյց տամ.
Բարձրը պատ ու ծառն ի վրան.
Նստեր է ծառին չուքը
Նոյշ դրեր, չաքար կու ծախէ,
Ամենուն աժան աժան,
Իս մոռցեր, նո՛ւշ կու ծախէ։
(Նոյն էջ 298-9).

166

Հայ և Քիւրտ ազգաց մէջ «Սիա-մանդոն և Խըջէ-զարէ» երգը ողբերգական յիշատակով շատ յուզիչ աւանդութիւն մը կենդանի պահած է. այդ լեռնական զաւակ-

ները ամուսնական սիրոյ նուիրականութիւնը դիւցազնական վեհութեամբ քանդակուած է. ուր որ սէրը անկեղծութեամբ ամրացած է, մահ ու արհաւիրք չեն կարող ջախջախել զայն: Սիամանդոն հայ երիտասարդ մըն է, Խըջէ-զարէն քրդու աղջիկ, Զըռըգացի ցեղէն մեծատան ծնունդ: Ատոնց երգը որ հայկական ու քրդական քարայրներու մէջ սրտաշարժ եղանակով դեռ արձագանգ կու տայ, մեղմիկ արձագանգ մը կ'ըլլանք անոր ամենէն յուզիչ լարերուն: Երկու սիրահար սըրտեր, Սիա-մանդոն և Խըջէ-զարէ, միեւնոյն գիշերը կ'երազեն իրարու մատանի փոխանակած: Սիամանդոն արթննալուն, դէպ ուղիղ կ'արշաւէ Զըռըգանցւոց ցեղին մօտ. պառաւէ մը կը հիւրընկալուի: Հոն կը լսէ երգ ու պարի հանդիսական կոչն ու աղաղակ. կը հարցնէ. «Ինչ՞ է այս ուրախութիւնը, և որո՞յ համար այս հանդէսը, ո՛ մամիկ»: Պառաւը կը պատասխանէ. «Խէջէ-զարէի հարսնիքն է, ո՛րդի, անոր հարսնառն էկեր է»: Սիամանդոն կ'աղաչէ պառաւին. «Որ նշան մը իրմէն տանի հասցունէ Խը-

ջէզարէին », ու երազափոխ մատանին մատ-
նէն հանելով կը յանձնէ պառաւին։ Ասիկա
յանձն կ'առնէ, նախշուն թաշկինակի մէջ
կը լեցընէ անկուտ չամիչ, որոնց հետ կը
խառնէ մատանին. կ'երթայ աչքի լոյս հարս-
նութեան Խըրջէզարէին. սա ընծան կ'ընդունի,
և մատանին աչքին հանդիպելով, կը ճանչ-
նայ : « Կը հառաչէ խորին : Կ'ուշաթափի.
աչքեր կը մթնին. կը թուլնայ. կ'իյնայ » :
Քիչ վերջը, պառաւին պաղուկ ափէն, կա-
րեկից ձայնէն կը սթափի Խըրջէզարէն և կ'ըսէ.
« Մամիկ, Խըրջէզարին քեզ մատաղ, գիտե՞ս
այս մատնեկին տէրն ո՞ւր է » : Պառաւը կը
պատասխանէ. « Այդ մատնեկին տէրը իմ
տունը իջևանած է » : Խըրջէզարէն կը պա-
տուիրէ. « Գընա՛, մամիկ, գընա Սիաման-
դոյին ըսա՛, մէկ օր կայ ու մէկ հնարք. —
Վաղ առաւօտ մօրս գերեզմանին վրայ կ'եր-
թամ յուխա. մինակ կ'երթամ. — Թող այն
տեղը գայ Սիամանդոն » : Պառաւը տեսածը
լսածը կը պատմէ Սիամանդոյին. սա գիշե-
րանց կը դիմէ նշանակուած գերեզմանը, ուր
կը սկսի խոր քնանալ. Հոն կու գայ Խըր-

ջէզարէն ։ Եւ, Ջուխտակ մի ոսկիէ ճան իր ջոքէն կը հանէ անոր ջոբը կը դնէ և իր հօր տունը կը դառնայ ։ «Արեւը կէսօրը նըշնեց էր, Սիամանդոն իր աչքերը բաց արաց, — Զորս կողմն նայեցաւ, գլուխը ծեծեց, ու պառաւոյ տունը դարձաւ»։ Խեղճ Սիամանդոն երբ յուսախաբ կը տխրի, պառաւը կ'ըսէ անոր. «Որդի դու շատ միամիտ ես։ Քո ծոցն ու ջոբը որոնե՞ր ես». Սիամանդոն որոնելով, կը գտնէ Խըջէզէրի դրած Ջուխտակ ոսկիէ ճաները. սա ի՞նչ կը նշանակէր. ի՞նչ խորհուրդ ունէր. պառաւը կը պատասխանէ. «Քեզ հասկըցուցեր է թէ՝ դու դեռ մանուկ ես, Սիրոյ մարդ չես». Սիամանդոն պառաւին միջնորդութեամբը Խըջէզարէէն վերջին խօսք մը կը խնդրէ որ կատարէ։ Խըջէզարէն կը պատասխանէ. որ եթէ Սիամանդոն մարդ է, վաղը գլխ հարս տանողներու ձեռքէն թող գայ կարճութեամբ գիս խլէ։ Սիամանդոն իր քաջութիւնը ցոյց կու տայ, կայծակի պէս հարսնեւորաց մէջ կ'իյնայ. «Մէկ ձեռքով բռնեց Խըջէզարէի կակուղ մէջքէն, — Դըրաւ իր կռնակը, ու

*երեքօրեայ գնացքը քըշեցին մէկ լար» ։ Նշանածը անոնց ետեւէն կ'իյնայ. Սիամանդօն անոր կը զարնէ նետը. ան «Մըռռա՛ց» ։ Ու ըզՍիամանդօն գըներէն ի վայր հոլովեց». Խըջէզարէն կ'իյնայ իր սիրելի Սիամանդոյի ետեւէն. «Արձանացաւ, կեցաւ գընարի գլուխը. — Այնտեղը դպաւ իր ականջին Սիամանդոյի ցաւէն տըքնալու ձայնը, . . . Ախ մի՛ տըքար, իմ Սիամանդոյ, մի՛ տըքար ...» ։ Սիամանդոյ կը պատասխանէ. «Մի՛ լար իմ Խըջէչարէ, մի՜ լար ։.. Քու լացը ինձ աւելի ցաւ է ... մի՛ լար ...» Խըջէզարէն սրտաբեկ կը յիշեցընէ Սիամանդոյի, թէ պէտք չէր այդ որսին ետեւէն իյնալ. «Թէ քեզ որս պիտի, ես քեզ որս հերիք եմ. Մի՛ երթար» ։ Յետոյ յուսաբեկ, և հարազատ գուրգուրանքէն մղուած, կ'ըսէ Սիամանդոյին ։*

Սիամա՜նդօ, ինձ ճամբայ մի տուր քովդ գալու,
Ճամբայ մի ցոյց տուր, գամ քեզի հետ հոգի
տալու ։

Փայտատ ու թի բերէք, բերէք պալեր ու զընկար-
ներ չըրջեցէք,

*Խըջէզարէն ու Սիամանթօն մէկտեղ քարերուն*
*տակ թաղեցէք ...*

*Այս սրտառուչ երգը ողբերգելով, «աչերը կը խըփէ, գլուխն ի վայր կը հոսէ. մէկ անգամ միայն կ'աւաչէ — Իմ Սիամանթոյ ... Եւ Սիամանթոյին հազիւ արձագանգ մի կը տայ — Իմ Խըչէզարէ ...» ու երկուքը ի միասին հոն կը լռեն կը մեռնին, հոն կը մնան։ Սրուանձտեան կը յիշատակէ հետեւեալը. «Աւանդութիւնը կ'ըսէ թէ. Այն տեղը երկու ծաղիկներ կը բուսնին համանըման ամեն գարնան, և երկու թիթեռնիկներ կու գան, կը թառին ու կը թըռուըրան այդ խորհրդաւոր ծաղկանց շուրջն ու վրան»։*

(Համով-Հոտով էջ 269–77).

167

*Սէրը երբ կոյս է և անկեղծ, յագենալ չունի.*

*Աշխարքն աշխարով կըշտացաւ, իմ սիրտըն քիզանից սով ա։*

(Սայաթ-Նովայ էջ 76).

168

*Ով կ՚ատէ, չի սիրուիր. սիրողը կը սիրուի. Սայեաթ Նօվան շատ լաւ ըսած է.*

*Օվ օր ինձ չ՚ի սիրի, իս էլ չ՚իմ սիրի.*
*Սէրըն սէր կու բերէ . . .*

(Սայաթ Նօվայ էջ 130).

169

*Զարաշար պահանջկոտներու համար Ալաշկերտցիք կը գործածեն սա առակը.*

*կուզ (կզաքիս)*
*սովրաւ ի թուզ.*

Ազգ. հանդէս գիրք VII VIII, 1901 էջ 469).

170

*Սիրողին ճաշակին համեմատ՝ կը սիրուի իր մը. նման զնման կը սիրէ, թէեւ սիրածը խորշելի ըլլայ ուրիշին համար։ Ալաշկերտցիք այս առթիւ կը գործածեն սա առակը.*

*Ուռին ու բարդին*
*ամէն (իւրաքանչիւր) խըտ (հետ) ուր (իւր) մաղտին*
*(ախորժակ)։*

(Նոյն էջ 477).

171

*Աղքատը երբ անհամեստ պահանջներ ունենայ, Հայաստանցին անոր կը յիշեցընէ.*

Ուր (իւր) պապ (հայր) որ չ'տեսնէր.
գինէր (գիտէր) թէ ինք փաշի տղայ էր։

*Կը մեկնուի. « Բարձր պահանջներ ընել, մոռանալով իր ծագումը և արժանաւորութիւնը »։*

(Նոյն էջ 478).

172

*Ընտանեկան սէրը կրակ է, եթէ հարազատ է ու անկեղծ. հեռաւորութիւնը չի ցրտացներ, այլ աւելի կը տոչորէ կարօտի կրակով. սակայն Ալաշկերտցիք իրենց հետագայ առակով հակառակը կ'ըսեն.*

Աչքէն հեռու.
'սրտէն հեռու։

*Մեկնութիւնն է. « Շարունակ աչքին առջեւ չ'գտնուող բարեկամը կամ ազգականը ցուրտ սէր կը վայելէ »։*

(Նոյն էջ 488).

173

*Զափաւորութիւնը գերադասելի է. ըստ առակին.*

*Շատ մի՛ սիրեր՝ ատել կայ,*
*չատ մի՛ ատեր, սիրել կայ։*
(Նոյն էջ 399).

174

*Երբ պառաւները կամ ծերացածները ան-պարկեշտ մոքեր կ'ունենան, Հայաստանցին պարկեշտ առակով կը հեգնէ զանոնք.*

*Ջուրն ընկեր առուըներ (առու)*
*սէրն ընկեր պառուըներ (պառաւ)։*
(Նոյն էջ 502).

175

*Սէրը, զուրգուրանքը միայն բանաւորներուն սեփականութիւնն չէ. ծաղիկն, սոխակն, և լուսնակ իրարու կը տածեն սէր քնքոյշ և անոյշ։ Անոնք զիրար կը սիրեն և միմեանց ցաւը կը ողան.*

*Սոխակ լացաւ ու մարեցաւ.*
*Երբ իր սիրուն վարդ թօշնեցաւ,*
Գոհարիկ.

*Լուսին տեսաւ, հեծեց լացաւ,*
*Երբ իր սիրուն սոխակ մեռաւ,*
*Գոհարիկ։*

*Սրտագրաւ աւանդութիւնը կ'իմացընէ. «Աւանդութիւն է ի Հայս, թէ երբ դրախտին մէջ առաջին անգամ վարդ է թառամեր, ցայգանուագ սոխակին ձայնն էլ մարեր է, որուն վրայ լուսին եւս արտասուեր է. այգուն շաղցօղը նոյն արցունքն է եղեր, որ ցարդ կը շարունակուի ի սէր սոխակին վաղամեռիկ լինելոյ առ սէր վարդին»։*

(Հայկ. Յիսեակ առակ. Բ. էջ 37).



# ԳԼՈՒԽ Գ.

## ԶՈՒԱՐԹՈՒԹԻՒՆ, ԶԱՆՋՐՈՅԹ, ՀԱՃՈՅՔ, ՑԱՒ, ԱՂՕԹՔ.

176

ՀԱՅ *քնարը երբ կ'երգէ քաջութիւնը, չի մոռնար արքայութիւնը. մեր կրակոտ բանաստեղծ Գամառ Քաթիպան կը յիշէ մեղաւոր եղբայրը. կը յիշէ աղօթքը — հոգեկան կենսական կրակը, և կ'ուզէ որ անմեղը մեղաւորին համար աղօթէ.*

*Թէ որ անմեղը չաղօթէր իսկի*
*Իրա մեղաւոր աղբօրը խաթրին,*
*Երկիր կու ճաքուէր ահեղ ձէներով,*
*Երկինք կու խռովէր վերից մեր գլխին։*

(Ոտանաւորներ եջ 71).

177

*Ծուարած ու յուսահատ հայութիւնը կ'ողբայ.*

*Սուրբ խորան չունենք, արդ ո՞ւր աղօթենք,*
*Հիմի՞ էլ լռենք։*

(Նոյն եջ 96).

178

*Երբ մեր մէջ անդստին մեր նախահարց և նախնի դիւցազանց օրերէն՝ ճարակ գտաւ կուտարար հոգին երկպառակութեան, չարութեան ու նախանձի սատանան Մըրուսը յայտնեցաւ Հայաստանի վրայ, «ծնաւ հայկական վիշտ ու ցաւ»։ Գամառ Քաթիպա կը հարցընէ*

*Եղբարք, ինչո՞ւ տիրել են մեզ այսքան վիշտք,*
*այսքան ցաւ. —*
*Ընդուր համար, որ մեր մէջ Մըրուս-Դեւը յայտնեցաւ։*
(Նոյն էջ 117).

179

*Երգը՝ զուարթութեան աղբիւրն է, ուսկից տխուր սրտին մէջ կը հոսի կազդուրիչ ուրախութիւնը. հեղինակները կը պատուիրեն երգել, նաեւ բանի երգել. սա ազդու միջոց մըն է, որով անընկճելի տխրութեան կը յաղթենք. կ'երգենք՝ նախ առանց յօժարութեան, յետոյ յօժարակամ. բանի երգելով, բնաւոր տխրութիւնը կը յաղթահարենք։ Գամառ Քաթիպան ալ՝ Փիլիպպոս Վարդանեանի*

նուիրած իր երգին մէջ, կը յորդորէ երգել, թէ հարսանիքի և թէ բանտի մէջ.

Երգով յիշէ՛ մեր նախնեաց,
Երգով թո՛ղ քնէ քո որդին,
Երգն է մարդուն անգին գանձ, —
Լոկ չար մարդիկ երգ չունին։
(Նոյն էջ 138).

180

Պասկանեան զուարթութեան յորդոր կը կարդայ. ու կը պարսաւէ տխրողները.

Նորան կասիմ ես անմախ,
Որ չըսիրէ կեանք ուրախ.
Թուչերըս որ թոռմեցան,
Աւ ի՞նչ պէտք է կինի, տաղ։
(Նոյն էջ 319).

181

Հոգեկան մտատանջութիւնները թշնամի են ներքին ուրախութեան. Եզնիկ կը գրէ.

Որ լաւն է, և զուարթ երեւի։
(Եզնիկ էջ 308)

182

Աղօթողին համար Եզնիկ սա պատուէրը կու տայ.

*Լաւ է յստակ խորհրդով ննջել, քան պիղծ խորհրդով աղօթս մատուցանել, և վարձս ոչ առնուլ և ի զուր աշխատել։*

(Նոյն էջ 299)

183

*Ցաւը առհասարակ ամէնուն բաժինն է. ոչ հարստութիւն և ոչ քաջութիւն կրնան այդ բաժինը մերժել. ամէն անհատ ըստ վիճակին պատրաստուած է կրելու.*

*Փարթամն ի սարսուռ, աղքատն ի մուր, միջակն ի հուր, այլքն ի ջուր, ամենեքին ունին զիւրեանց խէթ։*

(Հատք էջ 66).

184

*Նարեկէն զատ, մեր մատենագիրներու մէջ չունինք սրտի լարերը հոգեւորող այնքան դիւթող աղօթասաց քնար մը հոգեզմայլ։ Անկեղծ սրտերէ բղխող աղերսներ կը լսենք ժողովրդական բանահիւսութեան էջերէն. Հայ ժողովուրդը իր ամէն գաւառներու մէջ ունի յատուկ պաղատանքներ, որով կը խնդրէ երկինքի բարեխօսութիւնը. Հայ ա-*

ղօթքը ունի իր հոգեզրոշմ յատկութիւնը, ոչ փափկահիւս, այլ բնական ու պարզ և երբեմն ալ անէծքներով խառն։ Հայ աղօթքը զուրկ չէ բառախաղերու քերթողական հըմայքէն։ Բորչալուի գաւառացին՝ արթննալուն կ'աղօթէ.

Լուսացաւ լուսն է բարին,
Ես հաւատամ տէր կենդանին
Ուսին, ուսին, էն սուրփ կուսին,
Հրեղէն ծով ա, հրեղէն լուսին։

Հայ ջերմեռանդը աչքը բաց կ'երազէ որ

Մարիամը նստէր սուրփ սեղանին,
Աստծու շնորհքն էր բերանին,
Գիրկն էր առել Աստուածորթին,
Մի խաչ սրտին, մի խաչ լերդին։

Մարիամը Աստուածածին՝ հայուն պաշտպանն է կաթոգին.

Եկեղեցու դուռն էր բաց,
Աստուածածին մէջը չոքած,
Աղօթք կանչէր լուս տաճարին,
Ծիծն ու էրէսը վարթ ծիրանի.
Աղօթք կանէր իր խաչորդուն,
Որ ողորմի ամէն մարթուն,
Փրկէ ցաւից՝ պատուհասից,
Զար փորձանքից, սասում սասմից։

*Եւ զայս ըստ աղօթասացին,*

*Ով որ երեք բերան ասի,*
*Մեղքը ջնջուի դատաստանին։*
(*Ազգագրական Հանդէս գիրք* XI *էջ* 33).

185

*Հայը՝ չարին խափան առ սիրելին իր Քրիստոս առտու կանուխ կ'աղօթէ.*

*Սուրփ կուսը տանը քուն,*
*Սուրփ Սարգիսը կտէրը զարթուն,*
*Կտուրը էկողը եդ դառնայ,*
*Դուռը էկողը փէտ դառնայ։*
(*Նոյն էջ* 34).

186

*Քնանալուն՝ հայը ունի իր քնքոյշ աղօթք-ները. որոնք Դեւերն ու Քաջերը կը հալածեն.*

*Ճշմարտապէս քնանամ,*
*Դրախտի դուռը բանամ,*
*Մտնեմ անմահ դրախտը,*
*Անթառամ ծաղիկ ստանամ,*
*Փնջեմ դնեմ գլխիս տակը,*
*Ինձ պահպանի սուրբ հրեշտակը։*
*Քուն ըլեմ, քունս անուշ,*

*Հրեշտակիս հետը մուշ-մուշ,*
*Զարթնեմ երազս բարի,*
*Ինչ որ խնդրեմ կատարի։*

(Նոյն էջ 35)․

187

*Հայ հռոմէական բարեպաշտը՝ անկողին մտնելուն, լատին շրթունքով կ'աղօթէ. «Յիսուս, Մարիամ և Հայր Յուսէփ սիրտս հոգիս և մարմինս ձեզի կու տամ». գաւառացի հայը անոր նման, իրկնանման յատուկ աղօթքով մը կը պառկի.*

*Յիսուսի խաչը սրտիս,*
*Աւետարանը բարձիս,*
*Ըհը մտայ գերեզման,*
*Իմ Տէրը Յիսուս աննըման,*
*Հոքիս քեզ ամանաթ,*
*Մարմինս զողն քին ամանաթ,*
*Հոգիս Գաբրէլ հրեշտակին,*
*Թող յանձնէ Յիսուս փրկչին։*

(Նոյն էջ 35)․

188

*Բարեպաշտ հայը Աստուածամօր կ'աղաչէ, որ «Յիսուս որդու խաթեր համար»* զինքը

*մեղքերէն ազատէ. և կ'ուզէ որ իր փրկութեան համար,*

*Սուրփ կաթը Մարիամ կուսին,*
*Անգին արիւնը Տէր Յիսուսին,*
*Ծագիկ դառնան թող փնջուին,*
*Բալքի մեղքերս ջնջուին։*

(Նոյն էջ 36).

189

*Սխալը հասկնալէն վերջը, պէտք է շուտ զղջալ, թէ ոչ Հայաստանցին կը հեգնէ.*

*Համբարձման կը խմայ,*
*Վարդէվրին կը սարխօշնայ։*

*Միկնութիւնն է. «Երբ մէկը չափազանց ուշ կը հասկանայ իր գործած սխալը, ու կը զղջայ անոր վրայ»։*

(Ազգ. Հանդէս գիրք VII, VIII, 1901 էջ 470).

190

*Ամէն մարդ մի միայն իր ցաւը կ'ըմբռնէ և կ'ուզէ անգիտանալ ուրիշինը, սակայն իւրաքանչիւր անձ ունի իր ցաւը, վիշտը և պերջանիկ համարուելու իրական կամ ե-*

*ընւակայական երազը. պէտք է հաւատալ որ ամէն մարդ ունի իր լացի առարկան.*

*Ամէն ոք իւր Պաւլօն կուլայ.*

*Կիւմիւշխանցւոց Պաւլօն . . . Սրուանձտեանց կը հարցընէ. «Ո՞վ է այս Պաւլօն, և ի՞նչ մարդ է եղեր, զոր կ'ողբայ ամբողջ քաղաքը»։ Առատ ոսկի գտնուած բովին մէջ քառասուն աշխատաւորներ փլածոյի մը տակ կը մեռնին. «քառասունն ալ էին Պաւլօ»։*

(Թովմաս Աղբար Բ. էջ 38).



# ԳԼՈՒԽ Դ.

## ԽՈՐԱՄԱՆԿՈՒԹԻՒՆ. ԿԵՂԾԱՒՈՐՈՒԹԻՒՆ. ԽԱԲԷՈՒԹ. ՓԱՌԱՍԷՐՈՒԹ. ԾԱՂՐ.

191

*Մենք մեր փոքր գործերը կը խոշորցընենք, անոնցմով կը պարծինք, և չենք յառաջադիմեր, վասն զի անկատար վիճակի մէջ թմրելով, կատարելութեան հասած կը համարուինք. կը խաբուինք սուտ պարծանքներէն, պարծանքը զմեզ շուարեցուցած է. կը գրէ Գամառ Քաթիպա.*

*Սուտ պարծանքը հայերի խելքն է տարել։*
(Ոտանաւորներ էջ 69).

192

*Պատկանեան կը յորդորէ որ բանաստեղծը լաւ բան գրէ. ցաւալի են հայուն թերութիւնները, և հեգնօրէն իր յորդորները կը շարունակէ ու յուսահատ խաբեբայ հայ մամուլին ալ կ'ուղղէ իր քնարը.*

Ուր և աչք դարձնես՝ անըսփոփ պատկեր —
Հայ սուրբ մամուլըն է կաշառակեր։
(Նոյն էջ 235).

193

Պատկանեան իր «Մի կարծէք որ ես...» առ Պ. Գր. Չալխուշեան նուիրած երգով, ցոյց կու տայ որ փառասիրութեան համար չէ որ կը հառաչէ, կ'ողբերգէ, կը ցնցէ հայութիւնը.

Մի կարծէք որ ես սին փառքի համար,
Իմ հառաչանքով լըցրի ... աշխարհ.
Այս հէգ ամբոխի ծափին ու գովքին
Կարօտ չէր բընաւ իմ հըպարտ հոգին ...
(Նոյն էջ 249).

194

Պատկանեան ցոյց կու տայ որ Հայը խաբուելով, իր գլխուն շատ աղաներ ստեղծած է.

Մեզի վով որ շատ խաբիլ է,
Մեր աղան ալ նա եղիլ է։
(Նոյն էջ 327).

195

*Անմոռանալի է Պօլսոյ Ամիրաներու և Հայ պետական անձերու փառահեղ պատմական անցեալը, բայց կարելի՞ է ըսել որ այդ շըր-ջանը դատապարտելի, խարդախ, խորամանկ փառասիրութիւններով մոլեգնոտ, մընաանր չի հասցուց ազգին. ասոր կը Թողունք որ խնքնին Պօլսեցի մը Րաֆֆիի բերնով պա-տասխանէ. «Մեզ մօտ էր նիւթական ուժը — արծաթը, — որ ամիրաների դալասներն էր միայն զարդարում և Հայաստանցու բա-րօրութեան համար մի փարայ անգամ չէր ծախսվում». և այս պոլսեցիին հետագայ խօս-քերն կարելի է յատկացընել նաև այն ա-մենուն, որոնք շատ ծուռ մաքով ազգին ղե-կավար ու առաջնորդ եղան.*

*Մի խօսքով մենք մեր ձեռքում բռնած ունէինք ազգի յառաջադիմութեան ղեկը, կարծես, մի չար մտքով նրան մոլորեցնելու և դէպի կորուստ տանելու համար ...*

(Խենթը էջ 189).

196

*Հեզութիւնը լաւ է, բայց ոչ կուրօրէն անզէն մնալ անակնկալ պատահարներու առ-*

չեւ, այլ խորամանկութիւն ալ պէտք է. ժո-ղովուրդը լաւ կ՚ըսէ.

Շան հետ հաշտ եղիր, բայց փայտը ձեռքիցդ բաց մի՛ թող։

(Խնեմըր էջ 306).

197

Մեր ծանօթ երգիծաբան Ց. Պարոնեան՝ խորէն Եպիսկ. Նար–Պէյին հեգնական կեն-սագրութեան մէջ կը գրէ. «Սա ինքն է, որ իւր մկայութեանը նայելով, երկու ամիս աշ-խատելէն ետքը հետեւեալ գիւտն ըրաւ.

Ջիւր անուան կոչ
Գիտե՞ս – ոհ. ոչ։

Թէպէտեւ պատմաբաններէն ոմանք Հո-մերոսի կ՚ընծայեն այս երեւելի գիւտն . . . Արդարեւ այդ գիւտը մեր ազգին համար ա-ւելի մեծ նշանակութիւն ունի քան Գիտո Աշխարաց»։ Այս ծաղրածութենէն վերջը, կը յաւելու սա հեգնական նախադասութիւնը.

Եւ կը զարմանանք թէ ինչո՞ւ այդ գիւտին օրը կիրակի չեն բռներ ... բանաստեղծները։

(Ազգ. Ջոջեր էջ 11).

198

*Կան վեհանձներ որ հասարակաց մեծ բարիքի մը համար կը հրաժարին իրենց փառքէն, ու աթոռէն. բայց և կան անձինք որ բռնի կը հրաժարին, գուշակելով արդէն որ անհնար է այդ գործին կամ փառքին մէջ տոկալն, ատոնց համար կարելի է գործածել Պարոնեանի այս հեգնականը.*

*Խորէն յօժար կամքով հրաժեշտ տուաւ իւր պաշտօնին... երբ Թաղեցիները վար առին զինքը։*
(Նոյն էջ 13).

199

*Տաղտկալիօրէն երկարապատում, ճապաղ գրիչներու և ատենաբաններու համար, իբրև երգիծաբան առած՝ կարելի է գործածել Պարոնեանի այս նախադասութիւնը.*

*Շատերը կը յարգեն Եուսուֆեան էֆէնտիին ատենախօսութիւններն իբրև . . . քրտնեցուցիչ դեղ։*

(Նոյն էջ 33).

200

*Անխոհեմ և ո՛չ շրջահայեաց, կռուարար խմբագիրներուն՝ յարմար է Պարոնեանի այս*

*ղօթքը ունի իր հոգեդրոշմ յատկութիւնը, ոչ փափկահիւս, այլ բնական ու պարզ և երբեմն ալ անէծքներով խառն։ Հայ աղօթքը զուրկ չէ բառախաղերու քերթողական հըմայքէն։ Բորչալուի գաւառացին՝ արթննալուն կ'աղօթէ.*

*Լուսացաւ լուսն է բարին,*
*Ես հաւատամ տէր կենդանին*
*Ուսին, ուսին, էն սուրփ կուսին,*
*Հրեղէն ծով ա, հրեղէն լուսին։*

*Հայ ջերմեռանդը աչքը բաց կ'երազէ որ*

*Մարիամը նստէր սուրփ սեղանին,*
*Աստծու չնորհքն էր բերանին,*
*Գիրկն էր առել Աստուածորթին,*
*Մի խաչ սրտին, մի խաչ լերդին։*

*Մարիամը Աստուածածին՝ Հայուն պաշտպանն է կաթողին.*

*Եկեղեցու դուռն էր բաց,*
*Աստուածածին մէջը չոքած,*
*Աղօթք կանչէր լուս տաճարին,*
*Ծիծն ու էրէսը վարթ ծիրանի.*
*Աղօթք կանէր իր խաչորդուն,*
*Որ ողորմի ամէն մարթուն,*
*Փրկէ ցաւից՝ պատուհասից,*
*Ջար փորձանքից, սասում սասմից։*

*Եւ զայս ըստ աղօթասացին,*

*Ով որ երեք բերան ասի,*
*Մեղքը ջնջուի դատաստանին։*
*(Ազգագրական Հանդէս գիրք XI էջ 33).*

185

*Հայը՝ չարին խափան առ սիրելին իր Քրիստոս առտու կանուխ կ'աղօթէ.*

*Սուրփ կուսը տանը քուն,*
*Սուրփ Սարգիսը կտերը զարթուն,*
*Կտուրը էկողը եղ դառնայ,*
*Դուռը էկողը փէտ դառնայ։*
*(Նոյն էջ 34).*

186

*Քնանալուն՝ հայը ունի իր քնքոյշ աղօթքները. որոնք Դեւերն ու Քաջերը կը հալածեն.*

*Ճշմարտապէս քնանամ,*
*Դրախտի դուռը բանամ,*
*Մտնեմ անմահ դրախտը,*
*Անթառամ ծաղիկ ստանամ,*
*փնջեմ դնեմ գլխիս տակը,*
*ինձ պահպանի սուրբ հրեշտակը։*
*Քուն ըլեմ, քունս անուշ,*

*Հրեշտակիս հետը մուշ-մուշ,*
*Զարթնեմ երազս բարի,*
*Ինչ որ խնդրեմ կատարի։*

(Նոյն էջ 35)։

187

*Հայ հռովմէական բարեպաշտը՝ անկողին մտնելուն, լաւին շրթունքով կ՚աղօթէ. «Յիսուս, Մարիամ և Հայր Յուսէփ սիրտս հոգիս և մարմինս ձեզի կու տամ». գաւառացի հայը անոր նման, երկնանման յատուկ աղօթքով մը կը պառկի.*

*Յիսուսի խաչը սրտիս,*
*Աւետարանը բարձիս,*
*Ըհը մտայ գերեզման,*
*Իմ Տէրը Յիսուս աննըման,*
*Հոգիս քեզ ամանաթ,*
*Մարմինս գողն քին ամանաթ,*
*Հոգիս Գաբրէլ հրեշտակին,*
*Թող յանձնէ Յիսուս փրկչին։*

(Նոյն էջ 35)։

188

*Բարեպաշտ հայը Աստուածամօր կ՚աղաչէ, որ «Յիսուս որդու խաթեր համար» զինքը*

*մեղքերէն ազատէ. և կ'ուզէ որ իր փրկութեան համար,*

Սուրփ կաթը Մարիամ կուսին,
Անգին արիւնը Տէր Յիսուսին,
Ծագիկ դառնան թող փնջուին,
Բալքի մեղքերս ջնջուին։

(Նոյն էջ 36).

## 189

*Սխալը հասկնալէն վերջը, պէտք է շուտ զղջալ, թէ ոչ Հայաստանցին կը հեգնէ.*

*Համբարձման կը խմայ,*
*Վարդէվրին կը սարխօշնայ։*

*Մեկնութիւնն է. «Երբ մէկը չափազանց ուշ կը հասկանայ իր գործած սխալը, ու կը զղջայ անոր վրայ»։*

(Ազգ. Հանդէս գիրք VII, VIII, 1901 էջ 470).

## 190

*Ամէն մարդ մի միայն իր ցաւը կ'ըմբռնէ և կ'ուզէ անգիտանալ ուրիշինը, սակայն իւրաքանչիւր անձ ունի իր ցաւը, վիշտը և պերջանիկ համարուելու իրական կամ ե-*

րեւակայական երազը. պէտք է հաւատալ որ ամէն մարդ ունի իր լացի առարկան.

Ամէն ոք իւր Պաւլօն կուլայ.

Կիւմիւշխանցւոց Պաւլօն . . . Սրուանձտեանց կը հարցընէ։ «Ո՞վ է այս Պաւլօն, և ի՞նչ մարդ է եղեր, զոր կ'ողբայ ամբողջ քաղաքը»։ Առատ ոսկի գտնուած բովին մէջ քառասուն աշխատաւորներ փլածոյի մը տակ կը մեռնին. «քառասունն ալ էին Պաւլօ»։

(Թովմաս Աղբար Բ. էջ 38).



# ԳԼՈՒԽ Դ.

## ԽՈՐԱՄԱՆԿՈՒԹԻՒՆ. ԿԵՂԾԱՒՈՐՈՒԹԻՒՆ. ԽԱԲԷՈՒԹ. ՓԱՌԱՍԷՐՈՒԹ. ԾԱՂՐ.

191

*Մենք մեր փոքր գործերը կը խոշորցընենք, անոնցմով կը պարծինք, և չենք յառաջադիմեր, վասն զի անկատար վիճակի մէջ թմրելով, կատարելութեան հասած կը համարուինք. կը խաբուինք սուտ պարծանքներէն, պարծանքը զմեզ շուարեցուցած է. կը գրէ Գամառ Քաթիպա.*

*Սուտ պարծանքը հայերի խելքն է տարել։*
(*Ոտանաւորներ եջ* 69).

192

*Պատկանեան կը յորդորէ որ բանաստեղծը լաւ բան գրէ. ցաւալի են հայուն թերութիւնները, և հեգնօրէն իր յորդորները կը շարունակէ ու յուսահատ խաբեբայ հայ մամուլին ալ կ'ուղղէ իր քնարը.*

Ուր և աչք դարձնես՝ անըսփոփ պատկեր —
Հայ սուրբ մամուլըն է կաշառակեր։

(Նոյն էջ 235).

193

Պատկանեան իր «մի՛ կարծէք որ ես...» առ Պ. Գր. Չալխուշեան նուիրած երգով, ցոյց կու տայ որ փառասիրութեան համար չէ որ կը հառաչէ, կ'ողբերգէ, կը ցնցէ հայութիւնը.

Մի՛ կարծէք որ ես սին փառքի համար,
իմ հառաչանքով լցրի ... աշխարհ.
Այս հէգ ամբոխի ծափին ու գովքին
Կարօտ չէր բնաւ իմ հըպարտ հոգին ...

(Նոյն էջ 249).

194

Պատկանեան ցոյց կու տայ որ Հայը խաբուելով, իր գլխուն շատ աղաներ ստեղծած է.

Մեզի վով որ շատ խաբիլ է,
Մեր աղան ալ նա եղիլ է։

(Նոյն էջ 327).

195

*Անմոռանալի է Պոլսոյ Ամիրաներու և Հայ պետական անձերու փառահեղ պատմական անցեալը, բայց կարելի՞ է ըսել որ այդ շըրջանը դատապարտելի, խարդախ, խորամանկ փառասիրութիւններով մոլեգնոտ, վընասներ չի հասցուց ազգին. ասոր կը թողունք որ ինքնին Պոլսեցի մը Րաֆֆիի բերնով պատասխանէ. «Մեզ մօտ էր նիւթական ուժը — արծաթը, — որ ամիրաների պալատներն էր միայն զարդարում և Հայաստանցու բարօրութեան համար մի փարայ անգամ չէր ծախսվում». և այս պոլսեցիին հետագայ խօսքերն կարելի է յաւելցընել նաև այն ամենուն, որոնք շատ ծուռ մտքով ազգին ղեկավար ու առաջնորդ եղան.*

*Մի խօսքով մենք մեր ձեռքում բռնած ունէինք ազգի յառաջադիմութեան ղեկը, կարծես, մի չար մտքով նրան մոլորեցնելու և դէպի կորուստ տանելու համար ...*

(Խենթը էջ 189).

196

*Հեզութիւնը լաւ է, բայց ոչ կուրօրէն անզէն մնալ անակնկալ պատահարներու առ-*

*չեւ, այլ խորամանկութիւն ալ պէտք է. ժո-ղովուրդը լաւ կ'ըսէ.*

*Շան հետ հաշտ եղիր, բայց փայտը ձեռքիցդ բաց մի՛ թող։*

(Խնձոր էջ 306)․

197

*Մեր ծանօթ երգիծաբան Յ. Պարոնեան՝ Խորէն Եպիսկ. Նար-Պէյին հեգնական կեն-սագրութեան մէջ կը գրէ. «Սա ինքն է, որ իր մկայութեանը նայելով, երկու ամիս աշ-խատելէն ետքը հետեւեալ գիւտն ըրաւ.*

*Ջիւր անուան կոչ*
*Գիտե՞ս – ոհ. ոչ։*

*Թէպէտեւ պատմաբաններէն ոմանք Հո-մերոսի կ'ընծայեն այս երեւելի գիւտն . . . Արդարեւ այդ գիւտը մեր ազգին համար ա-ւելի մեծ նշանակութիւն ունի քան Գիւտ Եշխարաց»։ Այս ծաղրածութենէն վերջը, կը յաւելու սա հեգնական նախադասութիւնը.*

*Եւ կը զարմանանք թէ ինչո՞ւ այդ գիւտին օրը կիրակի չեն բռներ ... բանաստեղծները։*

(Ազգ. Ջոջեր էջ 11)․

198

*Կան վեհանձններ որ հասարակաց մեծ բարիքի մը համար կը հրաժարին իրենց փառքէն, ու աթոռէն. բայց և կան անձինք որ բռնի կը հրաժարին, գուշակելով արդէն որ անհնար է այդ գործին կամ փառքին մէջ տոկալն, ասոնց համար կարելի է գործածել Պարոնեանի այս հեգնականը.*

*Խորէն յօժար կամքով հրաժեշտ տուաւ իւր պաշտօնին... երբ Թաղեցիները վար առին զինքը։*
(Նոյն էջ 13).

199

*Տաղտկալիօրէն երկարապատում, ճապաղ գրիչներու և ատենաբաններու համար, իբրեւ երգիծաբան առած՝ կարելի է գործածել Պարոնեանի այս նախադասութիւնը.*

*Շատերը կը յարգեն Նուսուֆեան էֆէնտիին ատենախօսութիւններն իբրեւ . . . քրտնեցուցիչ դեղ։*

(Նոյն էջ 33).

200

*Անխոհեմ և ո՛չ շրջահայեաց, կռուարար խմբագիրներուն՝ յարմար է Պարոնեանի այս*

նախադասութիւնը, զոր գործածած է «Հայաստան»ի խմբագիր Տէրոյենց Պատուելիին համար։

Այնպիսի ջարդ մը տուաւ ընթերցողներուն, որ իրմէ զատ «Հայաստան» կարդացող չմնաց։

(Նոյն էջ 65).

201

Անարժան եկեղեցական բարձրաստիճան անձնաւորութեանց համար, շատ յարմար է գործածել Տէրոյենցի հեգնականը.

Գաւազանը ասանկ մարդկերու ձեռք տալու տեղ կոնակը տալու է։

(Նոյն էջ 72).

202

Այն խմբագիրներուն որոնք աւելի իրենց քմահաճոյքը կը մտածեն, քան թէ ժողովուրդ հասարակութեան յառաջադիմական պահանջները, կարելի է գործածել Պարոնեանի այս հեգնականը, զոր յատկացուցած է Իւթիւճեանի, որ ըսած է

*Լաւ է որ ընթերցողներս վնասին քան թէ Մասիսի լեզուն։*

(Նոյն էջ 82).

203

Chantage*ի երկրպագու մամուլի գործիչներուն, ամենայարմար է այս նախադասութիւնը, զոր գործածած է Պարոնեան Խութիւճեան խմբագրին համար.*

*Ով է խնդիր մը անաչառութեամբ քննելու համար զայն կը պարզէ, անոր մէջ ճշմարտութենէ առաջ բաժանորդ կը փնտռէ։*

(Նոյն էջ 84).

204

*Գործը աւրող գործունեայներուն կարելի է սեպհականել Մկրտիչ Տիգրանեանի համար Պարոնեանի այս նախադասութիւնը.*

*Պատին վրայ բեւեռ մը զամելու համար տանը հիմերուն բեւեռները կը քակէր բարեկարգելու համար տունն։*

(Նոյն էջ 97)

205

Հասարակական պէս պէս կարեւոր գոր-ծերու մէջ, միշտ նոյն յորդորը՝ յարմար անյարմար նոյն խրատը տուողներուն հա-մար, կարելի է ակնարկել և առակ դարձնել Պարոնեանի Այս չուրկճի պատմութիւնը, զոր հնարած է իր երգիծանքին մէկ դիւցազին՝ Մկրտիչ Տիգրանեանի համար։ Պատմութիւ-նը ահա համառօտակի ։ Իր այդ դիւցազը Սամաթիոյ մէջ հրաշագործութիւններ կ'ընէր․ «Կաղեր, կոյրեր, խուլեր, համրներ, այսա-հարներ, անդամալոյծներ կը բժշկէր։ Ամէն օր հիւանդներ կ'երթային իրեն ։ — Հա՜յր սուրբ, իմացանք որ դուք ամէն ցաւերը կը փարատէք ։ — Հրամեր էք օրհնած ։ — Քանի մը շաբաթէ ի վեր գլխու ցաւ ունիմ, կ'ուզեմ որ փարատէք։ — Գլո՞ւխդ թէ ցաւդ։ — Գլուխս, հայր սուրբ, գլուխս։ — Շատ լաւ իմծի համար երկուքն ալ մի և նոյն բանն են։ Եկուր խաչահանգիստ մը ընեմ։ — Մարդը կը մեկնի և քանի մը ժամէն ետքը անդիի աշխարհքը կ'երթայ։ — Եր-րորդ մը կը ներկայանայ։ — Հա՜յր սուրբ,

սենեակին պատուհանը կոտրեցաւ։ — Պատուհանը հոս բե՛ր, վրան բժշկութեան աւետարան մը կարդամ։ Չորրորդ մը. — Հա՛յր սուրբ, մազերս կը թափին։ — Այս ջուրով գլուխդ լուա՛։ Հինգերորդ մը կը մտնէ. — Հա՛յր սուրբ, անձրեւ եկած օրը սենեակս կը վազէ, ի՞նչ ընեմ։ — Այս ջուրէն քիչ մը դի՛ր սենեակիդ վրայ։ — Պատրիարքարանէն մէկը. — Հա՛յր սուրբ . . . — Այս ջուրէն ա՛ռ։ — Պատրիարքը ղրկեց զիս ... — Պատրիարքին ալ այս ջուրէն։ — Ձեզի ըսելու որ . . . — Ձեզի ալ այս ջուրէն։ Քիչ մը ... — Այս ջուրէն։ — Պատրիարքարան հրամմէք։ — Պատրիարքարանի ալ այս ջուրէն։ — Եթէ չի գաք ... — Եթէին ալ այս ջուրէն։ — Նորէն բանտ պիտի երթաք։ — Բանտին ալ այս ջուրէն։ — Պիտի բերվիք Փրկիչ։ — Փրկչին ալ այս ջուրէն։ — Կառավարութիւնը ... — Կառավարութեան ալ այս ջուրէն։ — Վերջապէս ամեն ցաւերն ալ այս ջուրով կը բժշկէր։ Միայն այսահարներուն փորէն դեւերը կը հանէր, սակայն չկրնալով միշտ խոզեր գտնել, որ

*անոնց ղրկէ, շատ անգամ իր փորին մէջ կը հիւրընկալէր գեւերը առժամանակեայ կերպով ...»։ Պարոնեանի այս երեւելի անձնաւորութիւնը պարտատէրոջ ալ կը հրամցընէր։*

*Այս Ջուրէն։*

(Նոյն էջ 104–7)։

206

*Գոռոտախօս, ինքնահաւան, անամիտ, գոռոզ գրիչներու՝ կարելի է ուղղել Պարոնեանի այս հեգնականը։*

*Դողացէք ոտներուս տակ ով գուլպաներս։*

(Նոյն էջ 137)։

207

*Իսկ ունայնամիտ փառասէրներուն, կըրնանք սեպհականել Պարոնեանի այս հեգնականը։*

*Եթէ մլուկ մը ճզմէ՝ Ենէականի մէջ՝ տեղ կը փնտռէ, որ դիւցազներուն մէջ երթայ նստի։*

(Նոյն էջ 236)։

208

*Պարոնեան փառասիրութեան համար կ'ըսէ.*

*Փառասիրութիւնը այնպիսի ախտ հիւանդութիւն մ'է, որուն ենթակայ եղողին հաճոյք կը պատճառէ և վնասն ուրիշներուն կու տայ. ո՜վ կ'ուզէ հաճոյքէ զրկուիլ։*

(Նոյն էջ 237).

209

*Փառասիրութեան իբրեւ օրինակ կարելի է յիշել Պարոնեանի Քրիստոստուր Ղազարոսեանի առթիւ գրած այս խրատական տողերը.*

*Մարդերն աւելի մեծ անուն վաստկելու մոլութիւնն ունին քան թէ մեծ մարդ ըլլալու առաքինութիւնն։*

(Նոյն էջ 275).

210

*Երբ նենգաւորներով պաշարուած ամբոխին մէջն ենք, մեր ամենէն կարեւոր զէնքն է խորամանկութիւնը։ Կը գրէ առակախօսն Մխիթար Գոշ.*

*Ողոքէր ոձն զխրխնջիւն՝ ասելով. Արի եկ արտաքս, զի մեծարեալ պատուեցից զքեզ բազմազան օրինակօք։ Եւ նա ասէ. Չիք ոք զքեզ տեսեալ պատուասէր առ այլս, զիա՞րդ և ինձ լինիցիս. ոչ է այլ, այլ զի արեան իմոյ ցանկաս։ Եւ ոչ ել արտաքս, զերծեալ ի նմանէ զգուշութեամբ։*

*Պարզ է գաղափարը. սակայն լաւ է լսել նաեւ առակախօսին մեկնութիւնը. կը մեկնէ. «Զարթուցանէ զմեզ առակս, ամենեւին ոչ հաւատալ պատիր բանից այլազգեաց, յայտնի ունելով զմիտս յանցելոց խաբէութեանց առ այլս. զի արեան և ստացուածոց ցանկան քրիստոնէից, և ոչ եթէ պատուեն»։*

(Մխիթ. Գոշ. Առակք 67–8).

211

*Ամէն ազգ ունի իր վիթխարի ուժի տէր դիւցազններ, որոնց մասին այնպիսի քաջագործութիւններ կը պատմեն որ անկարելի է հաւատալ։ Մենք ալ ունինք սոսկալիօրէն ուժեղ նահապետ մը՝ Տորքը, որ ըղընգով քարեր կը քերէ, կը տաշէ։ Ըստ Խորենացւոյն։ «Եւ յեզերս ծովուն Պոնտոսի դի-*

*պեալ նաւաց Թշնամեաց, դիմէ ի վերայ. և ի խաղալն նոցա ի խոյն իբրև ասպարէզս ութ, և սա ոչ ժամանեաց նոցա. առնու, ասեն, վէմս բլրաձևս, և ձգէ զկնի. և ի սաստիկ պատառմանէ ջուրցն ընկղմին նաւք ոչ սակաւք, և ամբարձումն ալեացն, որ ի պատառմանէ ջուրցն, վարէ զմնացեալ նաւսն բազում մղոնս». ու Խորենացին ինքնին կը բացագանչէ.*

*Ո՞հ, կարի է առասպելս, այլ և առասպելաց առասպել։*

(Խորեն. Պատմութ. էջ 171).

212

*Ծաղրածութեան լաւ օրինակ մը ունինք Խորենացիէն։ Շապուհ որսորդութեան ատեն կրակով կը շրջապատի. չէ՞ որ ինքը կրակապաշտ է, կրակը իրեն աստուածը. կը դողայ Շապուհ. այն ատեն Ատոմ մոկացի զինքը կը ծաղրէ.*

*Աստուածորդիդ Պարսից, ահա հայր քո և աստուած, ընդդէ՞ր զանգիտես։*

(Նոյն էջ 503).

213

Խաբեբայ խոստումին՝ առակ մ'ունի Վարդան, զոր կրնան ընդօրինակել և հաստատուն մտքի մէջ պահել անոնք որ խաբեբայներուն խոստումներուն, կանխաւ կը փութան երախտագէտ և շնորհակալ ըլլալ։ Աղուէսին ձեռքէն երբ խորամանկ կաքաւը կը թռչի, աղուէսը շուարած կը բացագանչէ.

Ով անմիտս և յիմարս, յառաջն պարտ էր ինձ ուտել և ապայ գոհանալ զաստուծոյ։

Այս է պատմութիւնը. «Աղուէս էառ կաքաւ մի ի բերանն և կամէր ուտել զնա. և ասէ կաքաւն. աւրհնեալ է աստուած, որ կոչեաց զիս յիւր արքայութիւն. զի զերծանիմ ի յայս չարեացս. և ապայ դու, աղւէս, գոհացիր զԱստուծոյ և ապայ ուտես զիս. քեզ մեծ վարձ է. և աղուէսն կկզեցաւ և հայեցեալ յերկինս և բացեալ զբերանն՝ ասէ. գոհանամ զքէն, աստուած բարի, որ պատրաստեցեր ինձ սեղան բարութեան. և կաքաւն զերծաւ ի բերանոյն և թռաւ. և ասէ աղվէսն. ով անմիտս և յիմարս, յառաջն պարտ էր ինձ ուտել և ապայ գոհանալ զԱս-

*տուծոյ։ — Ցուցանէ առակս, թէ զխոստացեալ իրքն մի համարիր քեզ և մի շնորհակալ մարդոյ լինիս, մինչեւ առնուս և թէ ջուր տան քեզ, ի նոյն ժամու ի գոգդ առ զինքն զի շատք առեն և ոչ տան զառացեալն իւրեանց, ով եղբայր, և սուտ լինին»։*

(Փողով. Առակ. Վարդ. էջ 58–9).

214

*Առակախօսները խորամանկ խաբեբայներէն զմարդ միշտ կը զգուշացընեն։ Գրուած է. «Ագռաւը խորամանկ մարդու օրինակ է՝ որ միայն իր օգուտը կը նայի. ուստի զգոյշ կալու է անանկ խաբեբայէն, և խօսքին հաւատալու չէ. վասն զի ուզածն ընելէն ետեւ ծաղր կ'ընէ։ Դիոգինէս փիլիսոփային հարցուցին թէ ո՞ր գազանը շատ վնասակար է. պատասխան տուաւ թէ վայրենիներէն՝ օձը, իսկ ընտանիներէն՝ խաբեբայ մարդը»։*

Երբ խորամանկ ոք քեզ խորհրդակցի,
Մի՛ կարծեր թէ նա սակս քո խորհի.
Զամենայն օգուտ յինքեան վերբերեալ,
Կերակրի նովաւ ծաղրէ զկնի։

(Եզովբոս առակք էջ 102).

215

Փառասիրութեան համար շատ սովորական դարձած է աղուէս և ագռաւի սա ծանօթ առակը. ագռաւը բերանն ունէր կտոր մը պանիր. աղուէսն հոտն որ առաւ վազեց ագռաւին առջին և ըսաւ զարմանալով. Ի՜նչ բան է որ կը տեսնեմ. ես լսեր եմ որ քու փետուրներդ սեւ են. ո՜հ տէր Աստուած, աս Ի՜նչպէս ճերմակ են, որ կարապ թռչունը քեզմէ ճերմակ չի կրնար ըլլալ: Կ'աղաչեմ պարոն ագռաւ, ինծի ներէ որ քիչ մը վրադ նայիմ ուզածիս պէս. ճշմարիտ կ'ըսեմ որ դու ինծի անանկ աղուոր կ'երեւնաս որ չեմ գիտեր ինչպէս զմայլիմ քու վրադ: Նորէն կ'ըսէր աւելի անուշ խօսքերով. Ես լաւ գիտեմ որ քու յատուկ կատարելութիւնդ միայն գեղեցկութիւնը չէ. այլ բնութիւնը որ կամեցաւ զքեզ ուրիշ թռչուններէն աւելի կատարեալ ընել, առանց կարծեաց քեզի տուաւ. Հրեշտակային ձայն մը, երդում կ'ընեմ որ այնպէս գեղեցիկ երգիչ չկայ մեր անտառներուն մէջ, ինչպէս դուն և՛ սոխակը: Այս խօսքերուն բոլորովին զուարճացաւ ագռաւը,

և ուզեց իմացընել թէ աղուէսին ըսածը սուտ չէր. բացաւ բերանը որ երգէ, բանալովը ձգեց բերնէն պանիրը: Իսկ աղուէսը յափըշտակեց զայն, ու շուտ մը երթալու հրաման ուզեց ագռաւէն, և ծաղր ընելով ըսաւ. Շատ համ առի պանիրիդ անուշութենէն, քան թէ ձայնիդ գեղեցկութենէն:

Փառասէր մարդն երբոր գովուի,
Շուտով հաւտայ ամէն խօսքի:
(Նոյն էջ 103).

216

Փառասիրական ախտով վարակուած խաբեբայներուն լաւ օրինակ է Եզովբոսի սա առակը. Սիրամարգը փետուր փոխելու ատենին իր փետուրները կը թափէ. իսկ կաչաղակը զանոնք կը ժողվէ ու վրան կառնէ կը զարդարուի. և զինքը գեղեցկութեամբ շատ վեր կը դնէ քան զսիրամարգը, մինչև հպարտութեամբ փճանալով կը թողու իր ընկերներն ու կու գայ սիրամարգներուն ընկեր կ'ըլլայ: Բայց սա հպարտութիւնը շուտ մը խայտառակ եղաւ. վասն զի սիրամարգ-

ները ճանչցան անոր կեղծաւորութիւնն ու սուտ փետուրները վրայէն փետտեցին, և շատ քցըցելով վռնտեցին իրենց ընկերութենէն ։ Իսկ կաչաղակը փետտած և ծեծը կերած՝ չկրցաւ մէկալ կաչաղակներէն ալ ցաւակցութեան արժանի ըլլալ, որովհետեւ զանոնք անարգեր էր առաջուց ։

Կը յորդորէ Թարգմանիչը.

Նայէ ըլլաս սիրուն խելքով,
Չես աղուորնար օտար զարդով ։
(Նոյն էջ 129).

217

Տխմար փառասիրութեան իբր պատիժ առակախօսն Եզովբոս կը յիշատակէ գորտը, որ ուզելով կովու պէս գիրուկ երեւնալ, կ'ուռի այն աստիճան, որ վերջապէս կը ճաթի ։ Առակախօսին Թարգմանիչը կը յորդորէ.

Մեծ ըլլալու շատ մի՛ ջանար,
Թէ չէ պատռիս ու չես մեծնար ։
(Նոյն էջ 136).

218

Վաղեմի նախապաշարումները յանգէտս

*տաւլմեանց պատճառներ եղան, գոյութիւն ունեցաւ առասպելը որ մեր ազգագրական պատմուածքներու մէջ կը տիրէ առատօրէն. գրականութեան մէջ ատոնց մասին կարող ենք յիշել ոսկեդարեան հեղինակ Եզնկայ սա խօսքը.*

*Այլ ամենայն՝ առասպելք են, և պառաւանց դրդջիւնք:*

(Եզնիկ էջ 99).

219

*Կեղծաւոր կրօնաւորներու համար կը գրէ Եզնիկ.*

Կեղծաւոր կրօնաւոր՝ պատրուակ է սատանայի. ընդ իւրեաւ ունելով զսատանայ՝ զզազրութիւն անդամոցն ծածկէ, և նկարակերպ պատրուակօք պատրէ զտեսողսն: Սոքա են գայլք զառնազգեստք՝ որոց սպառնացաւ Քրիստոս ընդ անհաւատսն դասել:

(Նոյն էջ 301).

220

*Կեղծ բարեպաշտներու երգիծական պատկերն է սա բացատրութիւնը.*

*Զմիս անասնոյ ոչ ուտեն, և զեղբայրն անյագաբար ուտեն. գինի ոչ ըմպեն, և զհոգին արեամբ չաղախեն. զամուսնացեալսն ատեն, և պիղծ խորհրդով հանապազ պոռնկին. զգեստ յուրին զգենուն, և ագահութեամբ այրին. յայնպիսեացն արժան է փախչել. և ոչ հաղորդութիւն ունել։*

(Նոյն էջ 302)·

221

*Ծաղրածութիւնը միշտ վտանգաւոր է. Խիկար իմաստունը կը գրէ.*

*Որդեակ թէ տեսանես զթշնամին քո գլորեալ մի ծաղր առնել զնա զի թէ կանգնի նայ չար հատուցանէ քեզ և լինի հանապազ չարկամ։*

(Խիկար էջ 16)·

222

*Խաբէութիւնը միշտ ծածուկ չի մնար, այլ յայտնութեամբ կը խայտառակուի. Խիկար կը գրէ.*

*Բան սուտ և ստախօսութիւնք որպէս արճիճ ծանր է բայց յետ սակաւ աւուրց ի վերայ ջրին գայ որպէս տերեւ ծառի։*

(Նոյն էջ 41)··

223

*Ըստ պարագային կը յարգուի թէ՛ միամըտութիւնը և թէ խորամանկութիւնը ։ Մխիթար Աբբան եկեղեցւոյ համար՝ աւետարանի ծանօթ սպասուէրին համեմատ, սա յայտնի գաւանանքը կ՚ընէ.*

Եկեղեցին Քրիստոսի՝ միամիտ է յիրս հոգեւորս, խորագէտ ընդդէմ աշխարհի. այսպէս պարտ է և մեզ գնալ։

(Հատք եջ 45).

224

*Մէկ մէկու խաբելն սովորական է, բայց ամենէն մեծ խաբեբան աշխարհս է. Սայեաթ Նօվան լաւ ըսած է, թէ.*

Իմաստուններըն չը տեսան էս աշխարիս հուտն ու համքըն։

(Սայեթ Նօվայ եջ 143).

225

*Նկարագրի տէր անձը իր գաղափարներուն մէջ երբեբալ չերեւար, թէ ոչ կեղծաւոր խաբեբայ մը կը համարուի, ասոնց համար կը գործածուի առակս.*

*Հա՛ վըր նալին (պայտ),*
*Հա՛ վըր պիպուին (գամ) կը զարնէ։*

**Մեկնութիւնն է. «Անհաստատամտու-թեամբ, երբեմն յօգուտ և երբեմն ի վնաս խօսիլ խնդրի մը վրայ»։**

(Ազգագր. Հանդէս գիրք VII, VIII. 1901 էջ 470).

226

*Նկարագրի տէր անձը կ'ըմբռնէ իր խօս-քերուն ու խոստումին արժէքը, և կ'ուզէ յարգել իր բերանը. խոստմնազանցին պէտք է յիշել սա առակը.*

*Նա (ոչ) քար վըր քարին,*
*նա իսան (մարդ) վըր ուր (իւր)*
*ղրանին (խոստում, ուխտ)։*

**Մեկնութիւնն է. «Ցոյց տալ մէկի իւր խոստման վրայ հաստատուն չմնալը։**

(Նոյն էջ 474).

227

**Ծաղրը խոհականներու համար միշտ ե-պերելի է, մանաւանդ երբ ծաղրուածը ժը-**

շուառ է ու տառապեալ. այլ պարագային Հայաստանցիք կ'ըսեն.

Չար մոռնայ,
չարչին (մանրավաճառ) քոռնայ:
(Նոյն էջ 478).

228

Թշուառութիւնը երբեմն այնքան անտանելի չըլլար, որքան կծու ծաղրածութիւնը. վշտահար ծաղրուածը կը յիշէ հետագայ առածը:

Չը ղըմամ (հոգ չ'ընել) գուռ (քարէ աւազան), վըր գլխուս.
Կը ղմամ պտպտիչն ի յէտուս *:
(Նոյն էջ 478).

* Այս առակի մեկնութեան համար «Ազգագրական հանդէս» կը հրատարակէ հետեւեալ աւանդութիւնը. «Տըրդատ Թագաւորը Ս. Գրիգոր Լուսաւորչի հետ մեհեանները կը քանդէր ու եկեղեցի կը կանգնէր անոնց տեղ: Ուր որ չկար մեհեան, լեռնէն քարեր կը բերէր իր կառքով, ու կը շինէր: Մէ անգամ վանքի մը Չբի քարէ մեծ գուռը (աւազան) գլուխն անցուցած, և միակտուր քարէ մեծ սիւներ անութներ դրած, լեռնէն կուգար, իսկ Ս. Գրիգոր ետեւէն կ'աղօթէր, կը սաղմո-

## 229

*Ամէն պարագայի մէջ կեղծաւորութիւնը պախարակելի է։ Աւետարանն իսկ այպանեց փարիսեցիութիւնը․ և աւետարանական ծանօթ օրինակին վրայ, հայկական սա առակը կազմուած է․ Ալաշկերտցիք կ՚ըսեն․*

> Տէվէն կը ղըլու (կուլ տալ),
> մժիկ (մժղուկ) կը թքու։

*Մեկնութիւնն է․ «Մեծ քանակութեամբ ու գաղանի մեծ չարութիւնները գործել, իսկ յայտնապէս և փոքր բաներու մէջ ինքզինքը անկաշառ և արդար ցոյց տալ։*

(Նոյն էջ 482)․

●

*սէր, ոյժ և կարողութիւն կը խնդրէր բռնաւորուած արքային։ Տրդատ ձանձրանալով Սրբոյն միօրինակ սաղմոսերգութենէ․ կ՚ըսէ վերջապէս․ «Զը հոգամ, գուռ, վըր գլխուս, կը հոգամ պտուտիչն (մըմունջ) ի յետեւուս»։ Ս․ Գրիգոր այն ատեն կը լռէ, ու Տրդատը քարերու ծանրութեան տակը մինչեւ ծնկները գետինը կ՚իջնէ, ու անպատճառ, ամբողջապէս ջրի մէջ խորասուզուելու նման, գետինը իջնելով պիտի մեռնէր, եթէ ուշքի չգար և չխնդրէր Սուրբէն․ «պտուտա՛, պտուտա՛, պտուտիկդ ի հոգիս»։*

230

*Ջէնքը և սուր լեզուն չէ որ զմարդ կորիճ կ'ընէ, այլ հոգեկան զօրութիւնը, ուսկից զըրկուածներուն Ալաշկերտցիք կ'ուղղեն առակս.*

Քաղքի կորճներ (քաջեր)
կապած խանջլներ (դանակ)։

*Մեկնութիւնն է. «Հեգնել սպառազինուած մարդերու անկարողութիւնը, թուլութիւնը»։*

(Նոյն էջ 484).

231

*Կանանց շատախօսութիւնը այսպէս կը հեգնէ առակը.*

Երկու էշ քարվան մա՛ (կարաւան մ'է)
երկու կնիկ տիվան մա՛ (ժողով)։

*Այսինքն. «Երկու կին ժողովի մը չափ կը խօսին»։*

(Նոյն էջ 490).

# ԳԼՈՒԽ Ե.

## ԺԼԱՏՈՒԹ. ՄԱՏՆՈՒԹԻՒՆ. ԽԱՐԴԱԽՈՒԹ. ԱԽՏ. ԼՐԲՈՒԹԻՒՆ. ԲԱՄԲԱՍԱՆՔ. ԽԱՌՆՈՒԻԼ ՈՒՐԻՇԻ ԳՈՐԾԻՆ

232

*Մատնութիւնը Հայաստանի հիմը աւերեց, կործանեց ազգութիւնը, պատռեց ու այրեց հայկական դրօշը, որ միշտ կարմիր մնացած էր նահատակներու սուրբ արիւնով։ Հայը շատ անգամ փոխանակ քաջասիրտ նահատակներուն, հետեւած է Վասակի շաւղին.*

*Վասակայ թիւը շատցաւ դարէդար,*
*Ջուտ ազնիւ հոգիք չերեւցան իսպառ.*
(Պատկանեան. Բնաստեղծ. էջ 103).

233

*Հայութիւնը ըստ Պատկանեանի՝ շատ ժլատ է. և մի առ մի կը յիշէ որ հարուստհայը նորաձեւութեան, մոլութեան, վայելքի, փառասիրութեան դրամ չի խնայեր, ՙիսկ*

*կարեւոր ողորմութեան համար՝ լալկան աղ-քատ կը ձեւանայ.*

*« Հայէն Հային շահ չի կայ »*
*Այս խօսքը հին առած է.*
*Հայ կուրծքի մէջ սիրտ չի կայ,*
*Եթէ կայ էլ՝ սառած է »։*

(Նոյն էջ 214).

234

*Հանճարեղ երգիծանքով՝ Պարոնեան «Ճէմէրա» վերնագրով մէկ քերթուածին մէջ, ցոյց կուտայ հայ ժլատին սխուր հոգին. կ'երգէ.*

*Մեր հալխին մէջը հէչ չիկայ ատէթ*
*Ազգիս ֆայտային տալ հազար մանէթ։*

*Հարուստ հայը՝ նոյն իսկ մէկ փարան, մէկ կոպէկը կը խնայէ, զայն կուռք ըրած է.*

*Տասը քապիկն ալ մէկ կըրվընիք է,*
*Ան ալ պօշ պանի թապլեւը մեխք է,*
*Աղքատին տալէս՝ պուֆէթ կը տանիմ,*
*Բէֆով մէկ կաւաթ չայ անուշ կանիմ։*

(Նոյն էջ 320-1).

235

*Սխալներու մէջ յամառիլը, է հոգեկան*

*ախտ մը դժուարաբուժելի. Ռաֆֆի լաւ կ'ըսէ.*

*Հին սխալը մի անգամով ուղղել շատ դժուարին է. Նա կատարվել է հարիւրաւոր ընթացքում, և այսքան տարիներ պէտք են նրան ուղղելու համար։*

(Խենթը էջ 68).

236

*Շատ անգամ խարդախութիւնը աննկարագիր խմբագիրներու զէնքն է, որով ըստ պարագային զուրիշը կրնան՝ թէ՛ պաշտպանել և թէ՛ վիրաւորել ու սպաննել. Պարոնեանը՝ Փափազեանը շողոքորթող խմբագիրներու համար կ'ըսէ.*

*Զինքը սուրբերու քով դասող թերթերն չուանով մը սատանաներու բնակարանը իջեցուցին զինքը։*

(Ազգային ջոջեր էջ 201).

237

*Հ. Ալիշան համառօտ դիւցազներգութեամբ յիշատակած է մատնութիւնը. Վասակի յուսահատ և ողբերգու վիճակը նկարագրե-*

*լոյլ, Ղեւոնդ երէցի բերնին մէջ կրակոտ բառեր կը դնէ։ Քաղցրաբարբառ Նահապետը, մատնութեան առջեւ բռնկած է, երկնային վրէժխնդրութեամբ լի, կ՚անիծէ մատնիչները և մատնութիւնը։ Մեր պատմական մատնիչն Վասակ, ողբի և անէծքի նիւթ կ՚ըլլայ.*

Աւաղելի՜դ Վասակ յաւէրժ արտասուաց,
Չը տեսանե՞ս զի շնորհք ի քէն վերացան.
Վարսք քո մոխիր կաթեն ըզպիղծըդ բազնաց,
Թագք զոր Տըրդատ եդաւ՝ չանթիս քեզ տեղան.
(«Հայրունեաց» էջ 135).

238

*Մատնիչը կը սոսկայ իր զազիր դաւադրութենէն.*

Լուր մատնըչիդ՝ տուն Հայոց, լուր և սարսեաց.
Ես եմ ես այն յաւազանին սուրբ ուխտէն,
Ու ի Գրիգորի կամաւ հերձեալ ի հօտէն.
Ես ճապաղեացն եմ պարտական Արտազուն.
(Նոյն էջ 143).

239

*Արդարութիւնը մատնիչին գլխին յաւիտենական անէծք կը տեղայ.*

Անլոյծ վըճիռ, զոր կընքէ շունչ իմ տըխուր,

*Ասպընջականք իմ դըժոխք՝ դուք վըկայք էք,*
*Ո՞վ Վասակայ կորիւնք, յաւէ՜րժ ձեզ անէծք...*

(Նոյն էջ 143).

## 240

*Աւելի խորոխտ է Մերուժանի ճաղատ գըլ-խին վրայ տարափեալ հրաշէկ այս անէծքը.*

*Կաց Արծրունիդ դու կաց ամբարիշտ*
*Հայոց թագին հետախընդիր,*
*Ցարժան վարձուցդ հի՞մ խուսափես միշտ.*
*Ահա եհաս քեզ թագադիր.*
*Ըմբաստ ասպետ զայս քեզ ի տրիտուր*
*Կունտ զագաթանդ ածէ շամփուր.*
*Արբանեակ հըրոյ, պըսակեա՛ց հըրով*
*Ե՛րթ բազմեաց ի գահ յԱրմհանի ժողով.*
*Այս թագ, այդ գահ մատնըչաց՝*
*Որք դըժեն Հայ հայրենեաց։*

(Նոյն էջ 102).

## 241

*Մատնութիւնը մահ կամ վախճան ունի՞.*

*Մինչեւ ցե՞րբ անբարեսէրք, ցե՞րբ յամառեալք զանգիտութեան,*
*Հայրենական փառաց մատնիչք, օտարոտւոյն պաշտիչք անարգք.*

(Նոյն էջ 160).

*Եւ Հ. Ալիշան անուշակ աղերսով կը պաղատի, որ Հայոց մանկտիք չուրանան իրենց տունը.*

*Ձեզ կ'ասեմ մանկունք սիրունք նազելիք,*
*Որոց է բնական Հայոց աշխարհիկ*
*Մ'ուրանայք զերկիրդ ու զազգըդ սիրուն*
*Ծառն՝ արմատով ծառ, տունն հիմամբն է տուն.*
(«Հայրուշեի» էջ 270).

242

*Հ. Ալիշան յիմար կ'անուանէ հայրենի փառաց դաւաճիրները.*

*Նա կոյր է յիմար. զհոտն անմահութեան*
*Ընդ սուտ գոյն փոխէ տըխմարն ու տըղայն.*
*Յիմար է յիմար որ զպարծանքն հարանց*
*Երթայ վաճառէ ընդ օտար ազանց.*
*Աշխարհիս օրէնք՝ որ ծնողք չըփոխուին,*
*Հայրենափոխք չեն, ուրացողք լինին.*
*Ծառն՝ արմատովն ծառ, ծառովն է արմատ.*
*Դալար մանկտիք, ձեր տակն է Արարատ.*
(«Հայրուշեի» էջ 274).

243

*Սեւ սիրտ մատնիչներուն է այս հար-ցերը կրակոտ,*

Ո՞վ այն մատնիչք, ո՞վ այն դահիճք, ո՞վ զազան՝
Որ առ այլազգ, առ բըռնաւոր ձայն կու տան.
Այդ ի՞նչ քարէ սիրտ, ի՞նչ սառէ չըրթունք էր
Որ հայրենեաց հողուն կարդաց սեւ օրեր։—
Անէ՛ծք տուէք այն բերնին
Անէծք գըրչին ու ձեռքին
Որ զՀայաստան մատնեցին...
(Նոյն էջ 335).

## 244

Խարդախութեան ի պատիժ առակ մը կը պատմէ առակախօսը. «Էշ էր՝ և առիւծ թուէր, քանզի արկեալ էր զիւրեաւ առիւծենի, և ի հեռաստանէ ի տեսլենէն մատուցանէր երկիւղ, և ապա զամենայն նախիրս կովուց և զամենայն հօտս ի փախուստ դարձուցանէր։ Եւ իբրեւ հողմն սաստիկ հնչեաց և մերկացաւ զնա յառիւծենւոյն, և յանդիմանեցան պատրանքն, ամենեքեան ոտս արձակեցին ի նա. ոմանք ջնէին և ոմանք հարկանէին, վասն զի

Էշ էր, և առիւծ կեղծաւորէր բազմաց»

Եւ առակախօսը բանաւոր մարդուն դառնալով կ'ըսէ. «Եւ դու, ով մտացի, կարօտ ես

*տանջանաց. վասն զի յոյժ անհրահանգ ես, և զխրատելոյն կեղծաւորիս ձեւ»։*

(«Ողոմպիանոս Առակք» էջ 176)

245

*Գարշելի բարքերը մարդկանց վրայ հաստատուելով, հոգեկան ապականած ախտ կ՚ըլլան, ասոնք անփոփոխելի են, Խորենացին կը գրէ.*

*Ընձու անկարելի է զխայտուցսն փոխել, և եթովպացւոյ զթխութիւն, նոյնպէս մարդոյ ամպարշտի զբարսն։*

(Խոր. Պատմ. էջ 353).

246

*Նախարարները կը ստիպեն զՍահակ հայրապետ, որ Պարսից տէրութեան մատնէ մեր Արտաշիր թագաւորը, վասն զի սա անառակ էր, և կնամոլ։ Ս. Սահակ Արտաշիրի այդ բարոյական թերութիւնները ազգասիրական ոգւով կ՚ուզէ ծածկել. կը պատասխանէ.*

*Ինձ քաւ լիցի մատնել գայլոց զիմ մոլորեալ ոչխար։*

Ինչո՞ւ. «Քանզի զրոշմեալ է աւազանաւն, թէպէտ և անառակ է. պոռնիկ է, այլ քրիստոնեայ է. գիճացեալ է մարմնով, այլ ոչ անհաւատ հոգւով. զեղխ է վարուք, այլ ոչ կրակապաշտ, տկար է ի կանայս, այլ ոչ ծառայէ տարերց։» Եւ կրակապաշտ Պարսկին չի մաաներ մեր անբարոյական քրիստոնեայ հայ թագաւորը։

(Խոր. Պատմ. էջ 528–9).

247

Վատ բարքերը հոգեկան ախտեր են. բարեսիրտ միամտութեամբ պէտք չէ խաբուիլ նենգաւոր խաբեբայներէն ։ Վարդան առակախօսն կը գրէ. «Կատուն էած փիլօն և եղեւ կարքօ(աւ)որ և ասաց ընդ մկներն. թէ աստուած զդարձն կամի զմեղօ(աւ)որին; այլ չմնաց թէ այլ արունն հեղեմք. քանզի իմացայ, որ դատաստան կայ յիմ շլնքիս, ասացին մկներ. թէ զբոլոր կարքն Անտոնի տեսնումք ի վերայ քո, ոչ հաւատամք քեզ. գնաց եղեւ հիւանդ, յղարկեաց առ մկներն, թէ վասն աստուծոյ եկայք. որ խոստովա-

նիմ զիմ անցանքս յառաջ, որ չմեռանիմ. ասացին մկնեյն, թէ չ՚հաւատամք քո կեղծաւորութեանդ. և գնաց ի խաչք ճանապարհի մի և եղեւ մեռեալ. գան մկներն և ասեն. ով նենգաւոր, թէ պարկ լինիս լի ալրով, ոչ հաւատամք քեզ. թէ քո բարքդ յիսակ է ի հետ մեզ: — Իմացաւ զկատուի աղերսանքն թագաւոր մի. ողորմեցօ նմայ և էառ արար զկատուն իւրն լուսնայկալ և կերակրէր զնայ իւր ապարանացն. աւր մի յանկարծակի մուկն մի ելօ ի ծայկն. եւես կատուն և դողաց և չ՚կարաց համբերել, ձգեաց զլուսնայկալն ի վերայ թագաւորին. և երէց ամենայն երեսն. ասէ թագաւորն. անհաւատ, քաղցած չեմ պահել զքեզ. զայդք՞ր գործեցեր. ասէ կատուն.

Ով յիմար թագաւոր, թէ ոսկով կամ մարգարտով կազմես զիս, զիմ բարքս չկամիմ թողուլ:

Կը մեկնէ առակախօսն. «Ցուցանէ առակս. տես զայն մարդն, որ իւր բանքն չէ անարատ, այլ նենգաւոր և չար, թէպէտ և սիրելի լինի քեզ, դու մի հաւատալ նմայ»:...

(Ժողովածոյ Վարդ. Առակ էջ 65–6).

248

Նոյն առակախօսը մի և նոյն նիւթին վրայ կը յիշատակէ.

Զկատուն լուսայկալ զրին թագաւորին ի վերայ ոսկէկար բարձին։ Նոյնպէս և արարին զաքիսն. և տային նոցա ի կերակրոյ թագաւորին և ասացին նոցա, թէ թողէք զբարս ձեր. և նոքա ասեն.

Թէ ոսկով և մարգարտով ծածկէք զմեզ. մեք ոչ կարեմք թողուլ զսովորական բարս մեր.

«Զի կատուին բնութիւն է. որ թէ տեսանէ զմուկն, նայ պողայ և ոչ կարէ համբերել, նոյնպէս և աքիսն ոչ կարէ թողուլ զքթմըթնալն» կը մեկնէ. «Ցուցանէ առակս, թէ զոր փորձեալ ես, որ չէ բարքն անարատ, այլ նենգաւոր և չար է, թէպէտ և կեղծաւորի բարի գործել. բայց դու մի հաւատար նմայ, զի ոչ կարէ թողուլ զսովորական բարս. զի խիստ բարի մարդ պիտի և ապայ սանձահարել կարէ զկամս և զբարս իւր»։

(Ժողով. Առակ. Վարդ. էջ 64-5).

249

*Ժլատները շահագործութեան մէջ շատ անգամ անյագ տենչով վարակուած ըլլալով, վերջ ի վերջոյ կը զրկուին ամէն շահերէ. գեղեցիկ օրինակ մը ունինք Վարդան առակախօսէն.*

*Այր մի աղքատ ունէր բուզում որդիս և պատրաստեաց նմայ աստուած հաւ մի հնդկի, որ յամէն աւր ածէր նմայ ձու մի ոսկի, որ յաւուրն բաւական լինէր նոցա յամենայն պէտս. և նայ ագահացաւ և ասէ.*

*Զենեցից զհաւն և առից զոսկի ի շտեմարանս նորա և փարթամեցայց.*

*Իբրև եզեն զհաւն, գտաւ ի փորն նորա իբրև զայլ հաւու և զրկեցաւ ի փոքր շահէն։*

*Կը մեկնէ Վարդան. «Ցուցանէ առակս, թէ որ ցանկայ անպէտ մեծութեան, անհնման ագահութեան ձեռն արկանէ, նայ և զոր ունի, զայն կորուսանէ»։*

(Թորոս. Առակ. Վարդանայ 117).

250

*Ազգը մատնելու ահռելի գործին Վարդան սա պարզ առակը կը պատմէ.*

*«Որսորդ մի էառ կաքաւ մի և կամէր զենուլ զնայ, և սուէր կաքաւն լալով. մի զենուր զիս. և ես բախեցից քեզ բազում կաքաւս և ածից ի կամս քո, և սուէ որսորդն. այժմ մեռցիս ի ձեռաց իմոց. զի զսիրելիս քո և զազգս մատնես ի մահ»: Կը մեկնէ. ցուցանէ առակս.*

*Թէ կազմես որոգայթ ազգի քո և սիրելոյ. և ոչ հաճի աստուած ի գործս քո և քեզ պատրաստէ նոյն:*

(Ժողով. Առակ. Վարդանայ 117–8).

251

*Ժլատութեան մասին կը գրէ առակախօսն Վարդան.*

*Սարդն ի բնութենէն հինէ զվարմն. զի որս առնէ. և երբեմն այն չափ հինէ, որ տկարանայ և մեռանի. և վաստակն իւր մին ճանճ է, որ բռնէ:*

*Կը մեկնէ. «Նոյնպէս ագահքն կորուսանեն զհոգիս իւրեանց ժողովելով զինչս աշխարհիս»:*

(Նոյն էջ 261).

252

*Ժլատներուն լաւ խրատ է Եզովբոսի սա հանրածանօթ առակը. «Շուն մը լողալով գետէն կ'անցնէր՝ կտոր մը միս բերանը. ջրին մէջ կը տեսնէ մըսին շուքը՝ կարծէ թէ ուրիշ որս է, շուտ մը կը ձգէ բերնին միսն ու կը վազէ շքին ետևէն, որ իրեն մէկ պատուական կերակուր մը կ'երևնար. բայց ինչպէս յուսահատեցաւ երբոր տեսաւ թէ իր ագահութիւնը փուճ ելաւ։ Վայ ինծի կը կանչէր ցաւելով իր ձգած մսին վրայ, ես չգիտցայ պահել զայն որ ունէի, ահա ունեցածս ալ կորսնցուցի»։*

Ագահն որչափ շատին ցանկայ,
Այնչափ աղքատ խեղճ կը մնայ։

(Եզովբոս առակք 92).

253

*Եզովբոսի առակներուն թարգմանիչը, առակախօսի «Աղուէս և Գայլ» առակէն յօրդորակ մը կը հանէ մատնիչներուն.*

Ով որ մատնիչ կ'ըլլայ եղբօր
Իրեն գլխուն կուգայ սև օր։

(Նոյն էջ 140).

## 254

*Սովորութիւնը եթէ վատ է, այն անփոփոխելի անդարմանելի կը մնայ. Խիկար կը գրէ սա զուարճալի առակը.*

*Ջգալուն ձագն յուսումն տվին և ասէին թէ ասայ. ա. բ. գ. և նայ ասէր, այծ, բոյծ, գառն։*

(Խիկար էջ 144).

## 255

*Հայրենեաց, հայ կրօնքի ուխտադրուժ Վասակայ համար մեր պատմիչք շատ անէծքներ կարդացեր են։ Երբ ուրացողն պերճազգեստ կը մտնէ Պարսից արքունիքը, հոն խմբուած հայ հաւատացեալք կ'այպանեն զայն.*

*Ո՛վ անմիտ վաճառական, զաննման և զանանց պատիւդ ետուր, և զանցաւորդ գնեցեր։*

(Եղիշէ էջ 241).

## 256

*Տիրանենց, խարդախ մատնութեան պատմական առակ կը մնայ Հայոց աւ Մոնամախոս սա խօսքը.*

*Անի քաղաքն և ամենայն արեւելք քեզ եղեւ։*

*Մատնութեան դէպքը այսպէս կը պատմէ Ուռհայեցի Մատթէոս. «Սկսաւ անօրէնն Սարգիս (վեստ) յառաջ բերել զչար նենգութիւնն իւր, և ազդ արարեալ Մոնոմախին և ասէր, եթէ, «Կոչեա առ քեզ զԳագիկ ի Կոստանդնուպօլիս՝ սիրոյ պատճառանօք, և յայնժամ խաբէութեամբ առցես ի նմանէ զքաղաքն Անի»։ Մոնոմախ այդ լուրին վրայ չափազանց ուրախացած, կը հրաւիրէ զԳագիկ, սա դարաններէ կասկածելով, յանձն չառներ երթալ. «Յայնժամ նենգաւորն Սարգիս և այլ յազատացն յառաջ մատեան, որք բանատուքն (մատնիչք, ծածուկ լուր տուողք) էին առ Մոնոմախին, և քաջալերէին զնա գնալ, և ասէին. «Ո՛վ Թագաւոր, վասն է՞ր երկնչիս և ոչ գնաս, վասն այսպիսի երդմանցս և միջնորդութեամբ սրբոյ Աւետարանին և սրբոյ Նշանին Քրիստոսի. և յաղագս մեր մի՛ երկնչիր. վասն զի ահա անձինք մեր մեռանին ի վերայ քո»։ Եւ կացուցին միջնորդս զՏէր Պետրոս (Գետադարձ), և արարին երդումնս սաստիկս յաւուր յայնմիկ. և բերին զսուրբ խորհուրդն*

մարմնոյ և արեան Որդւոյն Աստուծոյ, և թանային զգրիչն յարիւն կենարարին և աքարին երդման գիր հայրապետն և ամենայն իշխանքն Հայոց»։ Կը հաւատայ Գագիկ, կ'երթայ Մոնոմախին. և ահա շուտով կը հասնի մատնիչներու թուղթը առ Մոնոմախ թէ. «Անի քաղաքն և ամենայն արեւելք. քեզ եղեւ»։ Այն ատեն կը գրէ պատմիչը. «Կոչեաց թագաւորն զԳագիկ, և զբանալիս տանն և զքաղաքին և զթուղթն առաջի նորա եդեալ, և ասէր ցԳագիկ, եթէ, զԱնի և զամենայն արեւելք ետուն ի ձեռս իմ»։ Եւ ծանեաւ Գագիկ զնենգութեան գործքն, յոգւոց եհան արտասուօք և ասէր. «Դատ արասցէ ընդ իս և ընդ նենգաւորսն իմ» և Մոնոմախին կ'ըսէ. «Տէր և թագաւորն ես եմ տանն Հայոց, և ահա ես ոչ տաց զՀայք ի ձեռս քո. վասն զի դու զիս խաբէութեամբ ածեր ի Կոստանդինուպօլիս»։ Սակայն անհնարին էր դիմադրելն. կը կատարուի յափշտակութիւնը.—մատնութիւնը կը յաղթանակէ։

(Մատթ. Ուռհայեցի ԿԵ).

257

*Բարեկամին կեղծն ալ կայ, խարդախն ալ։ Հայաստանցիք կ'ըսեն.*

*Առաջէւանց հայլի.*
*Ցէտէւանց ածըլի։*

*Ըստ մեկնութեան. «Արտաքուստ բարե֊կամ ձեւանալ, և գաղտնի դաւաճանել»։* (Ազգր. Հանդէս Գիրք VII, VIII 1901, էջ 458).

258

*Երբ մանկական տարիքէն սկսեալ վատ բնաւորութիւնը արմատացած է, անբուժելի է այդ ախտը։ Ալաշկերտցիք կ'ըսեն.*

*Կաթի հետ մտած,*
*Հոգու հետ ելած։*

*Մեկնութիւնն է. «Մանկութենէն ստա֊ցուած գէշ բնաւորութիւնը մահուան հետ միայն կը վերջանայ»։*

(Նոյն էջ 468).

259

*Ուրիշի գործերուն կամ խօսքերուն մէջ մտնող անձին համար, Հայաստանցիք ունին հետապայ պարզ առածը.*

մարմնոյ և արեան Որդւոյն Աստուծոյ, և թանային զգրիչն յարիւն կենարարին և աբարին երկման գիր Հայրապետն և ամենայն իշխանքն Հայոց»: Կը հաւատայ Գագիկ, կ'երթայ Մոնամախին. և ահա շուտով կը հասնի մատնիչներու թուղթը առ Մոնոմախ թէ. «Անի քաղաքն և ամենայն արեւելք. քեզ եղեւ»: Այն ատեն կը գրէ պատմիչը. «Կոչեաց թագաւորն զԳագիկ, և զբանալիս տանն և զքաղաքին և զթուղթն առաջի նորա եդեալ, և ասէր ցԳագիկ, եթէ, զԱնի և զամենայն արեւելք ետուն ի ձեռս իմ»: Եւ ծանեաւ Գագիկ զնենգութեան գործքն, յողւոց եհան արտասուօք և ասէր. «Դատ արասցէ ընդ իս և ընդ նենգաւորսն իմ» և Մոնոմախին կ'ըսէ. «Տէր և թագաւորն ես եմ տանն Հայոց, և ահա ես ոչ տաց զՀայս ի ձեռս քո. վասն զի դու զիս խաբէութեամբ ածեր ի Կոստանդինուպօլիս»: Սակայն անհնարին էր դիմադրելն. կը կատարուի յափշտակութիւնը.— մատնութիւնը կը յաղթանակէ:

(Մատթ. Ուռհայեցի ԿԵ).

257

Բարեկամին կեղծն ալ կայ, խարդախն ալ։ Հայաստանցիք կ'ըսեն.

Առաջէւանց հայլի.
Ցէտէւանց ածըլի։

Ըստ մեկնութեան. «Արտաքուստ բարեկամ ձեւանալ, և գաղտնի դաւաճանել»։
(Ազգր. Հանդէս Գիրք VII, VIII 1901, էջ 458).

258

Երբ մանկական տարիքէն սկսեալ մէկու բնաւորութիւնը արմատացած է, անբուժելի է այդ ախտը։ Ալաշկերտցիք կ'ըսեն.

Կաթի հետ մտած,
Հոգու հետ ելած։

Մեկնութիւնն է. «Մանկութենէն ստացուած գէշ բնաւորութիւնը մահուան հետ միայն կը վերջանայ»։

(Նոյն էջ 468).

259

Ուրիշի գործերուն կամ խօսքերուն մէջ մտնող անձին համար, Հայաստանցիք ունին հետագայ պարզ առածը.

Ոն (ով) եղնի պուկ (հարս)
Էնօ կէղնի պարպուկ (հարսնքոյր*)
(Նոյն էջ 476)․

## 260

Աւետարանական պատուէր է որ նախ մեր աչքի գերանը նկատողութեան առնենք և յետոյ ուրիշի աչքի շիւղը․ ասոր վրայ Ալաշկերտցիք ունին հետագայ առածը․

Ուր (իւր) աչքի գերան չ'տեսնայ․
Խըլղի (ուրիշի) աչքի խիւ (շիւղ) կը տեսնայ։
(Նոյն էջ 478)․

## 261

Հայաստանցիք բամբասողներուն յատուկ այս առակը ունին․

Պխտէր (պէտք էր), պիտաւոր էր (յարմար),
ամպ արևուն անուն դնէր (անուանարկել)։

* Ըստ «Ազգագրական հանդէս»ի, հարսնքոյր բառի մեկնութիւնն է․ «Քիւրտերու նոր պսակուած հարսերու ընկերանալու, և զայն փեսային քով առաջնորդելու համար՝ փեսայի տնէն կիներ (մէկ կամ երկուս) կ'երթան հարսանիքի հետ հարսին հօր տունը, որոնց պիարպուկ կ'ըսեն, (պիար = առաջ, պուկ = հարսին առաջնորդող, կամ հարսնաքոյր)»։

*Կը մեկնուի. «Երբ անարժան մը ուրիշի արժանիքը նուաստացնելու համար, առ նախանձու կը բամբասէ, թերութիւններ կը ստեղծէ, կ'անուանարկէ զայն»:*

(Նոյն էջ 480).

262

*Ուրիշի վէճին խառնուիլ ու պաշտպանել հակառակորդը, առանց շահ մ'ունենալու, այլ ախմար վլատութիւն է, որուն հայաս-տանցիք ունին հետագայ առակը.*

*Տարան տարա՜ն...*
*Բրտի չո՜ւն, քե՞ ի՞նչ տարան:*

*Ազգագրական նիւթեր հաւաքող Թերլեմը այսպէս կը մեկնէ այդ առակին իմաստը. «Գայլերը կը յարձակին ոչխարի հօտին վրայ, ու քանի մը հօտ կը փախցնեն: Լուրը գիւղը հասնելուն պէս, բոլոր շուներ գայլերու ետեւէն կ'իյնան, ու ոչխարները կը խլեն անոնցմէ: Շուները դեռ բաւական տեղ գայլերը հալածելէ յետոյ, կը յոգնին ու կը սկսին ետ դառնալ, միայն բրտաւին շունը, որու անէրօջ ոչխար չ'կար հօտին մէջ իսկ.*

*եռ չի դառնար, և այնքան կը հալածէ գայլերը, որ վերջիններս անկարող կ'ըլլան առաջ երթալ, կը կանգնին, և իրեցմէ մին սա դիտողութիւնը կ'ընէ բրուտին շանը. «Մեզ այդչափ հալածելուդ, յոգնեցնելուդ պատճառն ի՞նչ էր, բրուտի Շո՛ւն, տարա՛նք, տարա՛նք քեզ ի՞նչ տարանք»։*

(Նոյն էջ 482–3).

263

*Հայաստանցիք լիրբ մարդկանց կը յիշեցնեն.*

*Արսըզ մարդուն.*
*Ըմնօր (ամէն օր) գարուն։*

*Մեկնութիւնն է. «Ուրախութիւնը և տրտմութիւնը անզգայ և աներես մարդու վրայ միևնոյն ազդեցութիւնը կ'ընեն։ Լրջութիւն չ'ունենալ»։*

(Նոյն էջ 488).

264

*Ժլատ, անձնազուրկ հարուստին համար տակը բաց է.*

Վիր (որու) կայ լիք հորով հաց (ցորեն)
Ջուտայ կուշտ փորով հաց։

(Նոյն էջ 503).

265

Գինեմոլութիւնը, արբեցողութիւնը ախտերու ամենէն անմեղն է և սակայն ամենաքանդ և շատ անգամ հոգեքանդ։ Առակը կը պատուիրէ.

Դուն խմէ՛ երկու հատիկ,
Ուր դառնաս նռան հատիկ։
Մի՛ խմեր երեք հատիկ,
Ուր դպնիս պատէ պատիկ։

(Նոյն էջ 468).



# ԳԼՈՒԽ Զ.

## ԲԱՐԵԿԱՄՈՒԹ. ՄԻՈՒԹԻՒՆ. ԱՆՄԻԱԲԱՆՈՒԹԻՒՆ

266

*Անմիաբանութեան դժոխային կրակը կիզելով եղբայրական միութեան կապը, ամէն մատենագիր ողբացեր է անոր պատահարները ահռելի. և ասոր համար աստուածացուցած են միութեան, համերաշխութեան գեղանազ հոգին. միութեան գոռ քարոզիչն է Պատկանեան. կը փողահարէ, համերաշխ, մէկ հոգի, մէկ սիրտ միութիւն ազգային.*

Քրիստոնեայ ենք մենք և սերունդ Հայկի,—
Այսքան բաւ է։ Է՛լ լուսաւորչական,
Կամ պապադաւան և կամ լօթրանգի
Ազգը չի բաժնենք՝ ի սէր հայութեան։

(Պատկանեան. Բնատեղծ. 240).

267

*Րաֆֆի կը ցաւի հայկական անմիաբանութեան վրայ։ Քիւրդ բէկերը կու գան կը*

*մերկացընեն հայերը. բարեկամութիւն կը ձիւացընեն, ու հայ տանուտէրը, գիտնալով որ դիմադրութեամբ ահաւոր վնասներ կը ծագին, ինքն ալ բարեկամաբար կը թողու որ կողոպտուի. սակայն հարուածը մահացու է, հայը կը բողոքէ, բայց ի՞նչ կրնայ ընել, ուժ չունի. կ'լաէ.*

*Քուրդը մեղաւոր չէ: Եթէ մեր մէջ միութիւն լինէր, եթէ մեր մէջ սիրտ լինէր, քուրդը, յիմար և ծոյլ քուրդը ի՞նչ կարող էր անել:*

(Խենթը էջ 66).

268

*Մեր պաշտելի պատմիչները և յետոյ նաեւ ամէն ազգասէր հայրապետք, և աշխարհական մտաւոր առաջնորդներն և նոյն իսկ ժողովուրդը ինքնին, մի՛շտ ողբացած են մեր հասարակական մեծ թերութիւնը — անմիաբանութիւնը, սակայն անոր ներհակ կը պնդէ Հ. Ալիշան.*

*Հայք ոչ գտան թերի ի միաբանութենէ քան զայլ ազինս, և զի մանաւանդ յոյժ միաբանասէրք հանդիսացան քան զյոլովս ի բարենշան ազգաց:*

(Բազմավէպ 1843 էջ 318).

269

Հ. Ալիշան՝ բռնկած ազգասիրութեամբ, կը հարցընէ.

Ո՞վ է որ յանձն առնուցու անմիաբան զազգ իւր անուանել՝ և ոչ զանգիտեսցէ արատ մեծ դնել իմաստութեան իւրում, թող թէ ազգասիրութեան։

(Նոյն էջ 318).

270

Մեր ազգը միշտ լսած է համերաշխութեան, եղբայրութեան, միաբանութեան կանչողին յորդորներ։ Հ. Ալիշան որքան ոլ մեր ազգը միաբանասէր ընդունած է, և անոր համոզուած է ու համոզու՛ծ, սակայն ինքն ևս անհրաժեշտ կը դատէ հայկական միութիւն քարոզել։ Ռափայէլեան վարժարանի աւարտական սաներուն կ՚ուղղէ այս խօսքերը.

Այլ ես ազգասիրաց և ճշմարիտ ազգասիրաց ձայն տամ, ի բուռն առնուլ յառաջ քան զամենայն զմիշտ քարոզեալն և զմիշտ կարօտեալն զմիութիւն, միութիւն սրտի՝ ի ջանս լաւութեան, միութիւն խորհրդոյ՝ իյառաջացումն կենցաղօգուտ գործոց, միութիւն ձեռին ի հաստատուն գործառնութիւն, միութիւն հանգանակի ի սատար ազգախնամ գործոց։

(Բազմավէպ 1848 էջ 182).

271

Հ. Ալիշան միութեան համար հոեսոր կը պանայ, իր քնարով եւս միութիւն կը քարոզէ.

Օ՜ն, ձեռն ի ձեռն համակարծիս համասէր
Ջօդիմք եղբարքըս զուգակրօնք զուգարիւն,
Եւ համաչունչ ելցեն աղերսք ընդ եթեր։
(«Խոհնուճի» էջ 110).

272

Եւ կ'ողբայ ամիաբանութիւնը.

Դու զի՞ կաս զի՞ դանդաչես կաղակրկին տուն Թորգոմայ.

Ո՜հ, մինչեւ ցե՞րբ մինչեւ ցե՞րբ դուք զայ-
թակղութիւն եղբարք եղբարց.

Ցեռս ընդդէմ ի լուսապսակ ասպարիզացն օտիցէք,

Ցե՞րբ յինքնակապըս կաշկանդեալք ոչ խըզի-
ցէք ըզպիղծ շղթայս.

(«ՀԱՑՐՈՒՆԻ» էջ 160).

273

Ալազ Մասիս հայութեան կ'ուղղէ սա խօսքերը։ Հայք,

Երբ յիշեն զԱստուած, զիրար այլ յիշեն,
Միաբանութիւն ու սէր մէջ քաշեն

Թողուն խարդախանքն ու զանձնասէր շահ
Ըլնին իրարու օգնող ու վստահ...

(«Հայրուննի» էջ 294)․

274

*Փոքրն Մասիս թէև յոռետես, սակայն երբ տեսնէ հայութիւնը միաբան, եղբայր եղբօր ձեռնտու, բարեացակամ.*

Կու հաւատամ երբ սիրտք գան ի բարին
Ի մեզ այլ դառնայ մեր պարծանքըն հին։
Ա՛լ ե՞րբ տի ըլնի որ վառին սըրտեր,
Ե՞րբ տի տեսնունք զայն երջանիկ օրեր։

(Նոյն էջ 295)․

275

*Ցնշատակելի են Աւարայրի քաջերուն մէկ սիրտ, միաբան կռուիլը ու նահատակուիլը, այդ միաբանութիւնը Նահապետ իր այս տողերով անմահացուցած է.*

Միաբան ընկերք ի հայրենի տան
Մէկտեղ կեալ մեռնիլ իրարու երդուան.
Աոին զկապն հիւսած սիրուհեաց ընծայն՝
Զիրար կապեցին մընալ անբաժան.

(Նոյն էջ 328–9)․

276

*Բարեկամութիւնը կը պահանջէ մէկ սիրտ մէկ ոգի, համերաշխութիւն, անկեղծութեան կապանքով զօդուած իրարու. հակառակ պարագային կարող ենք յիշել Առակախօս Մխիթար Գօշի սա օրինակը.*

*Նռնենի և թզենի առ միմեանս սէր ունել կամեցան, և քաղցրութեամբն հաւասարեցան, բայց ընդ թթուութեան նռնենւոյն տաղտկացաւ թզենի, և լուծաւ դաշինքն։*

*Մ. Գոշ այսպէս կը մեկնէ. «Իմաստս տայ այս առակ, նախ փորձել սիրելեաց զմիմեանց բարս, զի ամենայնիւ նման միմեանց իցեն. ապա թէ ոչ՝ գիւրաւ լուծանելի իցէ սէր»։*

(«Մխիթար Գոշ» եջ 12).

277

*Առակախօսը Միաբանական համերաշխութեան համար ես ունի այս գեղեցիկ օրինակը.*

*Խորդք տողին ի գնալն իւրեանց, և զմիմեանս յառաջատեն, և միմեանց տեղի տան՝ ի կռիչսն.*

և ոչ նման ոմանց առանձնաբար շրջին. այլ պահ միմեանց ունին։

Որով կը խրատէ առակախօսը, «Սոյնպէս և մեզ պարտ է միաբանութեամբ և զգոյշ կեալ, և պատիւ միմեանց դնել, և պահել ի չարէ զանձն ընկերին»։

(Նոյն էջ 119).

278

Բարեկամ ունենալ, և մտերիմ գտնելը դիւրին է, բայց ճանչնալը շատ դժուար. լաւ չի ճանչցած բարեկամին հետ շա՛տ զգուշաւոր պէտք ենք ըլլալ։ Առակները մեզի կրնան խրատ ըլլալ. լսենք առակախօս Վարդանին. «Աղուէսն և աւձն եղեն եղբարք և գնացին առ գետ մի [առին գետին մի.] և ասաց աւձն ընդ աղուէսն. ո՛վ եղբայր, դու անցանես զջուրն. և ես զի՞նչ անցանեմ. ասաց աղուէսն. եկ փաթթուաց ի վիզս. և յորժամ ի խորն գետին հասին, աւձն զերեսն ի յետ տարաւ և կամէր խայթել զաղուէսն, և աղուէսն յիմացաւ զայն և ասաց ընդ աւձն.

*Ո՞վ եղբար զերեսդ ի յետ ի՞նչ տարար յերեսէս.*

*Ասէ աւձն, կամիմ խայթել զքեզ, որ մեռանիս, ասէ աղուէսն. բեր համբուրեմ զերեսդ. որ սիրոյ փափաքս անցանի հանց, որ խիստ սէր ունիմ ընդ քեզ. և կամեցաւ և եբեր զերեսն. և աղուէսն էառ զլիզն ի բերայն և այլ ճար ոչ կայր խայթելոյ. և յորժամ անցաւ աղուէսն յանկուս, սատակեցաւ աւձն, և ձգեաց զայն ի դետին և թաթովն ողորդեաց զաւձն և ասէ եղար ուղորդ, եղբար։*

*Կը մեկնէ. «Ցուցանէ առակս, թէ ըզմարդն փորձել պիտի, որ նենգաւոր չէ լինի աւձու պէս և ապայ սիրելութիւն դնել ի հետն. զի սատանայ և նենգաւոր մարդն և չարն և անհաւատն և աներկիւղն մեկ է, որ խաբեն»։*

(Ժողով. Առակ. Վարդ 130).

279

*Միաբան համերաշխ գործունէութեան և կենակցութեան համար պակաս չեն օրինակ-*

ներ. Եզովբոս կը յիշէ հօր մը սա պարզ և գեղեցիկ օրինակը. «Տան մը ծերը շատ որդիք ունէր. երբոր հասաւ վերջին ծերութեան և տեսաւ թէ մօտ է վախճանը, կանչեց քովը բոլոր որդիքը. նայեցաւ որ ամէնքը քովն են ժողված, բերել տուաւ մանտր ցուպեր, և բոլորը մէկտեղ կապեց ու տուաւ մեծ որդւոյն և հրամեց որ կոտրէ։ Ան ալ յանձն առաւ. բայց որչափ որ ջանաց՝ և շատ անգամ ուժ տուաւ որ կոտրէ՝ չկրցաւ կոտրել։ Ետքը տուաւ զայն երկրորդին. ան ալ երրորդին. ոչ մէկը ոչ մէկալը կրցան կոտրել ան կապոցը։ Ասանկ որ եղաւ՝ ծերն առաւ ան կապը քակեց ու զատեց, ամէն մէկին մէյմէկ հատ տուաւ, և հրամեց որ երկրորդ անգամ փորձեն ու կոտրեն. բայց առանց դժուարութեան մէկէն բոլորը կոտրեցին։ Ան ատենը դարձաւ ծերը ըսաւ. Որդեակ երբոր ես աս աշխարհէս ելլեմ՝ ասանկ պիտի ըլլայ ձեզի, որչափ որ դուք ամէնքնիդ միաբան. մնաք՝ այնպէս զօրաւոր կ'ըլլաք որ մէկը չի կրնար զձեզ շարժել. բայց անմիաբան եղածնուդ

պէս՝ անանկ պիտի տկարանաք որ պզտի փորձանք մը ձեզ կրնայ կործանել»։ Այս առակէն Թարգմանիչը կը հետեւցընէ.

Քանց բերդ ամուր զինչ հաստատուն
Բայց միաբան եղբայրութիւն։

Եւ կը գրէ դարձեալ. «Հայոց Թագաւորութեանը մէջ քանի որ միաբանութիւն կար՝ այնչափ մեծցաւ որ ահագին երկիրներ տիրեց. բայց անմիաբանութեամբ քիչ ժամանակի մէջ ոչնչացաւ»։

(Եզովբոսի առակ էջ 199).

280

Բարեկամի հարազատութիւնը, անկեղծութիւնը վտանգի ատեն լաւ կը հասկցուի. «Եզովբոս կը գրէ. «Մէկ մեծատուն առատասիրտ ըլլալով՝ միշտ իր բարեկամներուն հարկինք կ՚ընէր, որոնք գիշեր ցորեկ քովէն չէին պակսեր և մեծ պատուով կը բարեւէին զինքը։ Օր մը կամեցաւ փորձել աս բարեկամները, թէ արդեօք պէտք եղած ատենը կը հասնին օգնութեան իրեն հարկաւորութեանը. ուստի ձեւացուց թէ հակառակու-

*թիւն ունի թշնամիներուն հետ որ զինքը պիտի սպաննեն, աղաչեց բարեկամներուն որ աս նեղութեան մէջ իրեն օգնեն։ Տեսաւ որ երկու բարեկամէն ի զատ մէկը չեկաւ. ան ալ մինակ աս երկուքը բարեկամ պահեց իրեն, մէկալնոնք բոլոր վռնտեց»։ Թարգմանիչը կը գրէ հետեւեալ քերթողական յորդորը.*

*Քեզ բարեկամ լիցի անգին,*
*Որ ցանգ կցորդ կայ քոյդ անձին։*

(Նոյն էջ 506).

281

*Միութեան և անմիաբանութեան շատ բընական և սիրուն օրինակ մըն է Եզնկայ սա իմաստասիրական բացատրութիւնը թէ.*

*Զի բազում անգամ զոր բարին կարծիցեն, միայն առանձինն՝ առանց ընկերին խառնութեան՝ վնասակար լինի, յամենեցունց առ հասարակ վկայեալ։ Արեգակն թէ բարի է, և առանց օդոյ խառնուածոյ այրիչ և ցամաքեցուցիչ է։*

(Եզնիկ էջ 10).

282

*Նոյն հեղինակը կ'ըսէ դարձեալ.*

*Զօրեքին բնութիւնքն, ուստի աշխարհս կազմեալ և կայ, առանձինն՝ ապականիչք են միմեանց, և խառնեալ ընդ ընկերին՝ օգտակարք և շահաւորք։*

(Նոյն էջ 11).

283

*Երբ կ'ուզուի գործը առաջ մղել, պէտք է ուժերը միանան, պէտք է մէկ նպատակով և ուղղութեամբ, միաբան գործել ու շարժել։ Կ'ըսէ Եզնիկ.*

*Ամենայն կառք ի համազգեաց երիվարաց լծին։*

(Նոյն էջ 17).

284

*Անմիաբանութեամբ, իրարու թշնամի կ'ըլլանք և զիրար սպանող. կը գրէ Եզնիկ.*

*Երկու հակառակք իրերաց՝ միմեանց ծախիչք են, որպէս խաւարի լոյս, և ջեր սառամանեաց։*

(Նոյն էջ 64).

285

***Բարեկամ մը ճանչնալու և անոր հաւատարմութեան վստահելու համար, Խիկար կը պատուիրէ.***

*Յայտնեայ զփոքր խորհուրդ բարեկամին քո և յետ աւուրց գրգռէ զնա և անարգէ. եթէ զայն խորհուրդն ոչ յայտնէ, ապա զմեծ խորհուրդն յայտնես նմայ և հաւատարիմ սիրելի պահես զնա։*

(Խիկար էջ 41).

286

***Բարեկամի համար կ'ըսէ դարձեալ.***

*Լաւ է բարեկամ մաւտաւոր քան եղբայր հեռաւոր։*

(Նոյն էջ 48).

287

***Բայց կը զգուշացընէ.***

*Մի յաճախեր ի տուն բարեկամի քո, զուցէ ատիցէ զքեզ։*

(Նոյն էջ 52).

288

***Պէշիկթաշլեան որ անմահացուց համերաշխութեան, համազգային միութեան ոգին. կ'երգէ լի յուսով, որ.***

*Երբ ալեւոր Մայր Հայաստան.*
*Տեսնէ զորդիս իր քովէ քով,*
*Սրտին ... խորունկ վէրքըն դաժան*
*Պաղցի արտասուաց բուժին ցօղով.*
*Ընդ աստեղօք ի՞նչ կայ սիրուն*
*Քան զանձկալի Եղբայր անուն։*

(Պէշիկթշ. Մատենագրութ. էջ 76).

289

*Բարեկամին անկեղծութեան եթէ վստահ ենք, անոր առջեւ կրնանք անպաղտնապահ ճեալ. լաւ կը գրէ Աքոլեան. « Բարեկամիցը ի՞նչ պէտք է թաքցրած ». ու երբ անվըստահ իր բարեկամին, կարծելով որ իր կարդացած գրութիւնը պիտի ծաղրելի ըլլայ, և ընդհակառակն բարեկամը հիանալով կը գնահատէ զայն, Աքոլեան իր այդ անվըստահութիւնը կը դատապարտէ ինքն իր լեզուով.*

*Բայց փիսը ես էի, որ նրա ազնուական հոգին դեռ լաւ չէի ճանաչել։*

(Վէրք Հայաստանի էջ 9).

## 290

*Արոլխան ազգային մեծ զանգուածին միու֊թիւն կը քարոզէ.*

*Դուք, դուք իրար պահեցէք, ինչպէս ձեր նախ֊նիքը, դուք իրար թասիբ քաշեցէք, ձեր նախ֊նիքը միտք բերէք, ձեր հողն ու ազգը պաշտե֊ցէք։*

(Նոյն էջ 79).

## 291

*Վիպասանը այս սրտաշարժ պայմանը կը դնէ.*

*Հողումս մարմինս քրքրվի, երկնքումը հոգիս տանջվի, երբ իմանամ՝ թէ ձեր սէրը պակսել ա։*

*Եթէ այսպէս է, Արոլխան յաւիտենակա֊նօրէն կը տանջուի, ծայրայեղ է իր ազգա֊սիրութիւնը և միաբանասիրութիւնը համե֊րաշխ։*

(Նոյն էջ 79).

## 292

*Եթէ մենք միայն գործենք, աշխա֊տենք և իրարու օգնենք, կը դրէ Աղասիի գուսանը.*

*Մենք որ իրար թասիբ քաշենք, իրար քօմակ անենք, իրար պայծառացնենք, շէնացնենք, ծովն էլ տեղիցը վեր կենայ, մեզ տակով չի՛ կարող անիլ, ի՛նչ թէ Օսմանցին, եա Պարսիկքը։*

(Նոյն էջ 86).

293

*Եւ,*

*Որ ջանք անենք, մէկզմէկու սիրենք, մեր լեզուն, մեր եկեղեցին էնպէս ղայիմ բռնենք, ինչպէս մեր երջանիկ նախնիքը, հաւատացի՛ր ինձ, Աստուած էլ կսիրի մեզ, մարդ էլ։*

(Նոյն էջ 86).

294

*Մէկ սիրտ, միաբան գործունէութեամբ, կարելի է ապրիլ և ապրեցընել ազգութիւնը. օտարին վրայ յոյս ունենալը երազ է. Խորէն Եպիսկոպոս Գալֆայեան կը գրէ.*

*Գիտեմ, ձեր բեռը ծանր է, ո՛վ հայեր,*
*Բայց կը կարծէ՞ք զայն վերցնեն օտարներ,*
*Թողէք զօտար, տուէ՛ք եղբայր եղբօր թեւ,*
*Եւ զօրացէք անդեղեւ։*

(Սոխակ Հայաստանի էջ 223).

295

*Երբ գործի մը մէջ կը տեսնուի հասարակութեան միաբան ոգին և համոզումը․ պէտք է համոզուիլ, որ*

*Աշխարհակոյտ ամբոխին կամացըն չիք կալ հակառակ։*

(Հայկ. դիւցազն էջ 136).

296

*Սակայն երբ չի կայ միութիւն, այլ ներքին կռիւ, կռուարարը ամպարիշտ ապականած տարր մըն, հատանելի և արտաքսելի.*

*Ամպարիշտ է և վիրագ ոչինչ ընդհատ ի Նեբրովթայ*

*Որ զառտընին պատերազմ արծարծանէ ժանտ ի յեղբարս։*

(Նոյն էջ 141).

297

*Հայաստանցիք միութեան համար սա առակը կը գործածեն.*

*Գեղ կանի՝ (կանգնի)*
*Գերան կը կոտրի։*

*Մեկնութիւնն է. «Միացեալ ուժերու առջեւ ամէն դժուարութիւններ կը վերնան»։*

(Ազգ. Հանդէս գիրք VII. VIII, 1901 էջ 459).

298

*Միաբան գործունէութիւնը յաջողութեան կը հասցնէ ամէն դժուարութիւն։ Աշխատասանքը կը քանդէ ամէն խոչընդոտ ու արգելք. աշխատանքին հետ միանալով համերաշխ աջակցութիւնը, յաջողութիւնը ապահով կ'ըլլայ։ Հայաստանցին ըսած է.*

*Մէկ մէկով, երկուսն Աստծով իրեքն ու չորս ուրենց զոռով։*

*Ըստ « Ազգր. Հանդէսի » մեկնութիւնն է. « Շատ աշխատողներու աջողութիւնը համերաշխութիւնէն է, իսկ քիչերունը՝ բաղդէն կախուած է »։*

(Նոյն էջ 473).

299

*Բարեկամին նուէրը որքան ալ փոքր, չնչին ըլլայ, սակայն գին չունի՝ անկեղծ ու սրտանց ըլլալուն համար. ասակը կ'ըսէ.*

*Շատն ուժից ա (ուժէն)*
*Քիչն սիրուց ա (սէրէն)։*

*Ըստ « Ազգագրական հանդէս »ի, կը մեկնուի. « Բարեկամական անկեղծ ու բուռն*

*սէրէն առաջ եկած թեթեւագին նուէրը աւելի թանկ արժէ, քան մեծարժէք նուէրը, որ սիրով եղած չէ »։*

(Նոյն էջ 475)․

300

*Բարեկամութեան մասին ըսուած է.*

*Ջուր կ'երթայ.*
*աւազ կը մնայ։*

*Մ՚եկնութիւնն է «Լաւ է տեւականը (բարեկամ), քան ժամանակաւորը »։*

(Նոյն էջ 480)․



# ԳԼՈՒԽ Է.

## ԳԵՂԵՑԿՈՒԹԻՒՆ, ՏԳԵՂՈՒԹԻՒՆ, ՀԱՐՍՏՈՒԹԻՒՆ, ՀԱՅ ՖԷՄԻՆԻԶՄ.

301

*Ֆէմինիզմի մասին Րաֆֆի քարոզ կը կարդայ, Հայ կանանց վրայ շատ անոյշ լեզուով կը խօսի.*

*Այժմ նա մի անարատ, չապականված և անմշակ նիւթ է մեր ձեռքում, որից կարելի է հրաշալի բան շինել։*

(Խենթը էջ 221).

302

*Բայց դեռ մեր մէջ ֆէմինիզմը շատ անըրջական գաղափար մըն է. տակաւին կը մտածեն թէ.*

*Աղջիկը ի՞նչ կանէ կարդալը, աղջիկը խօ տէրտէր կամ վարդապետ չի դառնալու։*

(Նոյն էջ 212.

303

*Ու Հայաստանցի Տէր Հայրը կը քարոզէ.*

Աղջիկներին կարդացնելը վտանգաւոր է, որովհետեւ նրանք չատ բան կը սովորեն և սատանայ կը դառնան։

(Նոյն էջ 215)․

304

*Հայ կնոջական պատիւը պատկառելի է․*

Հայ կինը ամեն նեղութեան համբերող է, ամեն վիրաւորանքի առջեւ լուռ է, բայց երբ դիպչում են նրա պատուին, այն ժամանակ նա անհամբեր է դառնում։

(Նոյն էջ 318)․

304

*Իսկ անոր դաստիարակութեան, կրթութեան համար Արծրունին այսպէս կը հառաչէ․*

Խեղճ Հայոց կանայք, կարծում են թէ ձեզ հարկաւոր չէ կրթութիւնը․ ձեր հայրերը չեն տուել ձեզ կրթութիւն և չեն էլ տալիս մինչեւ հիմի։

(Գ․ Արծրունւոյ Աշխատութիւնները հատ․ I. էջ 12)․

305

*Նոյն հեղինակը կանանց գլխաւոր զարգացումին ի նպաստ գաղափարներ յայտնելով, կ'ըսէ․*

*Մինչեւ որ կինը չմասնակցի կրթութեան գործին, – ժողովուրդը տգէտ կ'մնայ և յառաջադիմութեան գործը յաջողելու չէ։*

(Նոյն էջ 227).

306

*Տգեղներու, և տգեղութեան, հրաշալի հեգնական կարելի է գործածել Ծերենցի (Յ. Շիշմանեան) նկարագիրը, զոր Պարոնեան հետագայ հոյակապ տողերով շատ լաւ կատարած է. կ'ըսէ թէ Շիշմանեան,*

*Այնպիսի դէմք մը ունի, որ կարծես փռնգտալ կուզէ և չկրնար։*

(Ազգային Ջոջեր էջ 130).

307

*Չենք կրնար ուրանալ մեր ազգային տգեղութիւնները. սակայն ուշ կը գտնենք Հ. Ալիշանին սա տուած յորջորին.*

*Որ ինչ ի մեզ տգեղն է ճշմարիտ գեղով յարդարեսցուք։*

(Բազմ. 1845 էջ 334).

308

Անխելք գեղեցկութեան համար Եզովբոսէն ծանօթ է սա առակը. որ մը գայլը կը մանէ արձան շինողին խանութը, և կը տեսնէ հին կիսարձան մը, շատ գեղեցիկ շինած. առջի բերանը կը զարմանայ անոր աղուորութեանը վրայ. բայց երբոր կը տեսնէ ու կը հասկընայ թէ քարէ շինած անըզգայ գլուխ մըն է և բան չիմանար. Ո՜ ինչ գեղեցիկ գլուխ է, կ'ըսէ, բայց մեղք որ խելք չունի։

Թարգմանիչն ասկէ կը կազմէ սա առակն.

Ի՞նչ շահ եթէ դէմքն է աղուոր,
Գլուխն անխելք պարապ կլոր։
(Եզովբոս առակք էջ 128).

309

Պատմիչներ, քնարերգուներ, և վիպասաններ յափշտակուած կը նկարագրեն վաղեմի Յունաց օրիորդներու, եւ կանանց գեղեցկութիւնը պերճատեսիլ նազելի. սակայն Հայաստան քան այդ չքնաղ հելլէնուհիները աննման գեղեցիկն ասպնջականեց, գեղով

*հիասքանչ Հռիփսիմէն, որուն համար Դիոկ-ղետիանոս կայսրը կը գրէ առ մեր Տրդատ թագաւոր թէ*

*Ոչ երբէք գտաւ նման նմա ի մէջ Յունաց աշխարհիս։*

*Ահաւասիկ գեղեցկութեան համար բաղդատական օրինակ մը, զոր իբրեւ առակ կարող ենք գործածել։*

(Ագաթանգեղոս ԺԴ).

310

*Պէշիկթաշլեան եւս ֆէմինիզմի պաշտպան է. հայ իգական սեռէն՝ վառ յոյսերով քաջագործութիւններ կը սպասէ. մխիթարուած կ'երգէ.*

Դաշտին նուագք՝ ողբերգու
Որբէ արցունքն Հայաստան,
Զի յոյս զուարթ օրերու
Աղջկունք Հայոց իրեն տան.
Ով կոյսք իրեն մօտեցէք
Ու թագն իր գլուխը դրէք։

(Պէշիկթշ. Մատենագրութիւնք էջ 78).

*Այդպիսի Հայկուհիներ կ'երազէ պատերազմի դաշտին մէջ.*

Այդ կոյսն աղւոր ոսկէ կու գայ
Թռուցեալ զուարթ լերանց վըրան
– Պատերազմէն նա կու դառնայ,
Հերաց վըրայ դափնիք շողան։

(Նոյն էջ 108).

311

*Հայ կոյսերուն բնատուր՝ միայն գեղեցկութիւնն չէ, այլ և արիական քաջութիւնը. Բագրատունին Հ. Արսէն շատ լաւ կը բամբռահարէ.*

Եւ տեսցես, զի Թորգոմայ չեն գեղեցիկ միայն դստերք,
Այլ և արիք և մըխեալք ի հուր վըշտաց սարեանց մարտի։

(Հայկ. դիւցազն էջ 426).

312

*Ժողովրդական բանաստեղծութեան մէջ գեղեցկին գեղը պարզ ու անկեղծօրէն երգուած է. փեսայի վրան հարսնեւորք կ'երգեն.*

Հա՛յ իմ հա՛յ աննըման աղւոր։

*Աղւոր, քիզ ո՞ր մարն է բերեր,*
*Ան թուխ աչեր մարն է բերեր։*
(Համով-Հոտով էջ 293).

313

*Գեղեցկին համար ամէն բան կեանք է և հիացում, գեղեցիկը, աղւորը գիշեր չունի.*

*Գեշին տէրը արիւ չունի.*
*Աղւորին գիշերն է արեւ։*
(Նոյն էջ 294).

314

*Հարստութիւն կայ քրտինքով և հարըստութիւն բաղխով. յետինս երբ մուխի պէս ցնդի, չամպոտեր զրկեալին հոգին։ Ալաշկերտցիք ըսած են.*

*Քամու (քամիի) բերած*
*քամու տարած։*

*Մեկնութիւնն է. «Առանց աշխատութեան և յոգնութեան ձեռք բերուած հարստութեան վատնումը ցաւ չի պատճառեր»։*
(Ազգր. Հանդէս Գիրք VII VIII էջ 484).

315

*Որքան որ հարուստ է մարդս, այնքան աժգոհ. առակ է եղած.*

*Հարուստ չ՚թօղայ*
*որ աղքատն իլայ (լալ)։*

*Մեկնութիւնն է. «Հարուստները աւելի գժգոհ են իրենց ապրուստի վրայ, քան աղքատները»։*

(Նոյն էջ 495)․



# ԳԼՈՒԽ Ը.

## ԲԱՐԵՐԱՐՈՒԹԻՒՆ, ԱՋԱԿՑՈՒԹԻՒՆ, ՎԱՍՏԱԿ, ԱՐԴԻՒՆՔ, ՊԱՐԳԵՒ, ԱՂՔԱՏՈՒԹԻՒՆ.

316

*Պատկանեան Եւրոպայի ճակտին կը զարնէ Հայաստանի այն օգնութիւնը, որով Ասիական վայրենութեան առջեւը առաւ, չի թողուց որ վայրենի ազգեր խուժէին Եւրոպա. սակայն կը ցաւի բանաստեղծը, որ Եւրոպան այդ աջակցութիւնը չի վարձատրեր, հիմա որ Հայը կը տառապի և օգնութեան կը կարօտի.*

*Եւրոպ, մոռացա՞ր, երբ քու քաջերը*
*Անապատի մէջ մընացին քաղցած.*
*Ի՞նչ պիտի օգնէին նոցա զէնքերը,*
*Թէ որ Հայք նոցա չը տային կուշտ հաց։*

(Պատկ. Ոտանաւորներ էջ 148).

317

*Թէ Հայը անձնուրաց, աջակցի իր ազգին փրկութեան, Հօրեզոնը շուտով կը շո-*

ղայ․ այսպէս համոզուած, կ՚երգէ բանաստեղծը

Լոկ այն, որ կու տայ խումի ու թըղթի,
Հա՛յկ, ձեզ կը հասցնէր ազգային բաղդի …
Աստուած վըկայ որ՝ մենք կը յաղթէինք,
Թէ մէկ անձնուրաց մարդ ունենայինք։
(Նոյն էջ 149)․

318

Պատկանեան բարբրար իզմիրեանցի յիշատակին նուիրած չորս տող քերթուածին մէջ, կը յիշատակէ անջնջելի ճշմարտութիւն մը․

Կուգայ օր՝ երկաթ, քար կ՚անհետանան,
Միայն բարի գործք յաւիտեան կը մնան։
(Նոյն էջ 210)․

319

Սովորական առած մըն է որ կը գործածուի այն պարգեւատուներու համար, որոնք փոքրիկ նուէր մը կ՚ընեն ու մեծը կը պահանջեն․

Մի ձու է տալիս, բայց փոխարէնը մի ձի է ստանում։

(Խենթը Րաֆֆիի էջ 68)․

*Աղաբէկեանն ալ իր Կռունկին մէջ այս առածը գործածած է, մեզի Մխիթարեանցս դէմ բանակռիւներ մղած ատեն։*

320

*Մեր ազգային կարեւոր գործերը կեանք ունեցեր են բարերարներու ձեռնտուութեամբ, և քանի որ հասարակութիւնը աղքատ է, բնականաբար ազգերնիս միշտ բարերարներու կարօտն կը զգայ, թէեւ ճիշտ է, ինչ որ կ'ըսէ Արծրունի, թէ.*

*Բարերարութիւն սպասելը նշանակում է մուրալ։*

(Գ. Արծրունու Աշխատութիւնները Հ. I. էջ 169)։

321

*Մի և նոյն հեղինակը կը գրէ.*

*Եւ եթէ մենք ինչ և իցէ հիմնարկութիւններ ունենք, միայն բարերարութիւններին ենք պարտական, և ոչ թէ ժողովրդի ինքնաօգնութեանը հասարակական գործերում։*

(Նոյն էջ 222).

Աղջիկներին կարդացնելը վտանգաւոր է, որովհետեւ նրանք շատ բան կը սովորեն և սատանայ կը դառնան։

Նոյն էջ 215).

304

Հայ կնոջական պատիւը պատկառելի է.

Հայ կինը ամեն նեղութեան համբերող է, ամեն վիրաւորանքի առջեւ լուռ է, բայց երբ դիպչում են նրա պատուին, այն ժամանակ նա անհամբեր է դառնում։

Նոյն էջ 318).

304

Իսկ անոր պատախարակուելուն, կրթուելուն համար Արծրունին այսպէս կը հառաչէ.

Խեղճ Հայոց կանայք, կարծում են թէ ձեզ հարկաւոր չէ կրթութիւնը. ձեր հայրերը չեն տուել ձեզ կրթութիւն և չեն էլ տալիս մինչեւ հիմի։

(Գ. Արծրունու Աշխատութիւնները հատ. I. էջ 12).

305

Նոյն հեղինակը կանանց գիտնական զարգացումին ի նպաստ գաղափարներ յայտնելով, կ'ըսէ.

*Մինչեւ որ կինը չմասնակցի կրթութեան գործին, — ժողովուրդը տգէտ կ'մնայ և յառաջադիմութեան գործը յաջողելու չէ։*

(Նոյն էջ 227).

306

*Տգեղներու, և տգեղութեան, հրաշալի հեգնական կարելի է գործածել Ծերենցի (Յ. Շիշմանեան) նկարագիրը, զոր Պարոնեան հետագայ հոյակապ տողերով շատ լաւ կատարած է. կ'ըսէ թէ Շիշմանեան,*

*Այնպիսի դէմք մը ունի, որ կարծես փոնգտալ կուզէ և չկրնար։*

(Ազգային Ջոջեր էջ 130).

307

*Չենք կրնար ուրանալ մեր ազգային տը-գեղութիւնները. սակայն ուշ կը դնենք Հ. Ալիշանին սա տուած յորդորին.*

*Որ ինչ ի մեզ տգեղն է ճշմարիտ գեղով յարդարեսցուք։*

Բազմ. 1815 էջ 334).

308

Անխելք գեղեցկութեան համար Եզովբոսէն ծանօթ է սա առակը. օր մը գայլը կը մտնէ արձան շինողին խանութը, և կը տեսնէ հոն կիսարձան մը, շատ գեղեցիկ շինած. առջի բերանը կը զարմանայ անոր աղուորութեանը վրայ. բայց երբոր կը տեսնէ ու կը հասկընայ թէ քարէ շինած անըզգայ գլուխ մըն է և բան չիմանար. Ո՜հ ինչ գեղեցիկ գլուխ է, կ'ըսէ, բայց մեղք որ խելք չունի։

Թարգմանիչն ասկէ կը կազմէ սա առակն.

Ի՞նչ շահ եթէ դէմքն է աղուոր,
Գլուխն անխելք պարապ կլոր։
(Եզովբոս առակք էջ 123).

309

Պատմիչներ, քնարերգուներ, և վիպասաններ յափշտակուած կը նկարագրեն վաղեմի Յունաց օրիորդներու, եւ կանանց գեղեցկութիւնը պերճատեսիլ նազելի. սակայն Հայաստան քան այլ չքնաղ հելլէնուհիները աննման գեղեցիկն ասպնջականեց, գեղով

*հիասքանչ Հռիփսիմէն, որուն համար Դիոկղետիանոս կայսրը կը գրէ առ մեր Տրդատ Թագաւոր թէ*

*Ոչ երբէք գտաւ նման նմա ի մէջ Յունաց աշխարհիս։*

*Ահաւասիկ գեղեցկութեան համար բաղդատական օրինակ մը, զոր իբրեւ առակ կարող ենք գործածել։*

(Ագաթանգեղոս ԺԴ).

310

*Պէշիկթաշլեան եւս ֆէմինիզմի պաշտպան է. Հայ իգական սեռէն՝ վառ յոյսերով քաջագործութիւններ կը սպասէ. մխիթարուած կ'երգէ.*

*Դադրին նուագք ողբերգու*
*Սրբէ արցունքն Հայաստան,*
*Չի յոյս զուարթ օրերու*
*Աղջկունք Հայոց իրեն տան.*
*Ով կոյսք իրեն մօտեցէք*
*Ու թագն իր գլուխը դրէք։*

(Պէշիկթ. Մատենագրութիւնք էջ 78).

*Արփիարի Հայկուհիներ կ'երազէ պատերազմի դաշտին մէջ.*

*Այդ կոյսն աղւոր ո՞ւստի կու գայ*
*Թռուցեալ զուարթ լերանց վըրան*
*– Պատերազմէն նա կու դառնայ,*
*Հերաց վըրայ դափնիք շողան։*

(Նոյն էջ 108).

311

*Հայ կոյսերուն բնատուր՝ միա՛յն գեղեցկութիւնն չէ, այլ և արիական քաջութիւնը. Բագրատունին Հ. Արսէն շատ լաւ կը բամբռահարէ.*

*Եւ տեսցես, զի Թորգոմայ չեն գեղեցիկ միայն դստերք,*
*Այլ և արիք և մրխեալք ի հուր վըշտաց ւաբեանց մարտի։*

(Հայկ. դիւցազն էջ 426).

312

*Ժողովրդական բանաստեղծութեան մէջ գեղեցկին դեղը պարզ ու անկեղծօրէն երգուած է. փեսայի դրան հարսնեւորք կ'երգեն.*

*Հա՜յ իմ հա՜յ աննըման աղւոր։*

*Աղւոր, քեզ ո՞ր մարն է բերեր,*
*Ան թուխ աչեր մարն է բերեր։*
(Համով-Հոտով եջ 293)։

313

*Գեղեցկին համար ամէն բան կեանք է և հիացում, գեղեցիկը, աղւորը գիշեր չունի.*

*Գեշին տէրը արիւ չունի.*
*Աղւորին գիշերն է արեւ։*
(Նոյն եջ 294)։

314

*Հարստութիւն կայ քրտինքով և հարըստութիւն բաղդով. յետինս երբ մուխի պէս ցնդի, չամպոտեր զրկեալին հոգին։ Այաշկերտցիք ըսած են.*

*Քամու (քամիի) բերած*
*քամու տարած։*

*Մեկնութիւնն է. «Առանց աշխատութեան և յոգնութեան ձեռք բերուած հարստութեան վատնումը ցաւ չի պատճառեր»։*
(Ազգր. Հանդէս Գիրք VII VIII եջ 484)։

315

*Որքան որ հարուստ է մարդս, այնքան աժգոհ. առակ է եղած.*

*Հարուստ չ'թօղայ*
*որ աղքատն իլայ (լալ)։*

*Մեկնութիւնն է. « Հարուստները աւելի դժգոհ են իրենց ապրուստի վրայ, քան աղքատները »։*

(Նոյն էջ 495).



# ԳԼՈՒԽ Ը.

## ԲԱՐԵՐԱՐՈՒԹԻՒՆ, ԱՋԱԿՑՈՒԹԻՒՆ, ՎԱՍՏԱԿ, ԱՐԴԻՒՆՔ, ՊԱՐԳԵՒ, ԱՂՔԱՏՈՒԹԻՒՆ.

### 316

*Պատկանեան Եւրոպայի ճակտին կը զարնէ Հայաստանի այն օգնութիւնը, որով Ասիական վայրենութեան առջեւը առաւ, չի թողուց որ վայրենի ազգեր խուժէին Եւրոպա. սակայն կը ցաւի բանաստեղծը, որ Եւրոպան այդ աջակցութիւնը չի վարձատրեր, հիմա որ Հայը կը տառապի և օգնութեան կը կարօտի.*

Եւրոպ, մոռացա՞ր, երբ քու քաջերը
Անապատի մէջ մընացին քաղցած.
Ի՞նչ պիտի օգնէին նոցա զէնքերը,
Թէ որ Հայք նոցա չը տային կուշտ հաց։
(Պատկ. Ոտանաւորներ էջ 148).

### 317

*Թէ Հայը անձնուրաց, աջակցի իր ազգին փրկութեան, Հօրիզոնը շուտով կը շո-*

ղայ. այսպէս համոզուած, կ՚երգէ բանաստեղծը

Լոկ այն, որ կու տայ խումբ ու թըղթի,
Հա՛յկ, ձեզ կը հասցնէր ազգային բաղդի ...
Աստուած վըկայ որ՝ մենք կը յաղթէինք,
Թէ մէկ անձնուրաց մարդ ունենայինք։
(Նոյն էջ 149)·

318

Պատկանեան բարերար Իզմիրեանցի յիշատակին նուիրած չորս տող քերթուածին մէջ, կը յիշատակէ անջնջելի ճշմարտութիւն մը.

Կուգայ օր՝ երկաթ, քար կ՚անհետանան,
Միայն բարի գործք յաւիտեան կը մնան։
(Նոյն էջ 210)·

319

Սովորական առած մըն է որ կը գործածուի այն սպարգեւատուներու համար, որոնք փոքրիկ նուէր մը կ՚ընեն ու մեծը կը պահանջեն.

Մի ձու է տալիս, բայց փոխարէնը մի ձի է ստանում։
(Խենթը Րաֆֆիի էջ 68)·

*Աղաբէկեանն ալ իր Կռունկին մէջ այս տառը գործածած է, մեզի Մխիթարեանցս դէմ բանակռիւներ մղած ատեն։*

320

*Մեր ազգային կարեւոր գործերը կեանք ունեցեր են բարերարներու ձեռնտուութեամբ, և քանի որ հասարակութիւնը աղքատ է, բնականաբար ազգերնիս միշտ բարերարներու կարօտն կը զգայ, թէեւ ճիշտ է, ինչ որ կ'ըսէ Արծրունի, թէ.*

*Բարերարութիւն սպասելը նշանակում է մուրալ։*

(Գ. Արծրունու Աշխատութիւնները Հ. I. եջ 169)։

321

*Մի և նոյն հեղինակը կը գրէ.*

*Եւ եթէ մենք ինչ և իցէ հիմնարկութիւններ ունենք, միայն բարերարութիւններին ենք պարտական, և ոչ թէ ժողովրդի ինքնաօգնութեանը հասարակական գործերում։*

(Նոյն եջ 222).

322

*Արծրունին իր այդ առաջնորդական յօդուածին մէջ, հայ հասարակութիւնը հաւաքական բարեկարութեան մղելու համար, ըրած է նաեւ այս ծանր խօսքը.*

*Ամօթ է այն ժողովրդին, որ հարուստների բարերարութիւններով է ապրում։*

(Նոյն էջ 224).

323

*Հարուստին ողորմութենէն շատ վեր է աղքատին բարերարութիւնը և պարգեւը. կը գրէ Հ. Ալիշան.*

*Միայն հարուստներուն չթողունք ազգին օգնելը. մենք ալ աւելին կրնանք ընել, թէ որ ազգը աւելի կը սիրենք. մենք աղքատքս մեր ծոցին մօտէն կը հանենք կու տանք տաք տաք, անոնք շատ հեղ հեռու պաղ քսակներէն կը հանեն։*

(Բազմ. 1849 էջ 133).

324

*Բարերարութիւնը կը վարձատրուի. Եզովբոս կը նկարագրէ հետեւեալ դէպքը. «Մրջիւն մը անզգուշութեամբ կիյնայ պզտիկ գետի մը*

*մէջ. երբոր կը խղդուէր հոն՝ աղաւնի մը կը տեսնէ զայն, և ծառի ճիւղիկ մը կը ձգէ ջրին մէջ, որուն վրայ կայնած էր ինքը. և ան կ'ըլլայ մրջիւնին իբր նաւ մը որ ցամաքը հանելով կազատէ զայն։ Ցամաքն ելլելու ատենն որսորդ մը կը լարէր աղեղն ու աղաւնիին կը նայէր. երբոր պիտի նետէր զարնէր, մրջիւնը հասկըցաւ իր բարերարին վտանգը, շուտ մը վազեց եկաւ որսորդին ոտքը խածաւ։ Իսկ որսորդը շարժելով ձայն ելաւ, աղաւնին իմացաւ թռաւ։ Եւ այս մրջիւնն որ պարտական էր իր կեանքն աղաւնիին՝ փրկեց զայն փոխադարձ. և աս միջոցով հատուցում ըրաւ անոր բարերարութեանն որ տեսեր էր անկէ։ «Թարգմանիչը այս առակէն սա սիրուն բարոյական քերթուածիկը կը կազմէ.*

Բարին ըրէ ծովը նետէ,
Շուտով կուգայ քեզ կը գտնէ։

(Եզովբոս առակք էջ 205).

325

*Բարերարութեան համար Եզնիկի մէջ կայ սա բացատրութիւնը.*

Զի բարերարութեան առաքինութիւն այն է՝ յորժամ այլքն ի նմանէ վայելեսցեն. եթէ չիցեն՝ որք վայելիցեն ի բարերարութեանն, զի՞նչ շահ իցէ ի բարերարութենէ անտի։

(Եզնիկ եջ 257).

326

Նոյնը կը գրէ.

Գեւք յինչսն ժողովին, և հրեշտակք ի բաշխելն։

(Նոյն եջ 304).

327

Կարօտեալներու պէտք է բարերար ըլլալ, անօթիները կերակրել, ոա ոչ միայն աւետարանական, այլ մարդասիրական օրէնք է. քաղցածները զրկողը, Քրիստոսի սեղանակից չի կրնար ըլլալ. Եզնիկն է գրողը.

Որ զեղբայրն ի մարմնաւոր կերակրոյ զրկէ, չէ ցանկացող սեղանոյն Քրիստոսի։

(Նոյն եջ 305).

328

Եզնիկ կը մխիթարէ բարերարը այս խօսքով.

*Եթէ խնդրէ ոք ի քէն և տաս, գոհացիր զԱստուծոյ՝ զի դու առաւել շահեցար քան զնա։*

(Նոյն էջ 305).

329

***Աղօթքէն աւելի գերադասելի է եղբօր ու կարօտեալին աջակցիլն։ Կը գրէ Եզնիկ.***

*Լաւագոյն է սձեռսն համբառնալ առ Աստուած, յորժամ աղօթեսցէ. բայց առաւել կարեւոր է, որ ի պէտս եղբարցն սպասաւորեսցէ։*

(Նոյն էջ 309).

330

***Բարերարի պէտքը, ոչ միայն աղքատին, այլ և նիւթական միջոցներէ զուրկ դրագէտին համար հարկաւոր ըլլալը ըմբռնած ենք ի վաղուց։ Աքսլեան իսկ գրական մեկենասներու պէտքը կը յիշեցընէ. կը մտածէ.***

*Որ գնամ ընկնիմ մէկ իշխանի ոտք, ասեմ. ինձ մէկ կտոր հաց տայ ու ես՝ գիշեր ցերեկ ընկնիմ գեղէգեղ ու մեր ազգի արած բաները հաւաքեմ, գրեմ։*

Վերք Հայաստանի էջ 10.

331

*Աբովեան՝ բարերարութեան, ողորմածութեան նախանձախնդիր, սիրուն և սիրելի ոգի մըն է. կը մաղթէ որ մենք վայելենք Աստուծոյ բարութիւնը, բայց աղքատին ալ մաս հանենք.*

*Վայելի՛ր Աստուծոյ բարութիւնը, ուրիշին էլ փայ տո՛ւր. աղքատ տեսնելիս՝ կերցրո՛ւ, կշտացրո՛ւ. ղուշը վրովդ անց կենալիս, կանչի՛ր, կուտ տո՛ւր՝ դու առատ ձեռք ունեցիր, որ առատ առնիս ու բախտաւոր ըլիս:*

(Նոյն էջ 18).

332

*Բարերարը և սփոփողը, սիրելի են, ինչպէս Աբովեանի Աղասին.*

*Երկու ձեռք ունէիր, մէկը ողորմութիւն տալիս, միւսը աչք սրբում:*

(Նոյն էջ 213).

333

*Մերձաւորին, ընկերին սիրոյ համար Բագրատունին Հ. Արսէն ունի սա գեղեցիկ բացատրութիւնը.*

*Իւ ո՛վ ոչ թըռչիցի յեղբօր արեան սէր կամ ի վրէժ։*

(Հայկ. դիւցազն էջ 198).

334

*Հայաստանցիք կը կարծեն որ մարդուս մահուան հետ կը ջնջուի իր վաստակները և արդիւնքը կամ բարիքը. և ատոր համար առակ մը ունին.*

*Կով մեռաւ,*
*կաթ խափանաւ։*

(Ազգագր. Հանդէս գիրք VII, VIII, 1901 էջ 466).

335

*Ընտրտունջ աղքատին համար, հայ առակն կ'ըսէ.*

*Ո՛չ էծ (այծ) ունի, ո՛չ ուլ.*
*սատանի անկանճ խուլ։*

(Նոյն էջ 476).

336

*Գործի ատեն՝ գործիչի արդիւնքը, արժանիքը չի հասկցուիր. յաջորդին տկարութեան ատեն, ամէն բան կը պարզուի։ Հայաստանցիք կ'ըսեն.*

*Ջուր (մինչեւ) չիգայ յէտին.*
*չ'իշուի (չի յիշուիր) առաջին։*

*Կը մեկնուի. «Նախորդի արժանաւորութիւնը յաջորդի վատ ընթացքը միայն երեւան կը բերէ և գնահատել կու տայ»։*

(Նոյն էջ 480)։

337

*Ըստ մարդուս կարողութեան՝ մեծ կ'ըլլայ և գործին արդիւնքը։ Առակ է.*

*Պարաքէն (առատութիւնը) մըտ (մօտ) հարաքէն (ոյժ)։*

*Կը մեկնուի. «Մեծ արդիւնքները առաջ կուգան մեծ ոյժերէն»։*

(Նոյն էջ 480)։

338

*Վաճառականական գործերու մէջ կը պահանջուի հաշուական ճշտութիւն, քան թէ մտերմական կամ ընտանեկան ակնածութիւն. առակը կը հաստատէ.*

*Առուտուր է.*
*առուկուլ չէ։*

(Նոյն էջ 488)։

339

*Բարերարութիւնը ըստ հետագայ առածին իր վարձքն ունի.*

*Խէր (բարիք)*
*կը գտնի գտէր։*

(Նոյն էջ 493).



# ԳԼՈՒԽ Թ.

## ՆԵՐՈՂՈՒԹԻՒՆ, ԱՆԷԾՔ, ՄԱՐԴԱՍԻՐՈՒԹԻՒՆ, ԱՏԵԼՈՒԹԻՒՆ, ԴԱՏՈՂՈՒԹԻՒՆ

340

*Մեր հասարակութեան մէջ դժբաղդաբար կը գտնուին կրթուած գլուխներ, որ ազգային ոեւէ շարժում, նոյն իսկ դէպ ի լեզուն, դէպ ի հայկական հոգին՝ սառուցիկ վիճակ մը ցոյց կու տան, Գամառ Քաթիպա երգիծական տողերով կը ջախջախէ զանոնք։ Այդ անգոյն ազգատեացներուն պատկերը կը նկարէ.*

*Տեղը եկաւ՝ հայ է նա, տեղը եկաւ՝ այլազգի,*
*Իրօք ո՛չ այդ և ոչ այն է, այլ ծընունդ մի նոր*
*ազգի։ ...*
*Կարդում է նա* Morning, Débats, *ոչ Բազմավէպ,* ah! fi, donc!
*Ֆըրանսերէն է կոտրատում, Հայերէնն* mauvais ton.

(Ոտանաւորներ էջ 63).

341

*Դատելը մանաւանդ հասարակական կամ գրական գործ մը դատելը, արուեստ մըն է, որ կը պակսի ոչ միայն մեր հասարակութեան գլխէն, այլ նաեւ բանգէտ համարուած գրիչներէն. բանաստեղծ Քաթիպյան ճշգրտօրէն կը հեգնէ..*

*Գրէ՛, թէկուզ լեզուդ լինի Սանսկրիտին,*
*Հայը շատ ուշք կարդացածին չի դընում.*
*Նա լըսում է մի քանիսի դատմունքին,*
*Թէ ի՞նչ կերպով պարոն Օհանն է դատում։*

(Նոյն էջ 70).

342

*Ու խիստ պատասխանը թէեւ արդար ըլլայ ու իրաւացի, սակայն պատողը ատելի կ'ըլլայ, չի սիրուիր. Պատկանեանի հետագայ տողերը այդպիսիներուն շատ յարմար են.*

*Ե՞փ սիրից տըղան Թիթիզ հէքիմին*
*Որ տայմա աղու ճար կուտայ նարան.*
*Պայծառ լուսինկայ կուզէ՞ հարամին,*
*Կարիճն ալ, կասին, լուսի է տուշման։*

*Եւ ասոր համար մեր գրչի անաչառ պա-*

տաւորները ոչ միայն առնըլի եղած են, այլ և աղքատ մնացած.

Ու խորդ զուրցողի կօլօխին կըտակ
Տարին տասվերկու ամիս կըլայ ծակ։

(Նոյն էջ 267–8).

343

Պատկանեան կը շուարի, չի գիտեր թէ ինչպէս պատէ հայութեան վատ ու բարի գործերը. «Աղէկ ու գէշ» երգովը մանրամասն կը յիշատակէ հայուն չարն ու բարին. չարը կը պախարակէ, բարին կը գովէ ու երգը շուարած կը վերջացընէ.

Այսպէս՝ փիթուն օր իշկիլի մէջ իմ,
Ես ալ չիտիմ ի՞նչ անուն տամ հային.
Աղէկը տեսնում՝ պէրթէր կը կովիմ,
Գէշ պանը ինչպէ՞ս չասիմ ու պայիմ։

(Նոյն էջ 307).

344

Զուրիշը պատելու մէջ լեզուն ընդհանրապէս ոչ խելք ունի և ոչ չափ, բայց գոնէ ի սէր առածին անփորձ պատանիներու խօսքը

*դատաստանի չենթարկուիր. Հայաստանցին շատ խելքով ըսեր է.*

*Ջահիլի խօսքը կշեռքի մէջ չեն դնում.*

(Խենթը էջ 133).

345

*Ինչ որ մերն է, սիրելին, հարազատը, արիւնը, անտարակոյս կը ստիպուինք ոչ վրէժխնդիր, այլ ներողամիտ ըլլալ. Հասարակական շատ պատնութիւններ կան, որոնք շատ անգամ ի սէր մեծ բարիքի, մեզի լեղի պէտք չեն երեւնալ։ Չէ՞ որ առակը ըսեր է.*

*Քուրդը իր թանին թթու չի ասի։*

(Նոյն էջ 224).

346

*Ընձեռնհաս քննադատներուն կարելի է սեփականել սա նախադասութիւնը.*

*Ով գիտէ միմիայն փինաչութիւն (հնակարկատութիւն) թող դերձակի գործի մէջ տնօրէնութիւն չանի։*

(Արծրունու Աշխատութիւնները Հ. I. էջ 197).

347

*Զուրիշը տանելու մասին, գեղեցիկ է Ալիշանի սա բացատրութիւնը.*

Այլ է (ապա) տանել զոք և այլ տանել զբարս ուրուք. այն տխմարաց է գործ, իսկ այս իմաստնոց և զգաստից։

*Բայց այսպիսի իմաստուններ, այսպիսի զգաստներ սակաւագիւտ են. և անոր համար Հ. Ալիշան կ'ափսոսայ.*

Այլ աւա՜ղ զի սակաւք են որ գիտիցեն զմարդ և զկիրսն սոսկ տեսանել.

(Բազմավէպ 1843. էջ 319).

348

*Դատաստանը իրաւ կամ անիրաւ, շատ անգամ կը կախուի յոռետես կամ լաւատես բնաւորութենէն։ Խորենացին զմեզ կըշտամբած է իբրև ծոյլ ազգ մը, սակայն Հ. Ալիշան ուզելով Հայը անարատ տեսնել, կը պատճառաբանէ.*

Խորենացին է կշտամբող, այր յայն սահման իմաստութեան վերձեմեալ՝ ուստի յոլով անգամ, որք անդր թեւապարել բաւեցին՝ ցածունս յոյժ զ'ի ներքոյ կացեալսն նշմարէին։

(Նոյն 1844 էջ 348).

349

Դատաստանի մէջ խոր հմտութիւն պէտք է. Աւագ Մասիս յոռետես, փոքր Մասիսն կ'ըսէ.

Ով խոր կու նայի՝ թող պինդ խոր մըտնու,
Լոկ կեղեւ տեսնել՝ չէ՛ սուր աչերու.

(Հայրուեհի էջ 292).

350

Եւ անոնք որ մակերեւութաբար քննելով իր մը, յոռետեսութեամբ չեն ուզեր արժանիք մը ճանչնալ. կարելի է ուղղել, Աւագ Մասիսի առ փոքրն յոռետես սա հրաւէրը.

Դու քիչ մ'այլ իջիր, քըչի՛կ մ'այլ ցածիր,
Եւ ե՛կ իմ խորունկ ծոցիս մօտեցիր.
Հանց տեսնուս ահեղ կրակներ ու հնոցներ
Որ վախուդ հալիս, գաս դաշտի ընկեր։

(Նոյն էջ 292).

351

Հայ զաւակ և Հայութիւն դժբաղդաբար իր ցաւագար գլխուն ահռելի պատուհասներէն զատ, անարժանաբար միշտ անէծքի արժա-

նացած է։ Հայրապետք իսկ անիծեցին մեր խեղճ հայութիւնը. յոռետես Հայը կը վախնայ այդ անէծքէն.

Ես կու վախենամ յայն սեւ անիծից
Որ մեր հայրապետքն են տըւեր կըսկիծ,
Ներսէսք ու Մովսէսք Հայոց սեւ օրեր
Ասցել են գալիս, Հայոց շատ երեր։
(Նոյն էջ 294).

352

Լաւատես և յուսատու հայութիւնը աւագ Մասիսի բերնով կը պատասխանէ.

Ամպք այլ փարատին, մրըրիկն այլ դադրի,
իսկի անփոփոխ չէ բաղդ աշխարհի.
Զոր Աստուած կ'օրհնէ՝ մարդ չանիծաներ,
Զանէծքն առին լոկ ու կառնուն չարեր ։
(Նոյն էջ 294).

353

Անխելք դատաւորներու, քննադատներու լաւ օրինակ մ'ունի Մխիթար Գոշ. կը գրէ.

Ցանմտից ոք եհար գյունապի՝ կարծելով զնա դժնիկ. որոյ զայրացեալ ասաց. Ո՛ անաքորոյն, զտունկ ի պտղոյ արժան է ճանաչել. և ոչ ի տեսակէ։

*Ահաւասիկ առակին մեկնութիւնը նոյն ինքն հեղինակ առակախօսէն. «Նշանակ բերէ առակս զանընտրող դատողս՝ զթագաւորս և զառաջնորդս եկեղեցւոյ՝ զնոսա յանդիմանելով, զի անփորձապէս դատապարտեն. զի ճշգիւ գիտելի է ի գործոց նոցա. ըստ որում աչքն խուկ առաց , թէ ի պտղոյ նոցա ծանիջիք զնոսա, և ոչ ի տեսլենէ կամ ի համբաւէ դատել. որով և բազում փոտ գործի՝ զբարիս իբրև. զչարս խոշտանգելով»։*

(Միխիթար Գոշ Առակք. 19).

354

*Անէծքի առթիւ յիշեալ առակախօսէն կը յիշատակենք սա առակը.*

*Խոյ եհար եղջերօք գլխոյ զծառ բազում անգամ, և թափեաց զեղջիւրսն, և սկսաւ անիծանել զնա. և նորա պատասխանեալ, ասէ. Քեզէն եղեր պատճառ. զի՞ մեղադրես»։*

*Կը մեկնէ առակախօսը. «Զվայրապար անիծանողսն յանդիմանէ առակս, որք ցասուցեալ ինքեանց ախտիւք՝ զայլս պատճառեն»։*

Միխ. Գոշ Առակք 73–4).

355

Առնելութեան մասին Խորենացիէն ունինք պատմական վկայութիւն մը։ Հայոց պատմութեան հետաքրքիրները կը յիշեն անշուշտ Երուանդ Թագաւորին աՀաբեկ շփոթութիւնը։ Արտաշէս մանուկն կը պատրաստուի գալ անոր վրան և բանակով կռուիլ և իրեն տէպ-Հական արքայական Թագը գլուխը դնել։ Երուանդ վախնալով որ նոյն ատեն իր մերձաւորները զինքը կը Թողուն կը Հեռանան, ու իր իշխանութիւնը կը խորտակի, առատութեամբ նուէրներ կը բաշխէ արքունականներուն. նպատակը վարձատրել չէ, այլ Հաւատարմութիւն մուրալ. նուէր առնողները, մանաւանդ անոնք որ շատ կ'առնեն, դեռ աւելի կ'ատեն զինքը.

Որչափ առատանայր, առաւել եւս ատելի լինէր։

Ինչո՞ւ. «Քանզի գիտէին ամենեքեան, եթէ ոչ առ առատութեան տայ, այլ առ երկիւղի վատնէ»։ Իրաւացի չէ՞ր այս տեսակ ատելութիւնը։

(Խոր. Պատմ. էջ 253).

356

Միևնոյն պատմիչէն կրնանք արձանագրել իբրեւ անէծքի օրինակ սա հանրածանօթ դէպքն։ Արտաւազդի համար Գողթան երգիչները կ՚առասպելաբանեն. «Եթէ ի մահուանն Արտաշիսի բազում կոտորածք լինէին ըստ օրինի հեթանոսաց. դժուարի, ասեն, Արտաւազդ՝ ասելով ցհայրն. Մինչ դու գնացեր, և զերկիրս ամենայն ընդ քեզ տարար, ես աւերակաց որպէս թագաւորեմ։ վասն որոյ անիծեալ զնա Արտաշիսի՝ ասաց այսպէս.

Եթէ դու յորս հեծցիս յազատ ի վեր ի Մասիս, զքեզ կալցին քաջք, տարցին յազատ ի վեր ի Մասիս, անդ կացցես, և զլոյս մի՛ տեսցես։

(Խոր. Պատմ. էջ 286).

357

Ծայրայեղ ստորնութիւն է խիզախ, աներկիւղ ձեւանալ ու գաղտնածածուկ, կամ դիմակուած պատերազմիլ։ Ստորութիւն է եղած մէկ քանի երկչոտ խեղկատակ գրիչներու, որ երբ կ՚ուզեն վիրաւորել, վատահամբաւել

զուրկը, կեղծ անունով Հրապարակ կ'ելլեն. ատոնց կրնանք յարմարցնել Շապուհի՝ Տիգրանակերտի բերդին մէջ ապաստանեալ Հայ մարտիկներուն ուղղած սա խօսքը.

Քաջ արանց է յարձակ դաշտի և յազատ տեղւոջ կռուել, և կանանց գործ է արգելուլ փակել զինքեանս յերկիւղէ առ հանդերձեալ կռիւսն։

Սակայն այս խօսքը մենք ոչ նախնի դիւցազներուն իրաւացի և պատշաճ կը գտնենք. անոնք հարկ էր որ այնպէս փակուէին, բայց ոչ մեր դիմակաւոր քննադատները, որոնց ամենայարմար է Շապուհի այդ նախատինքը։

(Խոր. Պատմ. էջ 433).

358

Ըստ սովորական կարծեաց, շատ քիչ անգամ արդար դատաստան կը կարուի։ Խորենացին Հայաստանի դատաւորաց համար կը գրէ.

Դատաւորք՝ ամարդիք, սուտք, խաբողք, կաշառառուք, անընտրողք իրաւանց, անհաստատք, հակառակողք։

(Նոյն էջ 554.

359

Ոև է դատաստանի մէջ, շատ շրջահայեցութիւն և լրջութիւն կը պահանջուի. Հանճարեղն Եզովբոս կը գրէ. «Աքաղաղ մը աղբանոցը փորելով՝ յանկարծ կը գտնէ մարգարիտ մը, մէկդի կը նետէ ըսելով. Թէ որ մարգարտածախին աս բաղդին հանդիպէր՝ փառք կու տար աստուծոյ. բայց իմ առջևս անանկ ոչինչ է որ աւելի երջանիկ կ'ըլլայի, եթէ հատ մը գարի գտնէի, քան թէ այս մարգարիտը.

Ով որ բանի արժէք չիյտէ,
Գէշն ու լաւը մէկ կը դընէ։

(Եզովբոսի առակք էջ 87)

360

Ծիծաղելի է նախանձէ գրգռեալ այպանիչ դատաստանը, որուն համար սա առակը կը լսենք Եզովբոսէն. «Աղուէս մը երբոր անօթի մարէր, կը տեսնէ խաղողին կուզերը կախուած բարձր փայտերու վրայ, և բոլոր հասած. խորագէտը կը բաղձայ որ ձեռք ձգէ. բայց որչափ որ վեր կը ցատքէ՝ չի

կրնար հանիլ որ ուտէ։ Ուստի տեսաւ թէ իր կարողութիւնը պիտի չհասնի, եւ դառնալով գլուխը վերցուց ըսաւ. Աս խաղողները ես ուզենայի հեշտ կրնայի առնել ուտել. բայց ինծի անանկ կանաչ չհասած կ'երեւնան որ չեմ ուզեր անչափ աշխատանք ինծի տալով փրցընեմ»։ Թարգմանիչը այս առակէն կը կազմէ յորդորական թէ.

Ցած մարդն երբ լաւ բան սորված չէ,
Ալլոց բարին վար կը զարնէ։

(Նոյն էջ 144).

361

Դատաւոր մը անաչառ ըլլալու համար, դիտումներով պէտք չէ որ արդարաւոր ըլլայ, թէ ոչ, այպախիններուն կարելի է յիշեցընել Եզնկայ սա խօսքերը.

Որ ընդ ճառագայթս արեգականն հայել կամիցի, պարտի զպղտորութիւն աչացն՝ զաղտն և զբիժն ի բաց պարզել, զի մի՛ մըթարքն՝ որ զբբօք շողայցեն, արգել հայելոյ ի յստակութիւն լուսոյն լիցին։

(Եզնիկ էջ 5–6).

362

*Քննադատութեան, վիճաբանութեան մէջ, ընդհանրապէս ի սէր անձնապաշտպանութեան, կը պակսի անաչառ դատողութիւն. շատերը իրենց նպաստաւոր փաստեր փնտռելով, ոտնակոխ կ'ընեն արդարութիւնը. այդպիսիներուն կրնանք յիշեցնել առ Մարկիոն ուղղուած Եզնիկի սա խօսքը.*

Ո՜վ բանաքաղ՝ Մարկիոն. որ զմին լսէ և զմիւսն ստունգանէ։

(Նոյն էջ 292.)

363

*Դատաստանի մէջ զգուշանալու՝ լաւ ու գեղեցիկ օրինակ մըն է Մատթէոս Ուռհայեցւոյ սա դէպքի նկարագրութիւնը. «Աւեր իշխանն Վրաց ընդ Թագաւորն Յովհաննէս.*

Ո՛վ արքայ Յովհաննէս, հրամայեա՝ զի ցուցանիցեն ինձ միայն զԱշոտ, և ես ձերբակալ արարից զնա, և կապանօք բերից զնա առաջի քո.

*Կը պատասխանէ Յովհաննէս. «Ահա այր հզօր է Աշոտ, դու զիա՞րդ կարես ածել առաջի իմ»։ Եւ ասէր իշխանն Վրացի.*

Ջիոմս առից զնա կենդանի։
Եւ առէ ցնա Յովհաննէս, ևթէ,

Ջկորիւն առիւծու մի՛ արհամարհեսցես՝ մինչեւ տեսանիցես։

Խորախտ վրացին մենամարտութեան առեն՝ Աշտոի հայկական աճեղ հարուածին տակ շանտատակ կ'ըլլայ։

(Մատթ. Ուռհ. Թ).

364

Նախանձէ զերծ մեզի հասած աւելութիւնները և քննադատական պախարակութիւնք կարելի է ջրել, միշտ իմաստութեան նախանձախնդիր ոճովլ. Պէշիկթաշլեան լաւ կը գրէ.

Եւ քեզ ընդդէմ նախանձաբեկ թէ յուզեսցին տարապարտ,
Արի եւ դու, զիմաստութեան դիր ի գլուխդ սաղաւարտ։

Պէշիկթ. Մատենագրութիւն էջ 17.

365

Անէծքը կրօնական ներշնչումով՝ պատկառանք ու սոսկում մ'ունի, մանաւանդ արե

*ւելեան ազգաց մէջ։ Աբովեան անէծքի համար ու բանաստեղծական չափազանցութիւնը կ'ընէ.*

**Սեւագլխի անէծքը քարին որ դիպչի, քարը կպատռի։**

(Վէրք Հայաստանի էջ 33).

366

*Ճոռոմ քննադատներ, որոնք իրենց թերութիւնները մոռանալով դատաստան կը կարեն, կարելի է անոնց ըսել Աբովեանի սա խօսքը.*

**Քամի ունիս՝ տար ձեր տանը փչիր։**

(Նոյն էջ 36).

367

*Քննադատեալը երբ ըմբռնելով իր թերութիւնները, կ'ուզէ վեհանձնօրէն անաչառ ըլլալ, կրնայ պատասխանել սա սովորական առածը, զոր Աբովեան եւս գործածած է.*

**Ուղտին հարցրին, ընչի՞ ա շլինքդ ծուռը, ասեց ի՞նչ տեղս ա դուզ, որ շլինքս ծուռը չըլի։**

(Նոյն էջ 36).

368

*Սակայն շատ անգամ իր մը կրնայ քննադատելի ըլլալ և դատապարտելը առանց պատասխանատուութիւն մ'ունենալու, կ'իյնայ այդ Թերութեանց մէջ. այն ատեն այդ զրպարտեալ արդարը, կրնայ յիշել մխլասան Աբովեանի սա գեղջկական բացատրութիւնը.*

Մենք էլ լաւ գիտենք՝ Թէ կորած էշը ո՞ր գոմումն ա կապած, ամա ի՞նչ անես՝ որ մօտանոցի շլինքը կոտրում են, իշի ոտն ու գլուխը խուզում, որ տէրը տեսնելիս՝ զռում էլ ա, ասում են՝ Թէ քոնը չի՛. ո՞ւմ գլուխը կտրես։

(Նոյն էջ 36).

369

*Նախանձոտ բաջաղողներուն, կարելի է պատասխանել.*

Դեզ ունիս, քո գլխին արա. եզ ունիս, ձեր բղղումը պահի՛ր։

(Նոյն էջ 37).

370

*Իսկ մէջ ի զո՞ւր շարունակուի պոռոտախօսութիւնը, իմացո՛ւր.*

*Սաքի որ ամպի պէս էլ գոռաս, լսողն ո՞վ ա։*
(Նոյն էջ 37).

371

*Խղճալի են անաչառ դատաւորները, երբ ի սէր ճշմարտութեան կը դատապարտեն թերութիւնները, ատելի կ'ըլլան և կը հալածուին ու լքեալ կը մնան։ Ճշմարտախօս քննադատներուն՝ սա առածը ուղիղ պատկերն է, ծանօթ ժողովրդեան, և երգուած նոյն իսկ Ռ. Պատկանեանի սրինգով.*

*Դրուստը խօսողը փափախը ծակ կըլի. չե՞ս լսել։*

(Նոյն էջ 37).

372

*Ինքնակոչ ունայնամիտ քննադատներուն կարելի է ուղղել Աբովեանի սա հարցումը.*

*Քեզ ո՞վ ա ասում՝ թէ արի, մեր կալը չափիր։*
(Նոյն էջ 37).

## 373

*Պարագայներ կան, ուր խոհեմութիւն է որ նոյն իսկ արդար ու ճշմարիտ դատաւորները լռեն. կարելի է նկատողութեան առնել Աբովեանի սա խօսքը.*

*Բերանդ բաց անելիս՝ հող են ածում, աչքդ բաց անելիս՝ թող։*

(Նոյն էջ 37).

## 374

*Եւ կան պարագայներ, որ հլու ներողամըտութիւնը վնասակար է, պէտք է դիւցազնական անձնապաշտպանութիւն։ Աբովեան կը գրէ.*

*Քանի լեզուդ կարճացնես, գլուխդ կախ անես, ուսերիդ կը նստին, ղուզդ կքամեն, աչքդ կհանեն...*

*Հայ արիասիրտները այսպէս «ասում էին ամէն կողմից»։*

(Նոյն էջ 205).

## 375

*Անտրամաբան բանակռիւներէն երբ մաքուր պտուղ մը քաղելու յոյս չի տեսնար, կա-*

*րելի է յիշել Բագրատունի Հ. Արսէնի սա տողերն.*

*Ոչ բան ոչ միտք ի նոսա, ժըխոր եւ խռով խառնակութեան,*
*Խուժադուժ կարկաչ, խանչիւն խափարաձայն և խաղտախուղտ։*

(Հայկ դիւցազն էջ 131).

376

*Անէծքի մասին Հ. Բագրատունին Ա. Բիւրասպի համար ըսած է.*

*Դըժոխահոտ բերանով կերկերաձայն խըռպոտ հագագ*
*Ի գագաթն հեղոյր նորա, կուտէր անէծըս սոս-կալիս.*

(Նոյն էջ 154).

377

*Նախանձին քոյրն է ատելութիւնը, անոր պէս կոյր. Մխիթար Աբբահայր կը գրէ.*

*Որ ատելութեան ունին զոք, նորին նաեւ լոյ-սըն խաւար թուի նոցա։*

(Հատք էջ 114).

378

Անիրաւ դատաստաններէ, անուանարկութիւններէ և թշնամանքներէ պէտք չէ լքանիլ, յուսահատիլ. գործիչ կամ գրագէտ երբ անկեղծօրէն կ'աշխատի ազգին համար, ժողովուրդը կը սիրէ զայն։ Մեր հասարակութեան մէջ ալ հասարակ ամէն մատենագիր և գործիչ ունեցեր են նախանձորդ բանսարկուներ, և մրոտած անոնց նախատինքներով, սակայն ժողովուրդը այդ գործիչներու վրայ միշտ հիացած կը մնայ։ Սիրելի չէ՞ Սրուանձտեան. այո՛, սակայն ինքն ևս կ'ողբայ իր դէմ զինուող հալածանքները. «Այո, իբրև մեր Եկեղեցւոյ և Ազգի սան տղան և մշակ, այգի փորելու, քաղհանք ընելու, արտ ջրելու... ծառայութեանց մէջ գտնուեցայ, և տեղ տեղ ալ գլուխս կոտրեցին, կուրծքս պատռեցին, սիրտս ծակեցին... իսկ ինձ համար ատոնք եղան Պատուոյ նշան... Այո, ես կը կրեմ այդ նշաններ ու վէրքերը գլխուս ու կուրծքիս վրայ... խիղճս գոհ է»։ Եւ փառք կու տայ Աստուծոյ, ըսելով.

Հասկցող ժողովուրդ զիս կը սիրէ։
(Համով-հոտով. էջ Բ).

379

Հայը իր օրօրոցի մանկան կը ներշնչէ՝ ցոյց տալ ատելութիւն՝ ատողին, սիրտ՝ հոգի բարեկամին. եթէ իր սիրածը գայ, վարդեջուր կը սրսկէ, փունջ մանիշակը կը նուիրէ. Հայ մամիկը իր թոռնիկի օրօրոցը շարժելուն կ'երգէ.

Հայ եկաւ բարով տուի,
Թուրք եկաւ քարով տուի,
Ով քեզ սիրէ—սիրադեղ,
Ով քեզ ատէ—մահադեղ։
(Ազգագրական Հանդէս XI գիրք էջ 39).

380

Հայ լեզուն, հայ քնար, անիծելէ բնաւ չեն զգուշանար. գաւառական երգերու մէջ առատ են անիծող քերթուածներ. կ'երգէ Բուրչալուի ժողովուրդը.

Ջին ա էկել գերանին,
Մեռնեմ աւետարանին,
Ով ի վատը կխօսի,
Սև օձը տայ բերանին։
(Նոյն էջ 52).

### 381

Կ՚երգէ սիրահարը, թէ «Սիրածի սիրտը կէրի»։

Ով իմ սիրածը ինձ չի տայ,
Դատաստանին հոգին էրի։

(Նոյն էջ 57)։

### 382

Վա՜յ գլխին որ սիրահարը «ջան գիւլիւմ» էն կը գրկէ.

Ջան գիւլում, ջան ջան,
Սիրող սիրտը ո՞նց անի,
Ով ինձ սիրողից հանի,
Հոգին սըստանէն տանի։

(Նոյն էջ 59)։

### 383

Ալաշկերտցիք անէծք մը ունին.

Ախտ ախտին (անէծք)
Աւել տախտին (տան յատակ)։

Ըստ «Ազգագրական հանդէս»ի, մեկնութիւնն է այս. «Թշուառներուն անէծքը երբ և իջէ տան մը, թշուառացնողներուն կը հասնի»։

(Նոյն գիրք VII, VIII 1901, էջ 456)։

384

*Անխելքը չի կրնար գնահատել և գովել խելացիին գործերը. այդ տեսակ անձանց յարմար է հայաստանցիներու սա առակը.*

*Նա (ոչ) մարդանման,*
*Նա մարդահաւան ։*

*Մեկնութիւնն է. «Երբ շատ պակասութիւններ ունեցող մը և ոչ մէկին հաւանութիւն կը տայ»։*

(Նոյն էջ 474).

385

*Ամէն դատաւորէ պէտք չէ վախնալ. շատ անգամ զրպարտութիւնը յայտնի երեւան գալով, պախարակողը կը խայտառակի, և դատապարտեալը կը յաղթանակէ, եթէ յարգէ լռութիւնը, մտաբերելով սովորական հանրածանօթ առակս.*

*Շուն հաչայ.*
*քարվան ընցնայ ։*

*Այսպէս է առակիս բարոյական մեկնութիւնը թէ. «Բամբասանքը, հայհոյանքը*

չեն փնտռեր անոնց, որոց կ'ուղղեն ուրիշ-ները »։

(Նոյն էջ 476).

386

Ամէն բան իր արտաքինովը չի չափուիր. անաչառ դատ կտրելու համար, ներքինն ալ պէտք է նկատողութեան առնել և գիտնալ անոր արժէքը։ Ալաշկերտցին կ'ըսէ.

« Ոսկին մանր ա.
ամա գին ծանր ա »։

(Նոյն էջ 477).

387

Շատ անգամ պակասութիւն մը կը դատապարտուի, թէև դատապարտողն ալ նոյն թերութիւնն ունի. այդպիսիներուն կարելի է յիշեցնել առակս.

Երկու պտուկ ճիշդ դէմ դէմի
Շատ վիճեցան հետ իրարի.
Մին միւսին սեւերես,
Միւսն միոյն դուն հապէշ
    Կ'ըսէին, կը պնդէին
    Իրարմէ կը գանէին.
Բղբղիկն էլ՝ որ օճախին

*Մօտն էր նստուկ, և երկուքին*
*Կը լսէր խօսքեր, չը դիմացաւ,*
*«Երկուսդ էլ դուք, բարբառեցաւ,*
*Ի՞նչ կը վիճիք, չէ՞ միեւնոյն*
*Ունիք արդէն մուխոտ սեւ գոյն»։*

(Հայ. Յիսնակ առակ Բ. 29)

388

*Մարդկային և ընկերական կեանքի ամենէն ներդաշնակ առաքինութիւնն է ներողամըտութիւնը։ Ներողամտութեան վեհանձն օրինակ մը տուած է Ներսէս Աշտարակեցի կաթողիկոսը. սա 1845ին, Նոր–Նախիջեւան ժողուած Յարութիւն Ալամդարեանի գերեզմանին այցելելով, կ'արտասուէ ու կ'ըսէ. «Յարութիւն վարդապետ, թէպէտ դու ինձ շատ վշտացուցիր, բայց Աստուած քաղցր անէ պատասխանդ». և ներողամիտ ոգեւորութեամբ, կ'ըսէ նաեւ.*

Եթէ Աստուած ինձ զքեզ բաշխած լինէր, ես քեզ իմ ձեռօք կը ձեռնադրէի կաթողիկոս։

*Միք. Միանսարեանցը այս առթիւ կը գրէ. «Մեծն Ներսէսը մոռանում էր Ալամդարեանի պակասութիւնքը և միայն միտ էր*

*պահում նորա ուժեղ և եռանդուն ազգասիրութիւնը, անհագին քանքարը և անյագ գործունէութիւնը »։*

(Պատմ. Ներսիս. Հայ. Հոգ. Դպր. էջ 226).



# ԳԼՈՒԽ Ժ.

## ԲԱՐԻ ԵՒ ՎԱՏ ՀԱՄԲԱՒ, ՀԱՄԲԵՐՈՒԹԻՒՆ, ՊԱՏԻՒ ԵՒ ԳՈՎԵՍՏ, ՅՈՅՍ, ՅՈՒՍԱՀԱՏՈՒԹԻՒՆ, ՅՈՒՍԱԽԱԲՈՒԹԻՒՆ։

389

*Պատկանեան Հայութեան յոյս կը ներշնչէ.*

*Սիրո՛ւն կարին, խօսքըս լըսէ՛.*
*Սիրտըդ անբիծ միշտ պահպանես,*
*Շատը գընաց քիչը մընաց,*
*Չլինի սըրտէդ յոյսը հանես։*

(Ոտանաւորներ էջ 173).

390

*Բայց յոյսը արժարժողը ոչ օտարի խաբեբայ խոստումները, այլ մեր գործունէութիւնը պիտի ըլլայ.*

*Խաբուսի՛կ յոյսեր... Դեռ շատ ու շատ դար*
*Պիտի խաբուիս, Հա՛յ, ինչպէս խաբուեցար։*
*Թէ ինքըդ չանես քո գըլխու ճարը,*
*Ե՞րբ պիտի օգնէ քեզի օտարը...*

(Նոյն էջ 185).

391

Հայուն տառապանքը այն ատեն սարսափելի կ՚ըլլայ, երբ Հայը յուսահատի և Պատկանեան այդ սարսափէն կ՚ուզէ փրկել Հայը.

Թող փըչէ քամին պաղ պաղ երեսիս.
Վերէն ամպերէն սաստիկ ձիւն թող գայ,
Ո՛րքան որ կ՚ուզէ՝ թող փըչէ Հիւսիս,
Յուսով եմ, վաղ–ուշ, գարունը պիտ գայ։

(Նոյն էջ 200).

392

Պատկանեան խրախուսելու համար, յոյս կու տայ Հայուն, թէ Եւրոպան կու գայ կը սփոփէ մեր ցաւերը յանուն մարդկութեան։

Չէ՛, չէ՛, դահիճք չեն լուսաւոր ազգեր,
Վըստահ ենք, նոքա չեն մորթիլ հային,
Չի յուսահատուինք, իմ եղբայր հայեր,
Մեզ էլ իրաւունք կուտան մարդկային...

(Նոյն էջ 243).

393

Րաֆֆի անձնական պատուոյ մասին Վարդանի բերնին մէջ սա գեղեցիկ խօսքը դրած է.

Քեզ նման մարդիկ պատուի մասին խօսելու իրաւունք չունին։

(Խենթը էջ 138).

394

*Մամուլը և հրապարակագրութիւնը ապ-րուստի միջոց ըլլալ յուսահատներուն յարմար է սա տխուր հեղինականը. զոր Պարոնեան կը զործածէ «Մասիս»ի հիմնայիր Խաթիւ-ճեան Կարապետի համար. որուն վրայ վհա-տութիւն եկեր է. և*

Որովհետեւ վհատութիւնը մեր ազգին մէջ մարդս կամ գերեզման կը տանի կամ խմբա-գրութեան ասպարէզ կը նետէ, այս վերջինին մէջ ձգտելու դժբախտութիւնն ունեցաւ ։

(Ազգ. Ջոջեր էջ 81)·

395

*Մուրացիկ փառասէրներու վզէն՝ կրնանք կախել Պարոնեանի այս խրատականը.*

Մարդս հարկ է որ ինք ունենայ համբաւ. ուրիշէ ծախու առնուած համբաւին պէս անարգ բան չկայ ։

(Նոյն էջ 375)·

396

*Եւ հեղնելով փառքի անարժան փառա-սէրները, կ'ըսէ սա դէպքը. «Սահմանափակ*

*մտքի տէր մէկը հրատարակութիւն մը կ'ը-նէ, և կը սկսի աղաչել իւր բարեկամներուն որ պէտք եղած գովեստը չզլանան իր գրքին. որ,*

*Ամէն բանի արժանի է բաց ի գովեստէ ։*

*Եւ գլխել կուտայ ունայնամիտ փառա-սէրներուն.*

Շատերը համբաւոյն ետեւէն կը վազեն և այս պատճառաւ կը փախցունեն համբաւն, որ իր ետեւէն վազողը չճանաչելով կը վախնայ ու կը փախչի ։

*Ցեստոյ իրօք տաղանդաւորները կ'ապա-հովցընէ սա ճիշտ նկատողութեամբ.*

Ունի՞ս հանճար կամ առաքինութիւն, համբաւն ետեւէն կու գայ, և որչափ վռնտես՝ այնչափ քեզմէ չըբաժնըվիր ։

(Նոյն 376)

397

*Մխիթարայ փառաւոր ալղիանց արժէքը լիովին հասկնալու համար, ըստ Հ. Ալիշա-նի*

Բազմադարեան ամաց պէտք իցեն թորգո-մայ առ ի զսորա բովանդակ զփառս մեծութեանն ճանաչել ։

(Բազմավէպ 1846 էջ 343).

398

*Գովեստ լսելու համար, Հ. Ալիշան կ'ըսէ.*

Գովեստ լսելը և ուրախանալն և քիչ մը պարծիլն ալ՝ նշան է սրտին կենդանութեանը։

(Բազմավէպ 1849 էջ 66).

399

*Կը գրէ նոյնպէս.*

Զափաւոր գովեստ մը, մանաւանդ առջի բերան, կրնայ լաւ օծանելիք մը ըլլալ վիրաց՝ ոչ շատ ճզմելով, ոչ շոյելով ։

(Նոյն էջ 66)

400

*Հ. Ալիշան յուսոյ համար կը գրէ.*

Յանուլթ կըթոտ մարդկութեան ցուպ եղաւ յոյս։

(Խոհուրդք էջ 92).

401

*Բանաստեղծ Նահապետը կ'երգէ.*

Յոյս ակօսէ զանդընդախորն ովկէան,
Մըրցի՛նդ ոլորտս, հըսկէ ի վախս եւ ի խորս,
Լապտեր կանգնի յեզր ալէկոծ կենցաղոյս ։

(Նոյն էջ 92)

## 402

*Հ. Ալիշան խոնարհութեան փողը կը հնչէ.*

*Խոնարհութեան եւեթ շաւիղ անկասկած,*
*Ընդ որ երբեք ոչ խոնջեսցի ուղեւոր ։..*

(Նոյն էջ 122)

## 403

*Լքեալ հայութեան յոյս կու տայ Հ. Ալիշան.*

*« Ամպն և փոթորիկ շուտով վերանայ*
*Նոր արեւ, գարուն, ծառն ու այգին գայ ։*
*Արմատք հին՝ նոր ճիւղ, հին ճիւղք՝ նոր ծաղիկ*
*Ընծայեն բնութեան, Հայոց աշխարհիկ.*
*Դուք այլ կործանած սիւնք, դուք այլ կանգնիք,*
*Կապին կամարքդ, ո՜հ սուրբ եկեղեցիք.*

(Հայրունի էջ 273).

## 404

*Պատուով ու փառքով կը պարծի Աւագն Մասիս.*

*Ես միշտ եմ պարծանք Հայոցըս մեծաց*
*Նոքա այլ պարծանք են ինձ անմոռաց ։*

(Նոյն էջ 289)

405

*Ցուսատու է Ալագ Մասիս և շատ լաւատես. փոքր Մասիս նոյն իսկ ապագայ փայլակներէն ու սառերէն կը սարսի. յոռետես է. սակայն Ալագը կ'ըսէ.*

*Ես իրք կու տեսնեմ քանց քեզ առաւել,*
*Ցերեսէն Հայոց փառքըն չէ կըտրել ։*

(Նոյն էջ 291)

406

*Փոքրիկ Մասիսը կը պատասխանէ.*

*Բարձրէն կու նայիս, բարձրէն կու տեսնես,*
*Գըլուխդ ի յարեւ՝ զամէնք լոյս կարծես.*
*Ցածիր ինձ նըման քիչ մ'այլ խոր նայէ,*
*Քո դուրսըն ձիւն, ներսըն պաղուկ քար է.*
*Հազար զարունք գան թէ հազար արեւ*
*Ի ներս չեն մըտնուր, անցնին քո վերեւ.*
*Այսպէս սառնեղէն իրք մի զՀայք պատեր,*
*Ցուրտն այլ վախեմ զսիրտն ի քար է փոխեր ։*

(Նոյն էջ 292)

407

*Սակայն յուսահատ չէ Ալագ Մասիս. նա կը խոստանայ կեանք և վերակենդանութիւն.*

*Աչք մէջս, զայս վիհս անհագին*
*Որ յատակն յանդունդ հասանէ երկրին.*
*Բերանըն ձիւնով սառով կու ծածկի*
*Ներսըն դըժոխոց քուլթուկ (կոճղ) բորբոքի*
*Գիտես թէ մարած է զինչ հին կանթեղ.*
*Բայց թէ տամ քըչիկ մի քուքուլտի դեղ՝*
*Ցանկըսկած դաշտերտ ամէն ի ման գայ,*
*Դու այլ հետ լերանց դողաս զինչ տըղայ...*
*Չանց գիտցի՞ր զԱւագ Մասիսն՝ ո՞վ եղբայր,*
*Չանց ցըլտիկ ծոցեր՝ ունին սիրտ հրավառ.*
*Մ'ասեր թէ դըքա մեռած են մարած*
*Զանցնիր այն ճըրագն զոր վառեց Աստուած։*

(Նոյն էջ 292–3)

408

*Դարձեալ յուսատու Աւագ Մասիսն է յոյս ծագողը, և խրախուսողը.*

*Թէ ցուրտ թէ մարած ասես զՀայաստան՝*
*Գայ ժամ որ վառի, տայ կենաց նըշան։*

(Նոյն էջ 293)

409

*Երանի այն արժանաւոր անձանց, որոնք խոյս կու տան փառքէն և փառքն ալ իրենց ետեւէն կը վազէ. Խորենացին այսպիսի արժանաւորներուն համար կը յիշատակէ.*

*Որք ոչ զպատիւն յինքեանս ձգէին, այլ պատիւն զհետ նոցա ընթացաւ։*

(Խոր. Պատ. 329).

410

*Ցուսոյ մասին Եզովբոս կը գրէ. «Զրկնորսները իրենց ուռկանը ջրէն դուրս կը քաշէին, բայց սովորականէն աւելի ծանր ըլլալով, մեծ յոյս ունեցան, և մէկմէկու կ'ըսէին թէ առանց կարծեաց լաւ որս ունինք, ով գիտէ հիմա ինչ ձկներ պիտի տեսնենք մեր ուռկանին մէջ։ Այսոնց ուրախութիւնը շատ չի քըշեց. վասն զի երբոր շատ աշխատանքէն ետև նայեցան ուռկանին մէջ՝ ուրիշ բան չգտան, բայց մեծ քար մը, որ ջրին ընթացքը բերեր էր հոն»։ Թարգմանիչը ասկից կը հետևցընէ.*

*Մինակ յուսով եթէ երթաս,*
*Ամէն բանէն պարապ կելլաս։*

(Եզովբոս առակք էջ 272).

411

*Պատմիչն Բուզանդ՝ նախանձելիօրէն կը գրուատէ զՆերսէս Պարթեւ, և իրաւացի կը*

գովէ մեծ Հայրապետին համբաւաւոր կատարելութիւններն. իբրեւ տխմար եկեղեցական, ինչ ինչ տողեր Բուզանդէն կը յիշատակենք. «Այր էր սա մեծ եւ բարձր, ցանկալի հասակաւ, եւ վայելուչ գեղով, զի ոչ գտանէր ուրեք նման նմա գեղեցկութեանն ի վերայ երեսաց երկրի... մարդասէր, սուրբ, զգաստ, սաստիկ իմաստուն եւ առանց ակնառութեան իրաւանց իրաւարար, ցածուն, քաղցր, խոնարհ, աղքատասէր... Անձանձրոյթ էր եւ ունէր զնախանձն Աստուծոյ, եւ եռայր սուրբ Հոգւովն. այսպէս իսկ

էր ամենայնիւ կատարեալ յամենայնի։

Եւ զաղքատս եւ զտառապեալս այսպէս սիրէր եւ ակն ածէր ի վերայ նոցա, զի զիւր ինչ զհանդերձս եւ զկերակուր հասարակէր ընդ նոսա եւ նեղելոց եւ տարակուսելոց օգնական եւ վերակացու եւ ջատագով ամենայն զրկելոց լինէր նա»։ Մենք այս գեղեցիկ պարբերութենէն կրնանք իբրեւ առակ գործածել «էր ամենայնիւ կատարեալ յամենայնի» իմաստը նախանձելի։

(Բուզանդ Դ. գ).

412

*Համեստութեան սիրուն վկայութիւն մըն է և այս խօսքը.*

*Ես ինձէն խաւար գոլով՝ կամեցայ այլոց լոյս լինել։*

*Ստեփաննոս Օրպելեան ինքն իր անձին համար այդպէս գրած է։*

(Ստեփ. Օրպէլեան ԺԳ).

413

*Նոյնը յետագայ խոնարհ բացատրութիւնը իր անձին համար ըրած է. և ընդունած է որ ինքն է*

*Ջեռով երկնային, վարուք եղեռնային, կերպիւ կենաբաշխ, ոգւով կենազրաւ, անուամբ քաւչապետ (քահանայապետ, եպիսկոպոս), բանսարկուին գործապետ։*

(Նոյն ՀԳ).

414

*Մեր վաղեմի ուսեալ և հանճարեղ եկեղեցականները, հռչակուած են ոչ միայն գիտութեամբ նախանձելի, այլ և բարքով իսկ հիանալի. կենսագիրները սքանչացումով ան-*

*մահացուցած են այդ իրօք հոգեշնորհ գիտուն հայրապետները, եպիսկոպոսները, վարդապետները և անապատականները. այդ գերանզանցօրէն սիրելի հոգիներէն է նաև Գէորգ Վարդապետ Սկեւռացի, որուն համար իր աշակերտը Մովսէս վարդապետ յափշտակուած կը գրէ թէ*

Ինքըն բնակէր յանապատի;
Գործըն պատմէր ի յաշխարհի.
Ջօրէն ճպռան ազդողական
Համբաւ հընչէր միշտ հիական։

(Հայապատում Բ. էջ 506.

415

*Աբովեան յոյս ունի որ անտարակոյս օր մը կը ծիծաղի հայուն արեւը. «Հալբաթ Աստուած մէկ օր իր ողորմութեան դուռը բաց կանի».*

Էսպէս հօ չի՛ մնալ։

(Վէրք Հայաստանի էջ 35.

416

*Հաւատացեալ հոգին լիայոյս է Աստուծոյ հրաշագործութեանց. կը հաւատայ որ*

*իր հոգին արփաթեւեալ պիտի թռչի յերկնից կամար զօրութեամբ Անոր,*
*Որ զթըրթռչնիկըն թիթեռնիկ թեթեւ թեւօքըն թըրթըռուն*
*Ի թըրթըռուրն արկեալ պահէ յանարգ զեռուն տաղաւարեալ,*
*Եւ զմահուն սորա դամբան եղեալ նըմին ի խանձարուրս՝*
*Յարուցանէ սքանչելի ճախրել ի լոյս ու ի սէր օդոց։*

(Հայկ դիւցազն 113).

417

*Մամուլը և մեր նշանաւոր գրագէտներու կենսագրութիւնները վկայ են, որ առհասարակ մեր ամէն մատենագիր անձանց համար երկու անհրաժեշտ պէտք՝ դրամ և քաջալերութիւն՝ զգալի եղած են։ Սակայն մատենագիր մը աւելի գովեստով կը վարձատրուի, քան թէ դրամով։ Դրամը մատենագրին ջղերն են, որոնք առանց քաջալերիչ գովեստի կարելի չէ որ գործեն ու կենդանի մնան։ Մեր սիրուած հեղինակներէն մին Գ. Վ. Սրուանձտեան իր «Համով–Հոտով» ին նախաբանովը յայտնած է, թէ*

*Արծաթը կը քաջալերէ, կը նպաստաւորէ, բայց չ'կրնար իբրեւ վարձք՝ գոհացնել աշխատանքը. իսկ եթէ լինի արծաթին կամ նպաստին հետ գնահատող խօսք մը կամ մի միայն խօսք մը՝ առանց նիւթական վարձքի, զարմանալի գոհացումն կը պատճառէ հաւատարիմ մշակի մը...*

*Սրուանձտեան, յետոյ պարզ ու բնական հարց մը կ'ընէ. «Ո՞վ կրնայ չափել այն զգացման գոհունակութիւնը մշակի մը, կամ ծառայի մը, երբ իւր տէրը կը ժպտի անոր, կամ ձեռքով կը փայփայէ անոր ուսերը, ըսելով, «Ապրիս, հաւնեցայ ըրածիդ, գոհ եմ քեզմէ»։ Թեւեր կ'ուզէ նա որ խոյանայ բարձրանայ նա մինչեւ արեւը, և այդ անհունութիւնը լեցընէ իւր ուրախութեան երգով»։ Սրուանձտեան բարոյական այդ տեսակ վարձատրութեան հրաշագործ ուժը շատ լաւ ըմբռնած է, ինքն անկեղծօրէն կը գրէ։*

*Իմ գոհունակութիւնս այնչափ մեծ է, որ չեմ կարող բացատրել, ընդհանրապէս բանասիրութեան ճաշակ ունեցող ամէն դասերէ վայելածս քաջալերութեան համար...*

(Համով-Հոտով էջ Դ-Ե).

418

*Յուսահատութեան սրտաճմլիկ օրինակ մըն է ձագակորոյս անբոյն կաքուիկի որոշումը բանաստեղծական։ Թշուառ կաքուիկը քարին վրայ նստած կուլար. կը հարցնեն ինչո՞ւ կու լաս. «ինտոր չի լամ, որ ձագերս են տարած,*

*Ձագերս բուներնէն տարած.*
*Իմ սիրտս էրած....*
*— Սեւ կաքուիկ, դուն ո՞ւր տի թառիս.*
*— Բանձր խաւախին վրայ կը թառիմ։*
*— Սեւ կաքուիկ, թէ ատոր տըր գայ, ո՞ւր։*
*— Ուռիին ու մորիին վրայ՝ խարաբաս կ՚թառիմ։*
*— Թէ հոն էլ չ՚թողեն,*
*— Կէծ մը կրակ կըլլիմ՝*
*Ես գիս կը վառիմ։*

(Ազգր. Հանդէս XII 104).

419

*Մանկամիտ, կամ անմիտ անձը, թէ գովեստ ընդունի՝ կը շփանայ, և շատ անգամ զինքը գովողին կը թշնամանայ։ Լոռիս Մելիքեանի համար երգուած աշըխային երգի մը մէջ գտնուած սա տողերն յարմար են այս միամիտներուն.*

*Սէյեաղ, մի գովիլ այս իշխանին, որ միշտ մնայ լաւ,*
*Որին գովեցիր, յայտնի տեսար, վերջը լաւ չելաւ,*
*Որի ասացիր՝ սա Յակոբն է, նա ելաւ Եսաւ...*

(Սայէաթ-Նօվայ էջ 87).

420

*Գովեստով շփանալ, ինքնահաւան ըլլալ, տխմարութիւն է, պէտք է յիշենք համր Յոխանի առակը.*

*Գովացին լալ (համր) Յոխան,*
*Ելաւ նստաւ պատուխան։*

*Մեկնութիւնն է. «Գովասանքը յիմարները կը մղէ ծայրայեղ ինքնահաւանութեան»։*

(Ազգր. Հանդէս VII. VIII. 1901 էջ 460)

421

*Շատ անգամ բաղկը կոյր է և յոյր համր։ Հայաստանցիք ունին այս առակը.*

*Կ'ուզենք արեւիկ,*
*եկաւ անձրեւիկ.*
*Կ'ուզենք անձրեւիկ,*
*եկաւ կարկտիկ։*

*Կը մեկնուի. «Յուսացուած բարիքի փոխարէն չարիք գտնել»:*

(Նոյն էջ 469).

422

*Շատեր կը յուսան, սակայն քիչերը չեն որ յուսախաբ կը մնան. առակ է.*

*Ցարըզի (լուսագոյնը)*
*եղաւ ճառըզի (խայտառակ):*

*Մեկնութիւնն է. «Երբ լուսագոյն կարծած բանէ մը, կամ գործէ մը գէշ և խայտառակ հետեւութիւններ կը ծագին»:*

(Նոյն էջ 486).

423

*Յոյսը կենդանութիւն է, սակայն Հայը անոր մէջ կեանք չի տեսներ.*

*Ոն (ով) ումուտով (յուսով) ապրեցուցեր,*
*սով զէնի (զայն) սատկեցուցեր:*

(Նոյն էջ 500).

424

*Անկարելիին յուսացողը, ծաղրական է. անոր յիշեցընելու է առակս.*

*Ջօլախ Ամիրխան*
*Էդ ումուտ սրտէդ խան։*

(Նոյն էջ 501)․



# ԳԼՈՒԽ ԺԱ.

## ԲԱՐԻՔ, ՉԱՐԻՔ, ԱՒԵՐՈՒՄ, ԽԱՆԳԱՐ, ԱՐԴԱՐՈՒԹԻՒՆ, ՀԱՄԲԵՐՈՒԹԻՒՆ, ԽՈՀԵՄՈՒԹԻՒՆ, ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆ։

### 425

*Սորուկ ազգը ունի իրեն յատուկ քաղաքականութիւնը. երբ կը տեսնէ որ կռուիլը անօգտակար է, սակայն քանի որ ոսոխին դիմադրելու զէնք չունի, նա կը մտածէ որ չար թշնամին գոհացընելով, չարութեան առջեւը առնէ. ըստ Րաֆֆիի*

*Բարին մերն է, մտածում էր ռամիկը, բայց չարին պէտք է գոհացնել, որ չարութիւն չըգործէ.*

(Խենթը էջ 115).

### 426

*Շատ քարոզուած ու սիրուած է արդարութիւնը, զոր կարելի է կոչել իրաւունքի քոյրը. բայց զայն դժուար է գտնել։ Վիպասանն Րաֆֆի կը գրէ.*

*Արդարութիւնը ծիծեռնակի կաթն է դարձել, ոչ մի տեղ չես գտնի։*

(Խենթը 412)

427

*Հայրենիքի յաւիտենական վշտերուն պատճառով՝ Րաֆֆի մոռցընել կու տայ աւետարանի ներողամտութեան քարոզները, և Մովսիսական վարդապետութեան ունկնդիր, կը գոռայ վիպասանը.*

*Չարի հետ պէտք է չար լինել, բարիի հետ բարի, այս է պահանջում անարդար մարդկութիւնը։*

(Ջալալեդդին 494)

428

*Արծրունի իր ազատամիտ փէմինիզմի պաշտպան՝ մէկ առաջնորդող յօդուածին մէջ կ'ըսէ.*

*Ոչ. վատը չիմանալը արժանաւորութիւն չէ, բայց այն է արժանաւորութիւն, եթէ մարդը լաւն ու վատը իմանալով, լաւը վատից կարող է զանազանել։*

Արծրունու Աշխատութիւնները Հ. I. էջ 83).

429

***Ճշմարտութեան վիրաւորուելուն համար, Պարոնեան երգիծաբանը կ'ըսէ.***

*Կիրքը միշտ յաղթանակը կը տանի և ճշմարտութիւնը կը վիրաւորվի։*

(Ազգային Ջոջեր էջ 143).

430

***Եւ Պոլսոյ այն վարձկան խմբագիրները, որոնք ի սէր փարային կամ կէս կանգուն քազմիր նուէրի մը համար ճշմարտութիւնը ոտքի տակ կ'առնեն, այլ պարագային, Պարոնեանի գաղափարով,***

*Անվայել ոճով պաշտպանված ճշմարտութիւնը միշտ նախապատիւ է բաճկոնի մը զոհված ճըշմարտութենէն։*

(Նոյն էջ 143).

431

***Պարոնեան ճշմարտախօսութիւն մասին ըսած է սա հեգնականը.***

*Ճշմարտախօս մը գտնելն այսօր այնչափ դըժուար է, որչափ որ դժուար է թաղային վարժարաններու մէջ կարգ ու կանոն գտնելը։*

(Նոյն էջ 387).

432

*Ամէն առաւելութիւն ի միասին գրկել կարելի չէ. ապացոյց այս ճշմարտութեան՝ Ալիշանին սա խօսքը կ՚արձանագրենք.*

*Ոչ է պարտէզ այնպէս գեղեցիկ, որ խոտ ինչ անպիտան երբէք ոչ բուսուցանիցէ։*

(Բազմավէպ 1843 էջ 336).

433

*Պէտք է խտրութիւն և ընտրութիւն. յառաջադէմ ազգէն ամէն բան անխտիր կարելի չէ ընդունիլ. կը պատուիրէ Ալիշան. «մի՛ զամենայն որ զարգացելոց է հնար՝ անխտիր ընդունիլ», այլ վաճառականական ընտրութիւն պէտք է ընել, քաղել մի միայն օգտակարը և կարեւորը ու թողուլ վնասակարը.*

*Չի զվնասակարացն բուռն հարկանել՝ արդարեւ մահ է ոգւոյ հայրենեաց, իսկ յօգտակարաց հրաժարել՝ կենաց մերժումն է։*

(Բազմավէպ 1845 էջ 334).

434

*Ազգասէր Հ. Ալիշանը ոգեւորուած, ճըշ-*

մարդութիւնը ազգասիրութենէն վեր կը դասէ.

Ազգասիրութիւնն շատ լաւ բան է, բայց ճըշ, մարդութենէ դուրս չելլելն՝ ամենէն լաւն է, և ազգասիրութենէ ալ դուրս չէ. «Ազգին վրայ փոշի մը չնստեցընել ուզելն՝ ազգը քարկոծելու վտանգի մէջ ձգել է». կ'ըսէ խիկարը։

(Բազմավէպ 1849 էջ 66).

435

Անիրաւութիւնը իր արդար պատիժը՝ այսօր կամ վաղը կը ստանայ. աւետարանական սա բացատրութիւնն կ'ընէ Խորենացին.

Որով չափով չափեաց՝ չափեալ եղեւ. ըստ գրոց։

(Խոր. Պատմ. էջ 423).

436

Ոեւէ սկզբունքի տէր անձ կարելի չէ որ չըմբռնէ համբերութեան մխիթարիչ վարձատրութիւնը։ Ըստ Եզովբոսի. «Ուրուրը սոսկալի պատերազմ կ'ընէր աղաւնիներու հետ որ իրեն գրացի էին։ Իսկ աղաւնինե-

*ըլ այս թշնամութեննէն ազատ ըլլալու համար կարծեցին թէ ուրիշ ճար չի կրնար ըլլալ, բայց եթէ թռչուններուն մէջ թագաւոր մ'ընտրել որ կարենայ իրենց թըշնամւոյն դէմ դնել. բազէն եղաւ թագաւոր որ մտաւ աղաւնոցին մէջ՝ պատճառաւ հասկընալու անոնց միաբանութեան ուժը. և մէկէն ցաթկեց աղաւնիներուն վրայ բոլորը խղդեց »։*

*Թարգմանիչը այս առակէն կը հետեւցընէ. թէ*

*Համբերող սիրտն՝ ամէն լեղի,*
*Անուշ կ'ընէ նման մեղրի։*

(Եզովբոս առակք 115).

437

*Ըստ առակախօսներու, չարիք ընողներուն բարիք պէտք չէ ընել. զգուշացնող ծանօթ օրինակ մըն է « Փայտատ և անտառ »ի Եզովբոսեան առակը. և այդ նշանաւոր առակախօսի թարգմանիչը այս երկտողը կը գրէ.*

*Մի՛ տար չարին յաջողութիւն,*
*Քեզի կ'ընէ նախ չարութիւն։*

Նոյն էջ 143).

438

*Եւ Եզնիկ բարւոյ և չարի համար սա բացատրութիւնն է ըրած.*

*Զի ոչ արդարոյ, որ բնութեամբ արդար իցէ մարթի զչար ինչ պատուէր տալ. և ոչ չարի, որ բնութեամբ չար իցէ, զբարւոյ խրատ տալ։*
(Եզնիկ էջ 256).

439

*Խոհեմութիւնը մեզ կը սորվեցընէ չըլլալ ուրիշի անձնատուր կոյր ստրուկ. իմաստունն Խիկար կը գրէ.*

*Որդեակ մի տալ թոյլ ընկերին կոխել զոտն քո, զի համարձակեալ կոխեսցէ զպարանոց քո։*
(Խիկար էջ 35).

440

*Կոմնակ տիպար չարութեան էր, անոր համար Պէշիկթաշլեան անոր բերանը սա խօսքը կը դնէ.*

*Գթա՜լ, ներե՜լ. սա չէ Կոմնակի բնութիւնը և սովորութիւնը։*

*Այս բացատրութիւնը թերեւ սաակ կարե-*

*լի է գործածել՝ անգութ, աններող, չարասիրտ նենգաւոր անձնաւորութեանց համար։*

(Պէշիկթշ. Մատենագրութիւնք էջ 199).

441

*Բարի անձը բարութեամբ կը մտածէ և կ'ուզէ գործել. բայց վատ ու չար անձինք ամէն բան կը պղտորեն. երկինքը պայծառ չի մնար, ամպերը կը հանին կը մրոտեն զայն. կը գրէ Աբովեան.*

*Բայց ա՜խ՝ ե՞րբ ա երկինքը մէկ կերպի մնա- ցել՝ որ մարդի սիրտը մնայ։*

*Վիպասանը յառաջ վարելով խօսքը, կ'ը- սէ. «Հէնց մի փոքր մաքիս արևը երևաց թէ չէ, էլի սև սև ամպերը գլխընները բարձրացրին, էլի կայծակ որոտումն սրտումս մէյդան բաց արին...»*

(Վէրք Հայաստանի 7).

442

*Նոյն վիպասանը բարութեան համար այս անկեղծ ու պարզ միտքը յայտնած է։*

*Մարդ ինչ անի, է՛ն իր առաջը կը գայ։ Լա-*

ւութիւն կանես, լաւութիւն կտեսնիս, վատութիւն կանես՝ վատութիւն։

(Նոյն էջ 32)։

443

Արդարութիւնը և նոյն իսկ ներքին բնազդումը կը պահանջէ որ մարդ իր սեփհականութեան վրէժխնդիր ըլլայ, իր կեանքը իր ինչքը պաշտպանէ։ Աբովեան կը հարցնէ.

Մենք ծտի ղդար էլ ա չկա՞նք, որ մեր բունը պահենք։

(Նոյն էջ 32).

444

Բարի խոհեմ մարդը լաւ ըմբռնած է որ

Զվնասէ ոք բայց անձին, եւ չվնասի թէ ոչ յիւրմէն։

(Հայկ. դիւցազն էջ 120)։

445

Վրէպելով մեղանչելն՝ չարութիւն, ոճիր մը չէ. Բագրատունին Հ. Արսէն լաւ կը գրէ.

Ոչ թէ՛ գըթելն է ոճիր, այլ ի վրիպակըն կալ յամառ։

(Նոյն էջ 238)։

## 446

*Ճշմարտութիւնը ուրանալը հոգեկան դաւաճանութիւն է, իսկ յանուն ճշմարտութեան կռուիլ ու մեռնիլը՝ գերազանց առաքինութիւն։ Բագրատունին Հ. Արսէն կը գրէ.*

**Յաղթանակ մե՛ծ է մեռանել վասն իրաւանց ճըշմարտութեան։**

(Նոյն էջ 448).

## 447

*Ճշմարտութեան վրէժխնդրութիւնը յարգեց նաեւ մեր Փրկիչը. կը գրէ Մխիթար Աբբահայր.*

**Քրիստոս վասն անիրաւ ապտակին՝ համար պահանջեաց, զի ընդդէմ ճշմարտութեան էր. այլոցն լռեաց, զի ընդդէմ անձին իւրոյ էին։**

(Հատք էջ 55).

## 448

*Ըստ Մխիթար Աբբահօր, չարագործը ուրիշին չարութիւն ընելուն իր անձին նախ կը վնասէ.*

**Այրեմ զայլս՝ չար ի վերայ նոցա դնելով, բայց մեք յառաջ քան զնոսա այրիմք։**

(Նոյն էջ 112).

449

Բարին և բարեգործը միշտ սիրելի և պաշտելի են Սայեաթ Նօվայ աւետարանական ոգւով բռնկած, չարին հետ չար չըլլալ կ'երգէ.

Օ՛վ քեզի լեղի պարքիվի, դուն տու շաքար, Սայեաթ-Նօվա։

(Սայեաթ-Նօվայ եր 131).

450

Չարը չար է, այս է հանրական համոզումը։ Ալաշկերտցիք ունին առակ մը.

Աղէկն ի գետ.
ալչախն (ստորինը) ի հետ։

Ըստ «Ազգագրական հանդէս»ի, առակիս միտնութիւնն է. «Յոռի բաներէն և ո՛չ մէկը կրնայ լաւագոյն ըլլալ»։

Ազգ. հանդէս գիրք VII VIII, 1901 եր 456.

451

Հայաստանցիք պարզուկ և ընտանեցած առակ մ'ունին. կ'ըսեն

ինչ որ բրդես,
զէն կը քրթես։

Ըստ « Ազգագրական Հանդէս » ի՝ մեկնութիւնն է. « Ամէն մարդ իր թէ բարի և թէ չար գործողութեան փոխարէնը կը գտնէ։

(Նոյն էջ 466).

452

Խոհեմութիւնը կը սորվեցընէ ուրիշի կրածները տեսնելով՝ փորձ ըլլալ և զգուշանալ։ Հայաստանցին կ'ըսէ.

Իշկա՛ (նայէ) ընձի,
Խղճա՛ քըզի։

Ըստ « Ազգագրական Հանդէս » ի՝ մեկնութիւնն է. « Դժբաղդութեան մը մէջ չ'իյնալու համար նմանօրինակ վիճակ ունեցողները աչքի առաջ ունենալու է »։

(Նոյն էջ 466).

453

Տաս անգամ բարեգործը չարագործ կը համարուի, այդպիսի պարագայներուն յարմար է այս առակը.

Կուժ կոտրող. լէ (ալ) մէկ ա,
Ջուր բերող լէ մէկ ա։

(Նոյն էջ 469)

454

Չարիք ու վնաս ընելէն զգուշանալու է. չարագործութիւնը տղմի մէջ մտնել է, ուսկից անկարելի է որ մարդ անբիծ դուրս ելլէ։ Սովորական առակ մը կայ.

Մուկ ինչքան հող փորայ.
Վըր ուր (իւր) գլխուն կիտայ։

Մեկնութիւնն է. «Ուրիշին վնաս ուզողը կը վնասուի անոր փոխարէն։

(Նոյն էջ 474).

455

Ուրիշին գործը խանգարողին, Հայաստանցիք կը յիշեցընեն առակս։

Ուրուս–մուրուս (անմիտ)
ես կը շիգեմ (շինել) դուն կը բլուս (փլցնել)։

(Նոյն էջ 478).

456

Միեւնոյն առթիւ կը յիշուի նաեւ սա առակը.

Քաջանց (քաջքերու) շինած,
Մկան աւերած։

Մեկնութիւնն է. «Երբ արժանաւոր,

Հզօր, բարի մարդերու գործերը անարժան, տկար և չար մարդերու ձեռքով կը փճանան» ։

(Նոյն էջ 485)․

457

Փոքրիկը՝ բարին ու չարը հաւասարապէս մեծերէն կ'ընդօրինակէ։ Առակը ըսած է․

Մեծի ասուկ (ըսածը)
պզտկի (փոքրի) լսուկ (լսածը)։

(Նոյն էջ 498)․

458

Նիչէական գաղափարներ կան նաեւ մեր առակներուն մէջ. Թէեւ Նիչէի վրայ առանց ո՛եւէ ծանօթութիւն ունենալու, Հայ սրտերու մէջ ծնած են այդ գաղափարները։ Ըստ առակին ընտրելի է չար ըլլալ քան թէ տըխմար.

Չ'ըսեն թի էշ ա,
Թըղ ըսեն թի գէշ ա։

(Նոյն էջ 501)․

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### ԲԱՐԻ ԵՒ ՉԱՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ, ԳԱՂՏՆԻՔ ԶՐՊԱՐՏՈՒԹԻՒՆ, ԱՆԱՐԳԱՆՔ. ԽՐԱՏՔ ՈՐԲԵՐ

459

*Գամառ Քաթիպա յուսահատ ու անմխիթար վճիռ մը կարդացած է որբերու գլխին. սեւ, տխուր է այդ վճիռը, քանի որ ճշմարիտ է ու անվիճելի։*

*Որբերի սփոփիչն է լոկ սեւ հողը.*

(Ոտանաւորներ էջ 102).

460

*Անիրաւ զրպարտութեան օրինակ, կարելի է համարել հայկական սա ծանօթ առակը զոր գործածած է նաեւ Րաֆֆի.*

*Աղուէս կայ, որ ուղտ է կուլ տալիս, բայց գայլի անունն է խայտառակ։*

(Խենթը. էջ 413).

461

*Կան անկոչ գրագէտներ, բանաստեղծներ որ ի սէր իրենց անճարակ գրչին կը զոհեն*

ճշմարտութեան սրբութիւնը, և կը գրեն ամէն այլանդակութիւն. որոնց հասարակութիւնը կարող է Պարոնեանի հետ հարցնել.

Առանց զրպարտելու ստանաւոր գրելը դիւրին բան է։

(Ազգային ջոջեր էջ 207).

462

Պարոնեան՝ Արծրունիի առաջնորդական մտրակող ոգեւորութիւնը նկարագրելով կ՚ըսէ.

Ժողովուրդ մը իւր թմրութիւնէն սթափեցընելու համար կծու յանդիմանութիւններն և խորհրդածութիւններն ուշիմ և խոհեմ գրութիւններէն շատ աւելի օգուտ կ՚ընեն և (Արծրունին) ասոր շատ համոզուած ըլլալուն համար է, որ խրատելու տեղ կը նախատէ և շոյելու տեղ կը խածնէ։

(Նոյն էջ 270–1).

463

Սակայն անհատ մը որ հասարակութեան բարոյական առաջնորդը, բժիշկը, մտաւորական մշակը չէ, ուրիշին դատաւոր հանդիսանալով, իրեն յանցանքը չի կրնար պար-

*տրկել, ուրիշը տգէտ կոչելով. ինքը գիտուն չըլլար։ Լաւ կ'ըսէ Հ. Ալիշան.*

*Ուրիշի պակասութիւնը մեզի առաւելութիւն մը չտար։*

(Բազմավէպ 1849 էջ 67).

464

*Փոքր Մասիսը տեսնելով որ Աւագ Մասիսը, որ անցեալ փառքովը կը պարծի, կը խրատէ,*

*Բայց մի՛ շատ գոռար դու յամպերտ ի վայր*
*Թէ կու ճանաչես զիս քո փոքր եղբայր.*
*Զըլնի որ լերունքն ու բարձունքն ամեն*
*Ի քեզ շուրջ հային ու տընազ անեն.*
*Զըլնի որ ասեն, թէ մի՛ այլ պարծիր*
*Զի հիմիկ փոխուել է Հայոց երկիր.*
*Թէ փառք թէ պարծանք անցել են գնացել*
*Քո բարձըր գըլխէտ ի վայր են սահել.*

(«Հայրունեի» էջ 290).

465

*Խրատողները կրնան կարեւորութիւն տալ Եզնկայ է ոա հիանալի խօսքերուն.*

*Քաղցր է մեղր, բայց ախտալից մարմնոյ վնաս առնէ. օգտակար է խրատ և յանդիմանութիւն*

*բայց որ զդէմս յարեւմուտս է հաստատեալ՝ նմա անօգուտ է։*

(Նշխկ էջ 313).

466

***Աբովեան ժողովրդական գրոյցներով սա ողջամիտ խրատները տուած է.***

*Առաջ լուծն ու կամըրդ պատրաստի՛ր, կալդ շինի՛ր, դէզդ դիզի՛ր, ետոյ գիժ մոզու անկանջիցը բռնի՛ր՝ է։*

*Ցանք անողը առաջ պէտք է գետինը վարի, փափկացնի, ետոյ սերմն ածի. թէ չէ էլածն էլ ղուրդ ու ղուշ կուտի, կմնաս գլուխդ քորելով մատդ լպստելով։*

*Մեղրաճանճին մուխ տո՛ւր՝ որ փախչի, թէ չէ երեսդ ես դէմ անում, հալբաթ որ կկծի, եա-րալու կանի։*

*Բարդին կռացնես, քեզ վրայ կընգնի, գլուխդ կջարդի։*

***Կան պարագայներ ուր դատապարտելի է անգաղտնապահութիւնը, քանի որ անհրաժեշտ կը համարուի գաղտնապահ մնալ։ Կը գրէ Աբովեան.***

*Թէ մէկ բան գիտես, ձեր տան պատերին էլ մաւայ մի՛ ա գնալ, հողին էլ մի՛ ասիլ. ձէն կտան, դու կմնաս մէջումը մեղաւոր։*

(Նոյն էջ 36-7).

## 467

*Խրատը օգտակար ըլլողին համար գանձ է, եթէ մէկը խրատէ կը խրտչի, մեղք է խըրատին. Ալաշկերացիք կ'ըսեն.*

Իշուն բանջար խաշա՛,
Թէ կերաւ՝ մէկ լէ (անգամ մըն ալ) խաշա՛,
Թէ չ'կերա՞ւ գլխուն քաշա՛։

*Կը մեկնեն. «Բարի խրատներ արժան է տալ այն մարդուն, որ անոնց արժէքը կը գիտնայ, կը լսէ ու կը պահէ, և ո՛չ թէ այն մարդուն, որ կ'արհամարհէ»։*

(Ազգ. Հանդէս գիրք VII. VIII, 1901 էջ 466)։

## 468

*Բարի խրատը երբէք արհամարհելի չէ, մանաւանդ, երբ յորդորողը փորձառու է, անկեղծ է։ Հայաստանցիք կ'ըսեն.*

Ան որ (ով որ) անկաճ չէնայ մէծին
կ'ընկնայ մութ հնեծին (խաւար)։

*Ըստ մեկնողին. «Մեծ ու փորձառու մարդոց խրատը չ'լսողներ միշտ կը սխալին ու կը փաստուին»։*

(Նոյն էջ 476)։

469

Գաղտնիքը թեւեր ունի, ազատ թռչուն ճամբաներէ կը ճախրէ ազատօրէն։ Հայաստանցին իրաւունք ունի ըսելու.

Բերնէ բերան,
հազար բերան։

Մեկնութիւնն է. «Գաղտնիք մը, լուր մը մէկ մարդէն միւսը ամենակարճ ժամանակի մէջ ահագին տեղեր կը տարածուի»։

(Նոյն էջ 489).

470

Մարդասպանութիւնը սոսկալի եղեռն մ'է. բայց նուազ ոճիր մըն չէ և զրպարտութիւնը, որ զրպարտեալին հոգին բարոյապէս սպաննել կարելի է համարել։ Հայկական առածը կ'ըսէ.

Հարի (մինչեւ) արընքտէր (մարդասպան) արունք (մարդասպանութիւն) մի էնայ,
Ղումսճըին (զրպարտող) էրկուց կ'էնայ։

Մեկնութիւնն է. «Զրպարտութիւնը մար-

դաւաճանութենէ աւելի վատ է, և անկէ աւելի վատ հետեւանքներ կ'ունենայ»։

(Նոյն էջ 494).



# ԳԼՈՒԽ ԺԳ.

## ՍՓՈՓԱՆՔ. ՅՈՒՇՔ ԱՆՑԵԱԼ ՓԱՌԱՑ. ԺՈՂՈՎՈՒՐԴ։

471

*Արաքսի ալիքներու մէջէն կը լսուի անցեալ փառաց դառն յիշատակը.*

Կար ժամանակ, որ ես էլ՝
Շըքեղազարդ հարսի պէս
Հազար ու բիւր պըչրանքով,
փախչում էի ափերէս։

(Գ. Քաթիպա «Ոտանաւորներ» էջ 32).

472

*Արծաթասէր հայր մը ծերուկի մը կ'ուզէ տալ իր աղջիկը. սա յուսահատ կ'երգէ.*

Դուք երկնային ազատ թըռչունք մի՛ երգէք,
Անցած օրերս դուք ինձ ի յուշ մի՛ բերէք.

(Գ. Քաթիպա «Ոտանաւորներ» էջ 80)։

473

*Շատ ճշգրիտ է բանաստեղծ Քաթիպայի սփոփիչ այս խօսքը թէ.*

*Թըշուառին թըշուառն է միշտ մըխիթար.*
(Նոյն էջ 82).

474

*Սփոփանքը դեղ ու դարման է, բայց ոչ ամէն անգամ ազդու ու հաստու. քունն ալ սփոփանք է, բայց երբ սրտին մէջ խռովք մը բռընկած է.*

*Քունը ի՞նչ սփոփանք, թէ դարդ կայ սըրտում,*
(Նոյն էջ 98).

475

*Երբ ի սէր ազատութեան կը վազէ կարնեցիներուն արիւնը, Պատկանեան նահատակները ոգեւորութեամբ կ՚երգէ, զանոնք կը պաշտէ ու կը սփոփէ հայութիւնը.*

*Բայց մի՛ վըհատիք. այդ անմեղ արիւն,*
*Որ տիպաւ ստրկի ձեր շըղթաներին,*
*Անշուշտ կը դարձնէ նոցա կաւ փըխրուն —*
*Այս անճառելի օրէնք է վերին.*
(Նոյն էջ 252).

476

*Հարկը շատ անգամ կը ստիպէ քիչով գոհանալ. ըսուած է.*

*Առիւծ չըզգօնված տեղում աղուէսն էլ խոշոր գազան է։*

(Խենթը էջ 229)․

477

*Րաֆֆի ժողովրդեան գիտակցութիւնը կը փայփայէ․ իր «Խենթին» մէջ կը գրէ․*

*Ժողովուրդը մի մեծ վարժապետ է։ Նրա մի հատիկ առածի մէջ անհուն փիլիսոփայութիւն կայ։*

(Խենթը 306)

478

*Ըստ Հ․ Ալիշանի, այժմ պարծենալու բանիր չունինք, կը յորդորէ որ ազգային պարծենկոտութեամբ մենք ետամնլ ինքնահաւաններ չըլլանք․ կը հարցընէ․*

*Ո՞րն են մեր պարծանաց աղբիւրներն․ քաղաքակա՞ն զօրութիւն, խելացի՞ քաղաքավարութիւն, գիտութեա՞նց զարգացմունք, երեւելի՞ գործոց համբաւ ու փառք։ Դժբաղդաբար ասոնցմէ խիստ քիչը կը տեսնենք հիմայ։*

(Բազմավէպ 1849․ էջ 66)․

479

*Անցեալ փառքերու յիշատակը երազ մըն է, պատրանք աննշան. լաւ կը գրէ Հ. Ալիշան.*

Երբոր յիշենք թէ մեր պապերուն քով կարասով լեցուն ստակ կար՝ յիշենք ալ որ մեր քսակը պարապ է, երբոր անոնց սամոյրները յիշենք՝ նայինք թէ մեր ուսերն ալ կը տաքնա՞ն...

(Նոյն եր 66).

480

*Մեր անցեալ փառքերը թէեւ ըլլան թոռմած ծաղիկներ, սակայն պաշտելի են.*

Այդ քո աւերակք, Հայոց աշխարհիկ,
Նըշան մեծութեանդ են, թոռմած ծաղիկ.
Թոռմած ես՝ բայց վարդ, ցամքած՝ բայց հալուէ
Ով ըզքեզ օտար ծաղկան հետ փոխէ՝

(Հայրուշեի եր 274).

481

*Սակայն փոքր Մասիս կ'ափսոսայ անցեալ փառքը։ Աւագ Մասիս որ իր նախնի փառքով և յիշատակներով կը պարծի, փոքրը անոր կ'ուղղէ սա խօսքերը.*

Շատ փառք ունէանք, հիմիկ ի՞նչ ունինք,
Աւա՜ղ լուկ ամօթ, միայն նախատինք.

Այլ մեռելութեան Հայոց մահարձան.
Գան գընան դառնան ալիք գետերուն,
Չի՛ դառնայ որդւոց՝ պարծանք հայրերուն։
Մինթէ կու հալե՞ն անցեալ ամառներ
Ձայս մէկ ձըմերանս ահագին սառներ...

(Նոյն էջ 291)․

482

Մեր դիւցազնական պատմութեան մէջ կը յիշուի խիզախն Արտաշէս առաջինը, սա մեր ամենէն մեծ աշխարհակալներէն մինն էր. քսանըհինգ տարի կը թագաւորէ. իր բանակներուն ուժը կ'ահաբեկէ նոյն իսկ Հռովմէական լեգէոնները. ասոնք տեսնելով որ պիտի չի կարենան դիմադրել հայկական սուրերուն, ոսկիով կը կուրցընեն Արտաշէսի զօրավարներու աչքը. ասոնք դաւաճանութեամբ կը սպաննեն զԱրտաշէս, սա իր հոգեվարքի ատեն՝ յիշելով իր անցեալ պերճ փառքը, արտասուելով կը հառաչէ.

Աւա՜ղ փառացս անցաւորի։

Պատմական դարերէ ի վեր այդ հառաչը մեր ազգին մէջ կը մնայ տխուր ու անմեռ զանգիւնով։

(Խոր. Պատմ. 185).

*Հայաստանի մորմոքիչ ժամերուն ողբալի է և ժողովուրդը. կը գրէ մեր ծերունի պատմահայրը.*

*Ժողովրդականք վէսք, ստահակք, մեծախօսք, անվաստակք, այրեցողք, վնասակարք։*

(Նոյն էջ 553).

483

*Իսկ ժողովրդեան պաշտպան մարտիկնե-րը, ըստ Խորենացիին են.*

*Զօրականք անիրաւք, ստապարծք, զինատեացք, պղերգք, հեշտասէրք, անժուժկալք, կողոպտիչք, համաբարոյք աւազակաց.*

(Նոյն էջ 553–4).

484

*Վարդանանց պատերազմէն վերջը, կը տիրէ սոսկալի աղքատութիւն, սով ու արհաւիրք. Հայը ունի իր կրօնքը, անոր սփոփանքով կ'ապրի, կը համբերէ իր խեղճ գլխուն հասած զարհուրելի վշտերուն. արդ չեն միայն կորուսի ՝և դիւցազներ, այլ և կանայք միշտ դիւցազնական խրոխտութեամբ կը դիմադրեն հալածանքի և կոտորածներու*

աղիողորմ վշտերուն. Եղիշէ կանանց այդ առաքինութիւնը կ՚անմահացընէ իր այս տողերով.

Տիկնայք փափկասունք Հայոց աշխարհին, որ գրգեալք և գգուեալք էին յիւրաքանչիւր պաստառունս (դեսպակ և կուպա) և ի գահաւորակս, հանապազ բոկ և հետի երթային ի տունս աղօթից, անձանձրոյթ խնդրեալ ուխտիւք՝ զի համբերել կարասցեն մեծի նեղութեանն։

(Եղիշէ Ը).

485

Արիստակէս Լաստիվերտցի յիշելով Հայաստանի անցեալ փառաց նուաղումը, կ՚ողբայ.

Ո՞ր լսելիք տանիցեն զթշուառութեանս մերոյ զպատմութիւն։

Պատմիչն գորովալից տողերով նկարագրած է մեր այդ անցեալը. Հարազատ ու սրտաճմլիկ է այդ պատկերը, որուն ուրուանկարը կ՚ամփոփենք յետագայ տողերուն մէջ. կը գրէ. «Աշխարհ՝ որ երբեմն ժամանակաւ իբրև զդրախտ անկախիտ առաջի իւր, կանաչազեղ, տերևալից, պտղաբեր, գեղեցկաշուք և երջանիկ անցաւորա-

ցըն ցուցանիւր. քանզի իշխանք նստէին յիշխանական գահու զուարթահայեաց դիմօք, և զզարմանաբեր ծաղկանոցաց բերեալ զնմանութիւն՝ վառ ի վառ գունովք առաջի կացեալք, ուրախական երգոց և բանից միայն լինէին հանդէսք... Այլ և ի վեր տանելի է մեզ բանս, առ հայրապետական աթոռն և առ թագաւորական պատիւ. զի մինն՝ զօրէն ամպոյ խտացեալ ի պարգևացն Հոգւոյն... իսկ թագաւորն՝ յառաւօտինսն յորժամ ի քաղաքէն ելանէր, զօրէն փեսայի որ ելանէ՝ յառագաստէ իւրմէ... զամենայն տեսանելիս յինքն ձգէ... Արդ այժմ թագաւորն անկեալ ի պատուոյ, իբրև զգերի կալանաւոր... Արքունական ապարանքն աւերակ և անմարդի. մարդաբնակ աշխարհն՝ թափուր ի բնակչաց...»

(Հայապատում Բ. էջ 323).

## 486

Ներսէս Մոկացի սա սփոփիչ խօսքն է ըսած, յարմար արդիւնաւոր աշակերտաց.

*Թէպէտ սերմանողքն անկան, սերմանեալքն յոյժ արդիւնացան։*

(Հայապատում Բ, էջ 622).

487

*Պէշիկթաշլեան հիանալով մեր նախնի հայկազուն դարերու փառաց և քաջագործութեանց վրայ, կը գրէ «Կոռնակ» ողբերգութեան մէջ.*

*Ան ատենը Հայութիւն ըսելը, քաջութիւն, յաղթութիւն ու փառք ըսել էր։*

*Իսկ հիմայ...*

*Հիմայ ալ հայութիւն ըսելը ատելութիւն, անմիաբանութիւն ու նախանձ ըսել է։*

(Պէշիկթ. Մատենագրք. էջ 198).



# ԳԼՈՒԽ ԺԴ.

## ՅՈՐԴՈՐ. ԽԻՂՃ, ՊԱՏԻԺ. ՄԱՀ. ՔԱՀԱՆԱՅ, ԵԿԵՂԵՑԻ. ԱՇԽԱՏԱՆՔ, ԾՈՒԼՈՒԹԻՒՆ։

488

*Գամառ Քաթիպա «Շինականի առաւօտեան երգը» ի մէջ, շատ գեղեցիկ յորդորներ ունի. նա իր սրինգով՝ ծոյլ շինական Հայաստանցին գործի կը մղէ.*

*Քանի հով է՝ հունձըդ արա՛ արտումըդ,*
*Հունձըդ հընձէ մի՛ ծուլանար գործումըդ։*
(Գամառ Քաթիպա. «Ոտանաւորներ» էջ 7).

489

*Նոյն բանաստեղծը կը յորդորէ չի ծուլանա՛լ.*

*Մի ծուլանար, ժամանակդ խնայէ՛,*
*Այն պիտի մեզ բոլոր ձմեռը կերակրէ։*
(Նոյն էջ 8).

490

*Լէոբարտին իր մելամաղձոտ քնարով անմահացուցած է մահուան սէրը. փափ-*

*կեկ սիրտը չէ միայն որ կ՚երազէ մահը, այլ և կրակոտ սիրտը. Քաթիպայի ուժգին սազն ալ սիրեր է օրհասական ճգնաժամը, պաղ գերեզմանը և քարէ վերմակը.*

Ա՜խ, մօտեցի՛ր օրհասական օր մահուան.
Բե՛ր քու հետը սեւ հող ու նեղ գերեզման,
Թող սառ լինի իմ նոր տանը յատակը.
Ծանր քարէ վրաս ծածկած վերմակը։

(Գամառ Քաթիպա «Ոտանաւորներ» էջ 20

491

*Գամառ Քաթիպա՝ ի նշան որդիական սիրոյ, Գ. Քահանայ Պատկանեանին Լամարդինեան նմանողութեամբ՝ կը նուագէ քահանային բարի ու գովելի ձիրքերն. Ճշմարտութիւն մըն է այդ բանաստեղծութեան վերջին այս երկու տողերը.*

Քանց սուրբ քահանան էլ ո՞վ կարող է
Արդեօք մեզ համար լինել հայր բարի։

(Ոտանաւորներ էջ 43).

492

*Բայց իր «Տէրտէր» վերնագրով քերթողական երգին մէջ Պատկանեան շատ երգիծող*

կ՚ըլլայ։ Տէրտէրին կը պատուիրէ երանութիւն մը.

Օխտը փոր, օխտը ճէպ տուն ունեցի՛ր,
Ու փիթթուն տարին թաղէ՛ ու կընքէ՛.
Փորըտ կըռէ՛ հաց, ստակը ճէպըտ դի՛ր,
Ատկից ալ թէօյֆէ կեանք մեզի պէ՞տք է։
(Նոյն էջ 309).

493

Եկեղեցական ու կրօնական սիրոյ պաշտութեան համար՝ զհայը կը մեղադրէ.

Պապենական ժամին սէրը
Մեր սրտերէն հանեցինք...
(Նոյն էջ 313).

494

Քահանայք ժողովրդեան առաջնորդներն են, անոնք հաւատացեալ ոչխարներու հոգեկան սփոփանքը, մխիթարանքը ու քաղցրութիւնն են, բայց ո՛վ չի գիտեր թէ այդ դասակարգին մէջ ապրած չեն և անարժաններ, վատեր, որոնք իրենց խեղաթիւր կենցաղավարութեամբ կը գայթակղեցընեն միամիտ ժողովուրդը։ Առ հասարակ մամուլը

տաղող բառերով կը խարազանէ եկեղեցականներու թերութիւնները, և շատ անգամ ինչպէս կ'ընէ ռամիկը. «մէկ ջրով կը լուայ» ամբողջ քահանայական դասակարգը. մենք խիստ կը գտնենք Րաֆֆիի «Խենթը» ի մէջ Ս. Էջմիածնի հոգևորականութեան մասին տխուր նկարագրութիւնը, և անտարակոյս վաղարշապատի վանականներու մասին՝ նոյն միաբանին գրած հետագայ տողերը պէտք չէ ընդհանուր մտքով առնել.

Վանքը ես մտածում էի, գոնէ պահպանում է կրօնական ջերմեռանդութիւնը, բայց այստեղ մարդիկ ոչինչի չեն հաւատում։ Աբեղաների վարքը պատճառում է ժողովրդի մէջ գայթակղութիւն և թերահաւատութիւն։

Եւ շարունակելով յուսահատ ու ջլատիչ փաստեր, կը վերջացնէ խօսքը այսպէս.

Ինչ ազգ, որ յոյսը դրել է միայն եկեղեցականների վրայ նրա կործանման սկիզբը մօտ է վախճանին։

(Խենթը էջ 421).

495

Գ. Արծրունի Edmond About, « Le Progrès » գրքէն քաղելով, առաջնորդող

յօդուածով մը կը հաստատէ աշխատանքի հրաշագործութիւնը. ցոյց կու տայ որ սովորական ամէն մեր գործածած առարկաները ուրիշներու համբերատար աշխատութեամբն եղած են. առանց աշխատանքի չի կայ կեանք, կենցաղ և յառաջադիմութիւն. աշխատանքը բարի է և հրաշագործ. պարզ և խիստ լաւ բարոյական քարոզ մըն ալ կու տայ. «Բնական չէ—կ'ըսէ—վճար չ'գործել պարտքը վճարելու համար, այլ հարկաւոր է լաւութիւն եւս անել»։ Ու իր առաջնորդող յօդուածը կը վերջացընէ, անձնուրաց այս սթափեցուցիչ յորդորով.

Թող կորչէ անունը — Բարի գործը չի կորչի... Աշխատենք։

(Գ. Արծրունու Աշխատութիւնները հատ. I. էջ 49).

496

Ունայնամիտ կամ միամիտ ու անփորձ ազգասիրութեամբ՝ կարելի չէ որ ազգը կենդանի և առողջ մնայ։ Պէտք է աշխատանք գործունեայ և գիտակցական աշխատանք։ Կը գրէ Արծրունին.

*Մեզ հարկաւոր է այժմ աշխատանք, իսկ աշխատանքին կարող է օգնել գրականութիւնը, միայն այս երկու ճանապարհներ ընտրելով. — գիտութիւն և քննութիւն։*

(Նոյն էջ 185).

497

***Հ. Ալիշան պարզ ու նահապետական անկեղծութեամբ մեր ազգին կը կարդայ այս յորդորը.***

*Հետեւողք լերուք ջեղեցիկ կարգաց եւրոպացւոց ի դաստիարակութիւն, ի հնարս յառաջատութեան ազգային ոգւոյ, յընկերութիւնս և ի շինուածս կենցաղօգուտս։*

(Բազմ. 1845 էջ 334).

498

***Մեր նախնեաց փառքով ու լուսով, ոչ կրնանք փառաւորուիլ և ոչ ալ պարծիլ. Հ. Ալիշան կը յորդորէ աշխատիլ ու յառաջդիմել.***

*Պէտք է որ աչուընիս բանանք ու ոտուընիս շարժենք, չէ նէ՝ «Ոչ ճամբան գիտնալն կարաւանը իր իջեւանին կը հասցընէ, ոչ նաւահանգիստը ճանչնալն զնաւը կը մօտեցընէ». կ՚ըսէ Խիկարը։*

(Բազմ. 1819 էջ 67).

499

*Մեր թերութեանց առթիւ կը գրէ Ալի-շան.*

*Նուռ բան մը կայ նէ՝ չուկենք, չէ թէ չըն-չենք։*

*Եւ յետոյ սա Հայրական քարոզը կու տայ.*

*Այն բանն որ մեր մէջ իրաւախոհ ըլլալով կրնանք լմնցընել՝ չհանենք օտարներու առեան, մէկզմէկ խայտառակելու համար։*

(Բազմ. 1849 էջ 131).

500

*Հ. Ալիշան կը քաջալերէ Հայութիւնը. կը յորդորէ Հայու սիրտ ունենալ.*

*Սիրտ ի սիրտ, ձեռն ի ձեռն՝ եղբարք, պըն-*
*դեսցին,*
*Առ մի նպատակ լեալ ուշ ի կուրծ.*
*Շըրթունք հրաշունչք համախոհ միտըս ծըն-*
*ցին,*
*Մի բաբախիւն ի լանջս հանուրց.*

(«Հայրունի» էջ 186).

501

*Կը յորդորէ ցվերջ մեր կեանքին՝ աշխատիլ հայութեան համար.*

Գուն գործեսցուք մահուչափ ի բուին.
Ո՜հ Հայաստան մի՛ զանխուլ կաս լըռին.
Արասցուք և քեզ յազինս անուն պերճ,
Մինչչեւ մեզ կենաց հասեալ իցէ վերջ,
Օ՜ն և օ՛ն եղբարք եռանդուն
Կեցցէ՛ յաւէտ ազգ հայկազուն։

(Նոյն էջ 186).

502

*Նահապետի երգերուն մէջ մահուան յիշատակը անվրէպ է. սիրուն քերթողը միշտ մահուան տխուր ուրուականը կ'երազէ. կ'երգէ. «Հայոց աշխարհէիկ» ը և կ'ողբերգէ իր հեռաւոր մահը.*

Բայց Նահապետիս ի՞նչ ասեմ ծերուկ
Որ եմ քան զամէն ծաղիկ վաղանցուկ.
Իմ զարունս անցել ու հասել աշուն,
Ցամքած տերեւուկս ըսպասեմ հովուն՝
Թէ ե՞րբ ի լերանց ծոցուն փըչէ խոր
Զըգէ անկըսկիծ զիս ի մահուն ձոր։

(Հայրուշնի էջ 269).

503

*Խնդութեամբ հայ հողին կուտայ իր հայկական աճիւնը.*

*Խրնդութեամբ կ'երթամ քեզնից՝ Հայաստան,*
*Քեզնից առած հողս՝ ի քեզ տամ թաղման։*
(Նոյն էջ 269).

504

*Բազմաւաստակ ճակատին հանգչելու փափուկ հող կ'ուզէ.*

*Ծեր Նահապետիդ՝ տուր կակուղ հողիկ*
*Որ զքեզ պինդ սիրեց, Հայո՜ց աշխարհիկ։*
(Նոյն էջ 274).

505

*Խաչվէմերուն վրայ երկինքի օրհնութիւնը կը ցօղէ.*

*Ահա տեսանք զքարերն Հայոց,*
*Մեր պապերուն մահուան օրոց.*
*Գերեզմաններըն լուռ էին*
*Խաչվէմքն ի քուն աղօթէին.*
*Տէրն ողորմի հանգուցելոց*
*Եւ ամենայն երկրիս Հայոց։*
(Նոյն էջ 278).

506

Հայրենասիրի համար քան պատերազմական դաշտին վրայի մահն՝ չկայ աւելի գերազանց վախճան. կ՚երգէ Նահապետ.

Վասըն քո ընկան, աշխա՛րհ իմ Հայոց,
Կըտրիճք աննըմանք վեհք հիւսիսայնոց։
(Նոյն էջ 318).

507

Շատերը խղճի անդորրութեան համար խոյս տուած են աշխարհքէն և անապատ քաշուած։ Հայ պատմութեան մէջ նշանաւոր օրինակներ ունինք. այսպէս մտածեր ու գործեր են Գրիգոր Լուսաւորիչ, Տրդատ և Հանճարեղն Մեսրոպ, որուն համար Խորենացին կը գործածէ սա գեղեցիկ բացատրութիւնը.

Ի նաւահանգիստ փութայ նաւ խռովեալ, և անձն ժուժկալ խնդրէ զանապատ։
(Խոր. Պատմ. էջ 479).

508

Մարդ է, մահկանացու է. բայց կան անմահներ, իրենց գործերով յաւիտենական-

*օրէն ապրողներ. առանցմէ էր Սահակ Պարթեւ, որուն համար կը գրէ Խորենացին. թէ,*

Մահկանացու ծնեալ, անմահ զիւրն յիշատակ եթող։

(Խոր. Պատմ, էջ 542).

509

*Խորենացին իր ուսուցչին մահը կ'ողբայ.*

Կորեաւ ժողովողն, թագեաւ նաւահանգիստն, ելիք օգնականն, լռեաց ձանն յորդորեցուցիչ։

(Խոր. Պատմ. էջ 550).

510

*Երբ Սահակ Մեսրոպ կը վախճանին, Հայաստանի կացութիւնը շատ ողբալի էր. Խորենացին կ'ողբայ զանոնք և Հայաստանեաց եկեղեցին և եկեղեցականները. չկան հարազատ հոգեւորականներ, այլ.*

Վարդապետք տխմարք և ընդինքնահաճք, անձամբ առեալ պատիւ և ոչ յԱստուծոյ կոչեցեալ, արծաթով ընտրեալք և ոչ Հոգւով, ոսկեսէրք, նախանձոտք, թողեալ զհեզութիւն, յորում Աստուած բնակէ, և գայլք եղեալ՝ զիւրեանց հօտս գիշատելով։

(Նոյն էջ 553).

511

*Իսկ անապատականներուն համար կ'ըսէ.*

*Կրօնաւորք կեղծաւորք անձնացոյցք, սընափառք, պատուասէրք քան թէ աստուածասէրք։*

(Նոյն էջ 553).

512

*Վիճակաւորաց համար կը գրէ.*

*Վիճակաւորք հպարտք, դատասացք, գրաբանք, ծոյլք, ատեցողք արուեստից և վարդապետական բանից, սիրողք վաճառաց և կատակերգութեանց։*

(Նոյն էջ 553).

513

*Իրենց կոչումին ու պաշտօնին անարժան և վատաբարոյ քահանաներուն համար, յարմար է Վարդանայ սա խօսքը.*

*Ո՞վ գարշելի, զքեզ կով գիտէի. և արդ զքեզ պատարագաւղ ո՞վ արար.*

*Այս է պատմութիւնը. «Քահանայ մի գողացաւ զկով այրի կնոջ մի և էած ի յախոռն. և կին յիմացաւ. և առէ առ քահանայն. տէր, ժամ է մահուան իմոյ. եկ*

յախտոն, որ խոստովանիմ. և յայն ժամ անցուց զկօշն ի ներսի տուն և անդի ի ժամատուն և անդի յեկեղեցին. և ասէ կին. տէր, առաջի բեմին պարտ է ասել զմահու խոստովանութիւն. և հանին զկօշն ի բեմն և քարշեցին զվարպայգուրն ի դէմ. իբրև մատն յեկեղեցին և նստան. յայնժամ կին ի վեր կալաւ զվարպայգուրն և ասէ ընդ կօշն. ո՞վ զարշելի, զքեզ կով գիտէի. և արդ զքեզ պատարագաւղ ո՞վ արար. առայ ինձ։ — Ցուցանէ առակս, թէ այսպէս համբերութեամբ և իմաստութեամբ պարտ է առաջնորդին և վարդապետին զամենայն ինչ քննել. և ստուգել ամենայն և յիմանալ զվարս նոցա. և որ չէ արժանի պատարագի, ծածկայբար յանդիմանել և ոչ տալ թոյլ կրկին խաչել զորդին աստուծոյ անարժան պատարագաւն և հաղորդութեամբն»։

(Ժողով. Առակ. Վարդանայ 73–4)·

514

Աշխատանքի մասին հանրածանօթ է կրրիայի և նապաստակի սա առակը. «Օր

մը Նապաստակը կը խնտար կրիային վրայ, և երեսը կը զարնէր անոր խիստ ծանրաշարժութիւնը։ Եկուր ըսաւ կրիան դաշինք կնքենք. ես քեզմէ շատ կը հաւնիմ այն ծառին, որ անկած կը տեսնես արտին ծայրը։ Պատասխանեց Նապաստակը որ մէկ կրիայ մը ի՞նչպէս պիտի Նապաստակին հետ վազելու ելլէ, քու խելքիդ զարկեր է, եղբայր, գնա բանդ։ Աս կարգէ դուրս բանին դիս հրամցընելէդ առաջ, պէտք էր մտմըտալ, թէ ես չորս անգամ ցատկեմ այնչափ ճամբայ կընեմ, որ դուն չորս շաբթուան մէջ չես կրնար ընել։ Հոգ չէ, ըսաւ կրիան. և ատեն չկորսնցընելով սկսաւ երթալ։ Իսկ Նապաստակն առանց հոգալու թողուց որ կրիան առաջ անցնի. երբեմն խաղ կընէր, երբեմն ետ կը դառնար, և խոտ ուտելով կը զուարճանար. ինքզինքն կըսէր թէ ես ապահով եմ, որ կորսնցուցած ժամանակս շատով կրնամ շահիլ. սակայն կրիան միշտ առաջ կ'երթար։ Երբոր տեսաւ Նապաստակը թէ երկու մաս անցեր է որ կրիան հասնի ծառին, շատ

*մը ցատկեց կայծակի պէս վազեց. բայց բանը բանէն անցեր էր. վասն զի կրիան հոն հասնելու վրայ էր. և ինչ որ ըրաւ նապաստակը չկրցաւ, կրիան առաջ հասած էր. և այսպէս կորսնցուց իր դաշինքը »։*

*Այս առակէն, Եզովբոսի Թարգմանիչը կը գրէ սա խրատը. Թէ,*

Աշխատութիւն միշտ չարունակ,
Յաղթէ առնու ըզյաղթանակ։

(Եզովբոս առակք էջ 177).

515

*Ով որ չաշխատիր, կրնայ նկատողութեան առնել Եզնիկի սա խօսքը.*

Որ գարուն ի հանգստեան կայ, ձմեռն ի սովոյ և ի սառամանեաց սատակի։

(Եզնիկ էջ 300).

516

*Ծոյլերը հանգստութեան պէտք չունին.*

Աշխատելոցն հրամայեաց զհանգիստն, և ոչ որդնապարար մարմնասիրացն։

(Նոյն էջ 306).

517

*Բայց աշխատանքը և գործունէութիւնը ուրիշի պէտք չէ փաանել. Հակառակ պարագային տուժողը կրնայ յիշել Եզնկայ սա խօսքը, թէ.*

Անգործ մեղու՝ լաւ է քան զժիր պիծակ։

(Եզնիկ 310).

518

*Մենք կրնանք ուշադիր ըլլալ Խիկար իմաստունի սա խրատին.*

Որդեակ մի լինիր կարի քաղցր որ կլանեն զքեզ, կարի դառն որ թքանեն զքեզ այլ հեզ և հանդարտ ի գործս գնացից քոց յամենայն բան։

*Կը խրատէ դարձեալ՝ ժամանակէն օգուտ քաղել.*

Որդեակ մինչդեռ կաւշիկտ ի ոտտ է կոխ զփուշն և արայ ճանապարհ ոտից քոց։

(Խիկար էջ 15).

519

*Եկեղեցական կարգը անարժանաբար վարող և սուրբ խորհուրդները պղծող քահանայն հարելի է կոչել.*

Զոմզոմա.

Կիրակոս պատմիչ՝ գրելով Յովհ. Սարկաւագ վարդապետի կենսագրականը, կը յիշատակէ այդ անունով մի սրբապիղծ եկեղեցականի. «Դէպ եղեւ ոըմա (Յովհ Սարկաւագ վարդապետին) վասըն անառակ գնացիցն որոշել զոմն ի խորհրդական պատարագէն, Ջոմզոմա անուն. և նա փոխանակ զղջալոյ և ապաշխարելոյ՝ խորհէր սպանանել զսքանչելին». և նոյն իսկ կը փորձէ ալ։ Սարկաւագ վարդապետը վախնալով, զայն քահանայական աստիճաններու մէջ դեռ աւելի կը բարձրացընէ. գայթագղութիւնը մեծ կ՚ըլլայ։ «Եւ հրամայեաց եկեղեցպանին առնել զնա աւագ երէց։ Բազում քրթմնջիւն էր վասն այնորիկ, որպէս թէ անարժան էր, և նա կաշառս էառ և եմոյծ զնա յեկեղեցին։ Իբրեւ եհաս ժամ խորհըրդական պատարագին, եւ թշուառականն ի բեմն անդր զի մատուսցէ պատարագ, և եկն վարդապետն ի գաւիթ անդր ի մէջ ատենին հանդէպ սրբոյ սեղանոյն, եբաց զգըլուխն իւր, սկսաւ աղօթել, և վաղվաղակի ոգի չար եմուտ յայրն աներկիւղ, և ընկեց

*զնա ի բեմէ անտի յատակս տաճարին, և սկսաւ լլկել զնա յոյժ. և հանին զնա արտաքս ի տաճարէ անտի, որպէս զՈզիա, և երկիւղ մեծ անկաւ ի վերայ տեսողացն »:*

(Հայապատում Բ էջ 359).

520

*Ցանդուգն, դեռաբուսիկ քարոզիչ ու մեծամեծս վարդապետող քահանայներուն կարելի է ըսել Ս. Գրիգոր աստուածաբանի սա խօսքը.*

Յիսուս երեսնամեայ մկրտեցաւ, և դու յառաջ քան զմօրուսդ վարդապետես:

(Հայապատում Բ. էջ 378).

521

*Խելացի յորդորները տխմար ու ապառաժ գլուխներու վրայ չեն ցաներ.*

Այլ մեր բանք առ իմաստունս են հասակաւ և հըմտութեամբ:

(Հայկ. դիւցազն. էջ 96).

522

*Եղովայի սիրելի ժողովուրդը ոտնակոխ ըրաւ պատուիրանք, օրէնք ու բարոյականու-թիւն։ Եւ պղծութիւնը, գազրութիւնը ապա-կանեց աշխարհքս. պէտք էր պատիժ։ Արար-չին պատիժը մեծ է և տիեզերական. Աստուած սարջացած կը գոչէ.*

**Բարկացայ 'նդ արարչութիւնս. ի սպառ ի սպուռ սատակեցից։**

(Նոյն էջ 115).

523

*Հարազատին և սիրելւոյն մահը կսկծալի, աղեխարշ սոսկում մ'ունի, սակայն մեռելին հետ կարելի չէ մեռնիլ. կ'ըսէ Բագրատու-նին.*

**Ոչ ի դէպ ընդ մեռելոցըն մեռանել և կենդա-նեաց,**
**Պիտոյ եմք տան և ազգի և աշխարհի առհա-սարակ։**

(Նոյն էջ 220).

524

*Մեր ճակատագրի անջնջելի ճշմարտութիւնն է իրագործելի մահն մահկանացուաց.*

*Որ այսօր յերկրի շըրջին՝ վաղիւ ի խոր հողին անյուշ,*
*Եւ ի սիրտըս սիրելեաց վաղ քան յերկրի մոխրին անհետ.*
*Ո՛վ բուռն և անողոք հէք մահացուաց ճակատագիր։*

(Նոյն էջ 224).

525

*Սակայն երանի անոր որ առաքինութեամբ և քաջագործութեամբ կը նահատակուի ի սէր հայրենեաց և մարդկութեան.*

*Նըմա բիւր երանի, զի քաջութեամբ և քաջ անուամբ*
*Ի վերայ երկնից Սրբոյն և հայրենեաց նահատակեալ։*

(Նոյն էջ 226).

526

*Մահուան համար սիրուն և նկարագեղ օրինակ՝ կարելի է ընդունիլ Ամարիալայ տապալումը։ Հայկ լսելով վաղամեռիկ որդւոյն*

*մահը, շանթեռանդ սրամտութեամբ, կայծակնաբար կ'իջնայ Ամարփալայ վրայ. որ*

*Թըմբրեցաւ, ընդարմացաւ, զբըբօքն անկաւ սեաւ մառախուղ,*

*Երերէր երկին երկիր, տուընջեանն ի մութ թաթաւէր ջահ։*

(Հայկ. դիւցազն էջ 327).

## 527

***Մխիթար Աբբահայր մահուան համար սա անպաճոյճ բանաստեղծական պարզ ու ճշգրիտ բացատրութիւնն ըրած է.***

*Դրօշակ և նշան մահուն, որ է սպիտականալն հերաց։*

(Հառք էջ 89).

## 528

***Անարժան, արծաթասէր եկեղեցականնեբուն համար, Մխիթար Աբբահայր ճշգրտօրէն կը գրէ, թէ.***

*Այր աւագակաց լինի եկեղեցին Քրիստոսի՝ յորժամ եկեղեցականք միայն վերահայեցմամբ արծաթոյ ծառայեն ի նմին։*

(Նոյն էջ 125).

### 529

*Կեանքն ալ ծաղիկ մըն է որ անպատճառ պիտի թարշամի. Դաւիթ Սալաձորցի իր ծաղկանց գովասանքն ընելուն, փափկիկ պարզութեամբ կ՚երգէ ճշգրտօրէն.*

Կեանքըս նման ծաղկըներուն, որ կը բացուի
առաւօտուն և չորանայ մինչ իրիկուն։
(Համով–Հոտով էջ 285).

### 530

*Տան հարազատ ու անմեղ ուրախութենէն զրկուած հայ հարսը, իր պանդուխտ եարին ետեւէն կը հառաչէ, կը գոչէ.*

Տուն էկուր, տուն էկուր, աղաս, տուն էկուր
Աշխարհս ոչինչ է, մեզի ալ մեռնիլ կայ։
(Նոյն էջ 299).

### 531

*Հայաստանցին իր ղարիպին մահը սրտաշարժ երգով կուլայ.*

Ղարիբ մեռար, ղարիբ թաղեցին.
Ղարիբ լըցին հողիկն ի վրադ.
Եկին օտար մարեր ի վրադ,
Եկին օտար քուրեր ի վրադ։
Եկին ու վայ բերին բերողին (ծնողին).

Վա՜յ բերողին, վա՜յ մեծցնողին.
Վա՜յ լուսալուս արթուն կեցողին.
Մաղկատը սըրտին, ծիծը տուողին։
(Նոյն էջ 300).

532

Հայ ընտանիքը իր պանդուխտ հարազատը չուզեր որ օտար հողին մէջ թաղուի, եկուր կ'ըսէ.

Եկո՛ւ քեզ բաղչան թաղենք, ու մաղենք հողդ շարերով.
Հողիդ վըրան ծաղիկ ցանենք, ցանկենք կարմիր վարդերով։

(Նոյն էջ 301).

533

Հայաստանի սպաւորը ջախջախուած սըրտով կ'ողբայ իր հարազատը.

Լա՜մ, գահերու վրայ հերկ անեմ.
Արցունքովս ցօղեմ, ցաւերովս ցանեմ։

Ակնցի ղարիպը մեռնելուն, մայրը անոր յիշատակը կու լայ դառնագին.

Շարուած մարգրիտ էիր, կտրեցար կուտ կուտ եղար։
Քո՛ւրուրտանք, վրա՜յ էկէք, ժողվեցէ՛ք որ ա՛լ չր մնայ։

Մեռաւ, վասխաթ ըրաւ, գիս ճամբուն վրայ թաղեցէ՛ք։

Քարըս նշանով դրէք, ցաւերս վըրան գըրեցէք։

Նոյն քարուքանդ հոգեւոր մայրը՝ պարձեալ ողբագին կ'աղերսէ.

Եկուր երթանք լեռնակն ի վեր, ես կանչելով, դուն փնտռելով,

Չինք չը գտնանք, հող կը գտնանք, իր ապռած քարըն համբուրենք։

(Նոյն էջ 301–3)․

534

Հայաստանցին կ'ըսէ.

Ամառ որ պառկես հովեր.
Ձմեռ կը փցուս (սատկեցնես) կովեր։

Առակս կը նշանակէ. «Ծուլութիւնը ապագայ կեանքի սպանիչն է»։

(Ազգագր. Հանդէս գիրք VII, VIII, 1901 էջ 457)․

535

Տխուր ծուլութեան ներհակ, գեղեցիկ խըրատ մըն է հետագայ առածս,

Ամռան քար՝
Ձմռան պաշար։

*Հարստութեան լայն օրերուն՝ փոքրիկ իւրերն պէտք չէ արհամարհել. «Աջող և առատ ժամանակի ամէն մէկ անկարևոր համարուած բան՝ նեղ օրի համար խիստ պիտանի է»։*

(Ազգր. Հանդես նոյն).

536

*Մեր մէջ երբ մէկը ուտելու պատրաստ է և գործելու ծոյլ, հայ առակը անոր կը յիշեցնէ.*

Ոն (ով) ի ճաշ.
Գորգիկն (Գրիգոր) ի ճաշ.
Ոն ի հէչ (պարապ)
Գորգիկն ի մէջ։

(Նոյն էջ 476).

537

*Տոկուն երկարատեւ աշխատանքը հրաշալիք կը ստեղծէ։ Ալաշկերտցիք ըսած են.*

Ուշ եղնի,
պուպուշ (գեղեցիկ) կեղնի։

(Նոյն էջ 477).

538

*Կարելի է աշխատիլ և վարձկան չըլլալ․ բայց կարելի չէ աշխատիլ և իր արդար հացը չպահանջել։ Ալաշկերացին կ՚ըսէ․*

*Անհախ (անվարձ) կ՚եղի (կը լինի)*
*անհաց չ՚եղի։*

(Նույն էջ 488)․

539

*Ծոյլը կը փախչի գործէն բայց ո՛չ հացէն․*

*Բան դրին՝ փախաւ․*
*Հաց դրին՝ հասաւ։*

(Նույն էջ 489)․

540

*Ծոյլը արդիւնաւորին յարգը չի կրնար գիտնալ․*

*Բրդող գինայ․*
*Քրթող (ուտող) ի՞նչ գինայ։*

*Ճիշտ է․ «Աշխատութեան դժուարութիւնը աշխատողը գիտէ․ և ո՛չ թէ անոր արդիւնք վայելողը»։*

(Նույն էջ 489)․

541

Ապրելու համար պէտք է աշխատիլ, չարաչար կրել ու կռուիլ, այս է եղած մարդուս ճակատագիրը։ Առակը կ'ըսէ.

Ջըգտի՛, պըրի՛,
մ'ընկի՛ մեռի՛ (մի՛ ընկնիր մեռնիր)։
(Նոյն էջ 496).

542

Մահը ամենուն մօտ է, բայց ոչ ո՛ք կը հաւատայ։

Մահ մօտ,
իսան (մարդ) անաւօտ (անհաւատ).
(Նոյն էջ 497).

543

Աշխատութեան յաղթանակը տոկուն վախճան ունենալն է. դժբաղդաբար ամէն գործ երբ աւարտելու վրայ է. անտանելի կ'երեւի, և այս պատճառաւ առակ է եղած.

Ցետին բանիկ (բան-գործ),
Հոգեհանիկ (հոգի հանող)։
(Նոյն էջ 498).

## 544

*Ժողովուրդը ընդհանրապէս քահանան շատակեր կը կարծէ. և անոր համար այս առակը շինած է.*

Սար ու ձոր
Իրեցու (երեց) փոր։

*Այս առակի լուրջ իմաստը՝ քահանային գաղտնապահ մնալն է։*

(Նոյն էջ 502).

## 545

*Մայրը իր կարիճը, եարը իր սրտի հատորը և քոյրն ալ իր եղբայրը կոծելու համար այս երգն ունին.*

Աղբարն է քրոջ սրտին երակը,
Անուշ խօսք մ'ուր խօսի, կ'առնէ՛ մուրատը։
Եկո՛ւր, ա՛ղբար, եկո՛ւր, ի՛մ աղբիրի ջուր.
Սիրուտ չեմ կշտացեր, ո՞ւր գնացիր. տուն։
Սիրուտ մուրթն իմ նստեր, լուս մի՛ն արէ՛ դուն,
Սիրուտ պատն է փլեր, եկու շարէ՛ դուն։

*Ղարիպին մահը դեռ աւելի սրտաշարժ է և սրտաճմլիկ.*

Ամա՛ն, աման, իս Իսկիւտար անցուցէք,
Սեւ ծովը ճեղքեցէ՛ք ճամբան ցցուցէք։
Տարէ՛ք իմ հօրս դուռը,

Վար դրէ՛ք, պահ մի լացէ՛ք։
Մարիկս ալ ի դուրս բերէ՛ք,
  Տարուրած աչուին լացուցէ՛ք։
Աղբարս ալ ի դուրս բերէ՛ք,
  Տամպուռին թելը կըցեցէ՛ք։
Խարուկս ալ ի դուրս բերէ՛ք,
  Խռեւէն ծամը քակեցէ՛ք։
Ծամը քակին, եարը կու մեռնի,
  Ոսկին քակին, տունը կ'աւըրի։

(Հնութիւնք Ակնայ 475).

## 546

*Սգաւոր մայրը կ'ողբայ իր տաղանդաւոր գրագէտ որդին.*

Իմ խելէմքէր (գրագէտ) որդե՛կ, խելէմքէր,
  Խելէմիտ մատներն է թափեր։
Խելէմիտ մատներն է թափեր,
  Տիվիթիտ (թանաք) քովիկն է նեխեր։

(Նոյն էջ 485).

## 547

*Մայրը կ'ողբայ իր մանկիկը.*

Կազուն ձագը—տանեն, մարը կու ճչճէ,
  Գիշեր ցորեկ կասկամ կուլլի կու կանչէ։
Կանչէ՛ հէյ, մարիկ, կանչէ՛,
  Ատ խըտար կանչելտ ալ ի՞նչ է։

(Նոյն էջ 487).

# ԳԼՈՒԽ ԺԵ․

## ՓՈՓՈԽԱՄՏՈՒԹԻՒՆ, ՀԱՍՏԱՏԱԿԱՄՈՒԹԻՒՆ, ՏԱՐԱՏԵՒՈՒԹԻՒՆ, ՔԱՋԱՍՐՏՈՒԹԻՒՆ, ԱՆՁԱՐԱԿՈՒԹԻՒՆ։

548

*Րաֆֆին իր «Խենթը»ին մէջ կը պատկերացնէ նահապետական արիասիրտ ծերունի մը՝ Խաչօն. սա կը բանայ իր մեղուանոցին փեթակները, կը դիտէ մեղրը, սակայն չարաճճի մեղուները զիրենք խնամող այն ծերունիին երեսը կը կճեն. տղան իրեն կը մօտենայ, կը դիտէ այդ տեսարանը. Հայրը կը հեռացընէ զայն, զգուշացընելով որ մեղուները չի կճեն, չի ցաւցընեն. տղան կ՚ըսէ, թէ զքեզ ալ չե՞ն կճեր, քու մարմինդ ալ չի՞ ցաւիր. և այս պատասխանին մէջ Րաֆֆի կը նկատէ հայկական քաջասրտութիւն մը.*

*Իմ մարմինը վաղուց սովորել է նրանց խայթոցներին — «Թող իմն էլ սովորի»։*

(Խենթը էջ 50)․

Այդ էր տղուն ալ պատասխանը։ Բաֆֆի ցոյց կու տայ, որ հայը վարժ է տանջանքներու, հարուածներու, և այդպէս քաջարի կը մնայ նախորդ սերունդը։

549

Մեր նոյն վիպասանը, «Խենթի» համակրելի դիւցազ Վարդանին բերնին մէջ՝ կը դնէ քաջասրտութեան օրինակ սա խօսքը.

Ով որ ջրի մէջն է մտնում, թրջելուց երկիւղ չըպիտի ունենայ...

(Խենթը էջ 334).

550

Քաջասիրտ անձերէն կը պահանջուի քաջագործութիւն. անոնց ձեռքը ընկած զէնքը մոգական գաւազան մը պիտի ըլլայ.

Սահմանք քաջաց, զէնն իւրեանց, որքան հատանէ՝ այնքան ունի։

(Խոր. Պատմութ. էջ 46–7).

551

Քաջասրտութեան առաջին օրինակը ազգիս Նախահայրն տուած է, նոյն ինքն Հայկ.

սա չի հնազանդեցաւ Բելայ հրամանին. իր ողորմելի թանակով դիմադրեց, և նախ քան զպատերազմ, ըսաւ իրեններուն.

Չի կամ մեռցուք, և աղխ մեր ի ծառայութիւն Բելայ կացցէ, կամ զաջողութիւն մատանց մերոց ի նա ցուցեալ, ցրուեսցի ամբոխն, և մեք եղիցուք յաղթութիւն ստացեալք:

(Խոր. Պատմ. էջ 56).

552

Ընդօրինակելի, հաստատակամ և պերճեցիկ քնաւորութեան տիպար մը ունինք յանձին Սահակ Պարթեւի: Նախարարները ամէն ջանք կը թափեն, որ հայրապետն Սահակ իրենց հետ միանալով, Պարսից թագաւորին մատնէ հայոց Արտաշիր կնամոլ թագաւորը: Պարսիկը շատ բաներ կը խոստանայ, եթէ մատնէ. սակայն բնութեան աէր հայրապետը կը պատասխանէ.

Զիա՞րդ վասն սնափառութեան և իշխանասիրութեան չարաբանիցեմ զընկերէ:

(Խոր. Պատմ. էջ 530–1).

553

*Փոփոխամտութեան օրինակ կը համարինք լուսնի կերպարանափոխութիւնը։ Կ'ըսէ առակը.*

*Լուսինն ասաց առ արեգակն, թէ քո որդին եմ ես. ի՞նչ կլինի, որ մին հանդերձ կարես վասն իմ։ Պատասխանեաց արեգակն, թէ ո՞ր հասակի չօր կարեմ վասն քո, զի օր մի ոչ ևս ի միոյ չափի։*

(Ժողով. Առակ. Վարդանայ էջ 330).

554

*Մենք ունեցեր ենք դիւցազներ, մեր պատմութիւնը զարդարուած է առասպելական դիւցազնութեամբ. սակայն ամենէն մեծ քաջագործը, Տրդատն է. դիւցազնութեան, քաջասրտութեան օրինակ, զինքը և իր գործերը կրնանք յիշատակել. իր քաջութիւնները առակի տեղ անցած են, և ժամանակին իրեն համար կ'ըսուէր.*

*Որ սիգալովն աւերեաց զթումբս գետոց և ցամաքեցոյց իսկ ի սիգալ իւրում զյորձանս ծովուց։*

(Ագաթանգեղոս ԺԱ).

555

*Սակայն նոյն պատմիչը կը վկայէ, որ այսպիսի դիւցազ մը մինչդեռ կ'ուզէ բռնաբարել զչքնաղագեղն Հռիփսիմէ, բայց սակայն անկէ կը յաղթուի. Հրեշտակային կուսութիւնը կը խրոխտայ, կը դիմադրէ Տրդատեան դիւցազնութեան. կ'ըսէ պատմիչը*

*Յաղջկանէ միոջէ պարտեալ վատթարանայր։*

(Ագաթանգեղոս ԺԵ).

556

*Խիզախ սրտի և կորովի ու քաջասրտութեան օրինակ է Սմբատ Մամիկոնեանի սա խօսքը.*

*Ո՞ւր էք քաջք, յառաջ մատիք։*

*Վախտանգ արհամարհելով այս հրաւէրը քաջախիզախ, կը պատասխանէ. «Կա՛ց հարճորդի. Թէպէտ և զբազումս ջնջեցեր, սակայն այսօր չպրծնուս ի ձեռաց քաջարանցս». բայց սակայն ընդհակառակն Վախտանգն է որ դիաթաւալ կ'իյնայ Սմբատայ տէգով։ Յովհան Մանդակունի Սմբատայ քաջագործութիւնը լաւ նկարագրած է։*

(Հայապատում Բ էջ 210).

557

*Դաւիթ Անհողին, Աղուանից վրայ իշխելուն, Դուինի Ապլուլ–Սէվար անհամար զնդերով Դաւթի դէմ պատերազմ կը մղէ. Դաւիթ կը կազմէ եպիսկոպոսներով, քահանայներով, եկեղեցականներով և զինուորներով բանակ մը, կրօնականք ձեռքերնին խաչ ու աւետարան առած կը սկսին պատերազմը, աղօթելով.*

**Արի՛ Տէ՛ր, օգնեա՛ մեզ, և փրկեա զմեզ վասն անուանդ քում սրբոյ։**

*Քաջաբար կը պատերազմին և դիւցազնաբար կը յաղթեն։ Եւ «Արի՛ Տէ՛ր, օգնեա»ն մեր ամէն ճգնաժամերուն յուսածարծ սաղմոսն կը դառնայ։*

(Մատթ. Ուռհ. ԾԴ).

558

*Մեր պատմութեան մէջ դիւցազնական խիզախ խօսք մը մնացած է, Թաթուլ վանանդացիի սա պատասխանը առ Տուղրիլ Սուլթան.*

**Թէ իմ է զարկածն՝ չէ կենաց։**

Թաթուլ զայս լսաւ, ու երբ Սուլթանը պայման կը դնէր որ պատերազմի մէջ Արսուրանի պարսից ամիրայի վիրաւորեալ որդին եթէ ապրի, կալանաւորեալ Թաթուլն ալ կ՚ազատի իր ճիրանէն. մեռաւ տղան, որով և Թաթուլ սպանուեցաւ։

(Արիստ. Լաստիվ. ԺԶ).

559

Պէշիկթաշլեան իր «Մահ քաջորդւոյն» երգով, անուշ խրոխտութեամբ կը բամբառհարէ Զէյթունցիին դիւցազնութիւնը. ահա՛ լեռնորդին կը սկսի իր հայրենատրոփ երգը.

Դու զո՞վ խնդրես, մա՛յր իմ անոյշ,
Ե՛կ մի դողար, մօտեցի՛ր հոս.
Անլաց աչօք դիտէ զորդիդ
Ու իւր վէրքերն արիւնահոս։
Խումից մայրեր թող լան՝ ու դուն
Ուրախ լուրեր տար ի մեր տուն։

(Պէշիկթաշ. Մատենագրք. էջ 102).

560

*Դիւցազը որ քաջաբար կը պատերազմի, ու կը նահատակուի, անկարօտ է մահարձանի. կ'երգէ Պէշիկթաշլեան.*

*Ո՛չ այլ շըքեղ արձանագիր ո՛չ տապան,*
*Զինքըն մինակ թողուցինք իւր փառքին հետ։*
(Նոյն էջ 103).

561

*Հայկ մինչ կ'ըմբոստանայ Բելայ դէմ, ու պատերազմի կը պատրաստուի, իր մարտիկներուն խրախոյս կու տայ.*

*Օրինակ արձանացուք ազգաց և զկնի մեր եկելոց՝*
*Կամակար նահատակել ընդ ապիրատ գոռոզաց դէմ*
*Ցանձանց վերայ և հայրենեաց, կալ ինքնօրէն աղիկամիս։*
(Հայկ դիւցազն էջ 16).

562

*Քաջ են քաջազունք, քաջագործ են դիւցազունք, սակայն Արարչէն երբ կը բղխի հրաշագործ կորով և քաջութիւն, գերբնական են Անոր հրաշազօր արարքները. որ ըստ բանաստեղծ Բագրատունիին,*

Եւ միով տրոփեալ ոտամբն յերկրիս հարաւ՝ չեղեաց ըզգունոտն։

(Նոյն էջ 116)․

## 563

Քաջը, քաջասիրտը դիւցազնօրէն անձնատուր կ'ըլլայ պատերազմին, Բագրատունին Հ․ Արսէն, շատ լաւ ըսած է․

Պատերազմ ապաքէն քաջաց է կեանք առաքինեաց։

(Նոյն էջ 338)․

## 564

Դիւցազնական է տան և ազգին համար անձնանուիրաբար գործել ու մեռնիլն․ մեր նախնի մարտիկները այդ դիւցազնութիւնը ներշնչած են․ կը գրէ Հայկ դիւցազնի բամբռահարը․

Ի վերայ նահատակեալ, հարց և որդւոց և ամուսնաց՝
Այսպէս որդիք Թորգոմիս, որդւոց որդիս հեղցեն զարիւնս։

(Նոյն էջ 339)․

565

*Պատերազմի մէջ վիրաւորանքը վատու-թիւն չէ, այլ նահատակութիւն քաջարի.*

Վէրք մարտից քաջութեան արի լանջաց են նշանակ։

(Նոյն էջ 402).

566

*Երբ հայրենիքի պահանջները կը ստի-պեն դիւցազնական անձնանուիրութիւն, մա-հը. պէտք ենք արհամարհել, թէ ոչ ըստ քերթողին,*

Որ ըզմահ արհամարհել ոչ գիտէ, չէ նա սերմն Հայկայ։

(Նոյն էջ 427).

567

*Ինքնին լոկ մարմնական քաջութիւնը, այնքան արդիւնք մը չունենար, երբ զուրկ է հոգեկան արիութենէ.*

Զի մարմնոց քաջութիւն՝ Ջըլաց կորովք օգ-նեն ինչ ոչ,
Ուր ոգւոցն արութիւն՝ բարք և կրօնք կիրթ ոչ կայցեն հուպ։

(Նոյն էջ 469).

568

*Անճարակ մարդկանց համար, Ալաշկերտցիք ունին այս յատուկ առակը.*

*Աշխարք արօտ.*
*մենք մէջ կարօտ։*

(Ազգր. Հանդէս Գիրք VII VIII էջ 456).

569

*Անձնանուէր դիւցազնութիւնը միշտ նպատակ մը ունի. սակայն երբ նպատակին հասնելու յոյս չի կայ, Ալաշկերտցին յատուկ առածովս կը զղջայ.*

*Ամա՜ն, ամա՜ն, տուր ինձ իմ գտակ.*
*որ պտի տէր (պիտի տայիր) ինձ պէտք չէ էն պսակ*

*Պսակէն կը հրաժարի, կը գոհանայ իր պարզուկ գտակով։*

(Նոյն էջ 456).

570

*Գործէն հրաժարիլը քաջութիւն չէ, դիւցազնական տոկունութեամբ յարատեւութիւն պէտք է։ Առակը կ'ըսէ.*

*Մուրուս թողել ղօլա եա (դիւրին է),*
*ամա, կնտել (ածիլել) չաթին ա (դժուար է)։*

*Կը մեկնուի. «Գործէ մը հրաժարիլ, զայն չկրնալ աջողցնելու համար, աւելի ամօթալի է, քան բնաւ չ՚սկսել»։*

(Նոյն էջ 474).



# ԳԼՈՒԽ ԺԳ.

## ԱՆՁՆԱԿԱՆՈՒԹԻՒՆ, ԱՊԵՐԱԽՏՈՒԹԻՒՆ ԵՐԱԽՏԱԳԻՏՈՒԹԻՒՆ։

### 571

*Անհատներ, ըլլա՛ն գիտուն, ճարտար, հարուստ, քաջ դիւցազն, սակայն եթէ անոնք մի միայն լոկ անձնականութեան համար աշխատին և ո՛չ յօգուտ ազգին, Պատկանեան հրատապ հայրենասիրութեամբ կը թքնէ անոնց երեսին.*

*Թըքել ենք քու ալ, մըտքիդ (կամ թըրիդ, գըրչիդ, լեզուիդ, ձեռքիդ, ուսմանդ) ալ վըրան։*

(Նոյն էջ 159).

### 572

*Ըստ բանաստեղծ Պատկանեանի, Րաֆֆի երբ ողջ էր, կը հալածուէր, ատելի էր. հայը անոր երախտագէտ չէր, մեռնելէն վերջը պաշտելի եղաւ ան. կ'երգէ.*

*Հայքըս, որ հոգւով վաղուց ենք մեռած,*
*Միշտ դիակներ ենք մեր կեանքում սիրած.*

*Սուտ չէր խօսքը մեր ասած պապերէն –*
*Գընա՛ դու մեռի՛ր, արի՛ քեզ սիրեմ։*

(Նոյն էջ 248).

573

*Եւ «Հարիւրամեակը» վերնագրով քերթուածին մէջ, ընդհանուր առմամբ ցոյց կու տայ որ,*

*Կիտուն մարդոց մենք խեւ ասինք,*
*Հալածեցինք մեր մէջէն,*
*Տայմա վըրան պամպասեցինք,*
*Վազ պերինք մեր եախայէն։*

(Նոյն էջ 313).

574

*Րաֆֆի, անձնական շահուն՝ անհոգաբար անձնատուր կը համարի հայութիւնը. անփոյթ միութեան սուրբ գործին.*

*Ամեն մարդ իր գլխի տարտն է քաշում, ամէն մարդ իր անձին համար է մտածում. ուրիշին ինչ լինում է, թող լինի. նրան ինչ հոգ, երբ ինքը հանգիստ է, երբ իր մազին չեն դիպչում։ Բայց չեն իմանում տխմարները, որ «մէկը ամենի համար է, իսկ ամէնը մէկի համար»։*

(Խենթը էջ 67).

575

***Անձին շահը և փառքը ամէն բարիք ոտքի տակ կ'առնէ և ամէն կեղծիքի խունկ կը ծխէ։ Այս առթիւ կարելի է իբրև ընդհանուր ճշգրիտ հայելի ցոլացնել Պարոնեանի սա պաղպաջուն տողերը, ուր ամէն անխուր դասակարգ կրնայ տեսնել իր պատկերը.***

*Մոռնալու չէ որ ապրելու համար ամէն մարդ իրեն ընկեր մը ստեղծելու հարկին մէջ գտնուած է. խմբագիրներ որ ձմեռուան ածուխ գնելու համար Լուսինեան կ'ստեղծեն. երեսփոխաններ որոնք իրենց շահուն համար ամէն օր նոր իրաւունքներ կ'ածեն. բանաստեղծներ որ օր մը չեն կարող ապրիլ եթէ իրենց համար գովեստներ չքաշեն իրենց բարեկամներու բերնէն. դատաւորներ որոնք արդարութիւնը չտեսնելու համար կուրութիւն ի լոյս կ'ածեն. վաճառականներ որ ժամուան մը մէջ ստութեան երկու հազար հաւկիթ մէկէն կը ձգեն. գրավաճառներ որ օրացոյց մը ծախելու համար ճարտասանութեան ստեղծող կը հանդիսանան. խաբեբաներ որ խաբելու համար իրենց աչերէն այնչափ արտօսր կը թափեն, որուն վրայ անգղիական ռէվաւթէյլըն զրահաւոր նաւը կրնայ ճամբորդութիւն ընել. երգիծաբաններ որ ոչ թէ ապրելու, այլ չմեռնելու համար իւր ընթերցողներուն ծիծաղին արարիչ կ'ըլլան. գրագէտներ որ կտոր մը հացի համար ժամուան մը մէջ իրենց ըղեղէն*

*խմբագիր, դասատու, մատենագիր, թարգմանիչ կը հանեն… վերջապէս այս ամէնը չէ՞ որ ստեղծեց Ազգային ջոջերը:*

(Ազգային ջոջեր 188–9).

576

*Պարոնեանի յիշեալ գրքին մէջ, ապերախտ աշակերտներու համար կայ սա հեգնական տողերը.*

*Եթէ Մեղուի պէս ուրիշ աշակերտներ ալ ունինք, կը փափաքինք, որ անոնք Կիւբեղէի առջինեկներուն և կամ Բեթղեհէմի զաւակներուն հետ մեկտեղ ծնած ըլլային:*

(Նոյն էջ 212).

577

*Հ. Ալիշան երբ Ռափայէլեան վարժարանի աւարտավարժ աշակերտներուն կ'ուղղէ իր հռետորական յորդորները՝ յայտ յայտնի կ'իմացընէ, որ Մխիթարեան վաստիարակի նպատակը երախտագիտութիւն պահանջել չէ, վասն զի.*

*Անխառն յամենայն երկրաւոր յուսոյ գործէ զազգասիրութիւն մեր, և քաղցրացուցանէ մեզ*

զծախելն և զծախիլ՝ զի միայն զազգ մեր շահեսցուք։

(Բազմ. 1848. էջ 166).

578

Հ. Ալիշան ապերախտութիւն է կ'ըսէ մոռնալ մեր ազգային պարծանքները. մեր նախնեաց փառքերուն ապերախտ չըլլանք.

Ապերախտութենէ մեծ մեղք ու գարշելի մոլութիւն չկրնար ըլլալ։

(Բազմ. 1849 էջ 131).

579

Եւ Եզովբոս կը գրէ. «Գայլը երբեմն ոչխար մը կուտէ անանկ որկրամոլութեամբ որ մէկ ոսկոր մը որկորին մէջ կը մնայ. շատ ջանք ըրաւ որ օգնութիւն մը գտնէ հանէ, չըկրցաւ, ուստի որչափ որ աղաչեց ուրիշ կենդանիներուն, փուճ եղաւ. վասն զի ամէնքը կը թողուին անանկ՝ որ կանչէ, և մէկը ցաւակից չեղաւ իրեն ցաւին. օ՜խ եղաւ կըսէին, թող տանջուի իր անյագութեամբը։ Միայն կռունկը անոր անուշ խօսքերէն խաբուելով՝ ուզեց օգնութիւն ընել և

իր երկայն կտուցքը խօթեց գայլին բերանն ու որկորին մէջէն քաշեց հանեց ոսկորը, որ կը խղդէր զգայլը: Յետոյ կռունկը հատուցում ուզեց այս մեծ բարերարութեանս որ գայլն իրեն խոստացեր էր հատուցանելու: Աս բանիս գայլը պատասխան տուաւ խնդալով. բարեկամ, դուն չե՞ս մտածեր ինծի հատուցում ընելու. որովհետեւ կեանքը ինծի պարտական ես. երբոր կտուցքդ իմ բերանս էր՝ կրնայի վիզդ փրցընել: Գնա ապերախտ, շատ երանելի ես որ իմ բըկէս դուրս հանեցիր կտուցքդ »: Թարգմանիչը այս տոթիւ՝ կը գրէ հետեւեալ առակը.

Ինչ որ ընես ապերախտին,
Բան չերեւնար իր ծակ աչքին:
(Եզովբոսի առակք էջ 95).

580

Վատ նախանձը կը պղծէ ամեն սրբութիւն. մեր պատմական ապերախտութիւնը ազգային պատմութեան մէջ արձանագրուած է սեւ, մրոտ տառերով. անիրաւ ու ահռելի ոճիրներ՝ որոնք, փառասիրութենէ և զզուելի

նախանձէն ծնունդ առած են։ Հիանալով և սքանչանալով կը կարդանք Մամիկոնեան Մուշեղի քաջագործութեանց նկարագիրը։ Ի՛նչպէս վարձատրուեցաւ այդ դիւցազը։ Բուզանդ պատմիչն կը գրէ, թէ Վարազդատ թագաւորի սնուցիչն Բատ, նախանձելով Մուշեղի վրայ, զանազան զրպարտութիւններով Մուշեղը թագաւորին առջև լրաւ ու դաւաճաններով զայն սպանել տուաւ. Մուշեղ մեռնելու ատեն կը բացագանչէ.

Ի վերայ բազում իմոց վաստակոցն արեան և քրտան, և սլաքօքն գքիրտն ջնջելոյ, ա՞յս հատուցումն եղեւ ինձ...

Երախտաւորները ապերախտութիւմբ երբ վիրաւորուին, կարող են իբրև առակ յիշել Մուշեղի այն սրտաճմլիկ խօսքը։

(Բուզանդ Ե. ԻԴ).

581

Պէշիկթաշլեան իր «Բողոք» վերնագրով մէկ քերթուածին մէջ ցոյց տուած է ընդօրինակելի երախտագիտութիւն մը, դէպ ի իր Մխիթարեան դաստիարակները, զոր կը պաշտէ անկեղծօրէն. կ՚ըսէ.

*Յորչափ շրնչեմք զօդ ի ռընգունս,*
*Խաղայ արիւն մեր յերակունս,*
*Եւ ցորչափ զայս․երգէ Պըւէտ,*
*Մխիթարեանք կեցցե՛ն յաւէտ։*

(Պէշիկ. Մատեն. էջ 44).

582

*Անձնականութիւնը, անձին շահը պաշտօղին համար կարելի է առակ ընել Աբովեանի սա խօսքը.*

*Ամէն մարդ հէնց իր ձին ա քշում. էլ առաջը մտիկ չի՛ անում՝ թէ ո՞վ ա կանգնած։*

(Վէրք Հայաստանի էջ 36).

583

*Նման օրինակներ են նոյն վիպասանի սա խօսքերն.*

*Ուրաքն իր դեհն ա տաշում. ծառն իր տակին շվաք անում։*
*Ջուրն իր ձկանը պահում. հաւն իր ճուտին մուղայիթ կէնում։*

(Նոյն էջ 36-7).

584

*Ջուա, անկեղծ և գործօն ազգասէրին՝ ժողովուրդը ինչո՞ւ երախտագէտ չըլլայ.*

Մէկ ազգի աչքը բաց արա՛. դուզ ճամփէն որն ա, էն ճամփովը տա՛ր. սար ու ձոր մի՛ քցիլ. դու Նրան քո սէրը ցոյց տուր, տեսնեմ՝ թէ սա քեզ չի՛ սիրիլ։

Սակայն դժբախտաբար մեր ազգին ճակատին զարկեր են ապերախտութեան դրոշմը. և ինչո՞ւ. անհատականութիւնը կրնայ ապերախտ ըլլալ, բայց ոչ հանրութիւնը. մենք լաւ առաջնորդենք, վարձատրութիւնը, երախտագիտութիւնը իր ոտքով կու գայ։ Կը գրէ վիպասանը. «Ճամիէն գտի՛ր, առուն սրբի՛ր, քար ու քօլ գլնի ածա՛, տեսնիմ՝ թէ ջուրն ինքն իրան կգա՞յ, թէ չէ՛։

(Նոյն էջ 88).

585

Հայ դպիրը, հայ քնարը մխիթարութիւն, վարձատրութիւն և երախտագիտութիւն չի կրնար երազել։ Յովհաննէս Քուչուբէզեանց դառնացած սրտով կ՚ողբայ գրական մշակի վաստակը. կ՚երգէ և կը հառաչէ։

Գրի՛ր – փոխարէն պիտի ստանաս
Քանի սեւ չայի անարգ հացի գին...
Այս է քո վարձը, այս լաւ իմանաս,
Թէկուզ ճնշուի, մաշուի քո հոգին։

(Սոխակ Հայաստանի էջ 20).

586

*Եւ յուսահատ կը հարցնէ.*

*Բայց քո տքնութեան ինչ վաստակեցիր...*
*Ո՞ւմից գոհութեան գէթ խօսք լսեցիր.*
*Այո. ոչ ոքից... յետոյ իմացար,*
*Թէ ինչպէս մեծ մեծ կորուստ ունեցար։*

(Նոյն էջ 21).

587

*Ապերախտներուն կարելի է յիշեցնել Ալաշկերտցիներու սա առակը.*

*Կաթն ի կթոց (կովկիթ),*
*Հորթիկն (հորթ) ի փողոց։*

*Մեկնութիւնն է. «Բարիքը ստանալէ յետոյ՝ բարերարը արհամարհել»։*

(Ազգր. հանդէս Գիրք VII VIII 1901 էջ 468).

588

*Ապերախտին պէտք է յիշեցնել.*

*Նստեմ գոգդ,*
*Ճողեմ (փետտել) մուրուքդ։*

*Մեկնուած է. «Մէկին խնամքը, բարիքը վայելելով մէկտեղ՝ անոր մեծ վնասներ հասցնել»։*

(Նոյն էջ 475).

589

Առակն իսկ հաստատած է որ բարերարութեան պտուղը, փշո՛տ ապերախտութիւնն է։ Ալաշկերացիք կ'ըսեն.

Աղէկ՝ վատին.
վատն՝ աղէկին։

Մեկնութիւնն է. « Բարութիւններուն միշտ վատութիւններ կը փոխարինուին փոխադարձաբար »։

(Նոյն էջ 487).

590

Քաղաքագէտին յենարանն է ապերախտութիւնը։ Ապերախտ էր Բիւզանդիոնը։ Ներսէս Մեծը յիշելով իր ազգին բիւզանդական կայսրութեան համար տածած մտերմութիւնը, աջակցութիւնը և միանգամայն յիշելով նենգաւոր ապերախտ բիւզանդացւոց դիւանագիտական դարանները, կը հառաչէ.

Ապերա՜խտ Բիւզանդիոն, քո վարմունքը՝ աններելի կը մնայ իմ սրտում... Դու վատութեամբ վարձատրեցիր իմ հայրենիքի մատուցած ծառայութիւնները...։

(Սամուէլ էջ 292).

# ԳԼՈՒԽ ԺԷ·

## ԾՆՈՂՔ· ՄԱՆՈՒԿ· ԿԻՆ· ՊՍԱԿ· ԱՂՋԻԿ· ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԻՒՆ· ԾԵՐՈՒԹԻՒՆ· ԹՄՐՈՒԹԻՒՆ։

591

*Ընկճեալ ազգին ամենէն կարեւորը և կենսականը՝ է խիզախ փողը, որ չի թողուր քընանալ, թմբրիլ անտարբերութեան մէջ։ Մեր վիպասանները և բանաստեղծները, ըմբըռնելով ընդվզող ձայնին մագնիսականութիւնը, անդադար որոտացին արթնութիւն և սթափեցուցին մայր Հայաստանը իր խորունկ քնէն։ Գամառ Քաթիպա երգիծանքով կ'արթնցընէ Հայութիւնը.*

Դէ՜հ, իմ պառաւ մայր Հայաստան.
Քընէ՛ անոյշ ու անդորր.
Այսպէս յաւէրժ քեզ կը կարդան
Ազգ ու ազինք օ՛ր օ՛ր օ՛ր...

(Ոտանաւորներ էջ 78).

592

*Ըսած է, որ երբեմն Հոմերն ալ կը քընանայ. այսպէս նաեւ ամէն մեծ մարդ կրնայ ունենալ թմրութեան թոյլ ժամեր. Րաֆֆի հետեւեալ սովորական խօսքն է ըսած.*

Ամենամեծ մարդիկն անգամ ունենում են խոշոր թուլութիւններ։

(Խենթը էջ 229).

593

*Նահապետին համար թմբրիկ է հայութիւնը. Իր քնարով զայն կ՚ուզէ արթնցընել.*

Հա՜յ ազգ, հա՜յ հանճար, քունն է զքեզ բռներ.
Քուն թանձր և երկայն. բայց ոչ մահ անյոյս.
Ո՞վ արթընցընէ զազգն իմ ի նոր լոյս.
Ես հազարներ տամ այնոր, տամ բիւրեր,

(Հայրունի էջ 344).

594

*Եւ կը յորդորէ.*

Ո՜վ, ո՞վ կանգնէ զքեզ հանճար հայրենի...
Ե՛լ, կանգնէ՛ դու զքեզ, զաւակ ես երկնի.
Լո՜յս ծագէ մըթէդ, ե՛լ կանգնի՛ր ի վեր.
Հերիք քընացեր.
Գիշերտ է անցեր...։

(Նոյն էջ 344).

595

Արտաշէս Բ. միշտ նախանձելի կեանք մ'ունեցաւ, թէեւ դժբաղդաբար յետոյ ներքին անհաւատարմութիւնները պղտորեցին անոր արքայական և ամուսնական փառքն ու վայելք։ Պատմութիւնը բանաստեղծական խանդով կը նկարագրէ անոր հարստութիւնը. ոսկի, մարգարիտ և երջանկութիւն կը տեղայ, երբ իրեն հարս կու գայ Ալանաց աչագեղն կոյս Սաթինիկ.

Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեան Արտաշիսի, տեղայր մարգարիտ ի հարսնութեան Սաթինկանն։

Խորենացին կը գրէ. «Քանզի սովորութիւն իսկ էր թագաւորացն մերոց, փեսայութեամբ ի դուռն տաճարին հասանել՝ դահեկանս ճապաղել իբրեւ զհիւպատեանն հոռոմայեցւոց. սոյնպէս և թագուհեացն յառագաստին՝ մարգարիտ»։ Պերճագեղ հարսնութեան միակ օրինակ կարող ենք բերել Գողթան երգիչներու այդ հարսներգն։

(Խոր. Պատմ. էջ 266).

596

*Մեր առաջնորդներու փողը որքան ալ ուժով գոռայ, սակայն թմբրութիւնը շատ անգամ մեռելական ըլլալով, ի զուր կը յոգնին լեզուները. Խորենացին աւաղելով իր ժամանակուան բարքերը, պատմագիրն ափսոսալով նախարարական գունդին ոճիրը և ապերախտ անտարբերութիւնը, վերջապէս յուսահատելով, կ'ըսէ.*

Դադարեցէ բանս, որպէս աշխատութիւն կրեալ՝ յականջս լինել խօսեցեալ մեռելոց։

(Խոր. Պատմ. էջ 372).

597

*Ծնողքը նուիրական է, ծնողասիրութիւնը պարտականութիւն. նոյն իսկ թռչունները մեզի ծնողասիրութեան օրինակներ են. կը գրէ առակախօսն Վարդան.*

Արագիլն և ճայեկն և ոպոպն զծերացեալ հայրն իւրեանց դարմանեն, սնուցանեն և ծառայեն. մինչեւ մանկանայ կամ մեռանի։

*Կը մեկնէ առակախօսը. «Թէ պարտ է մեծարել և դարմանել զծնողս և հնազանդիլ»։*

(Ժողով. Առակ. Վարդանայ 229).

598

*Կանանց մասին Եզովբոսը սա առակը կը պատմէ. «Էրիկ մարդ մը սկսեր էր հալեւորնալ, և կը նայէր որ հաճելի ըլլայ իր երկու սիրելի կնկանցը, որոնց մէկը պզտիկ էր ու տարիքը քիչ, իսկ մէկալը տարիքը առած տեսքն ալ գացած էր։ Ասոնք կ'ախորժէին որ էրիկնին իրենց յարմարցընեն, և երկուքն ալ իրենց ախորժակին հետեւելով, մեծ հոգ ունէին որ փոփոխ սանտրեն անոր գլուխը։ Բայց մարդուն բանը շատ դէշ եղաւ, վասն զի պզտիկ կինը երբ անոր գլխուն վրայ կը տեսնէր ծերութեան նշան ճերմակ մազ, բարկանալով կը փետտէր որչափ որ գտնէր։ Մէկալ կնիկն ալ երբոր կը տեսնէր սեւ մազ, բոլորը կը փետտէր։ Եւ այսպէս քիչ ժամանակի մէջ մարդուն գլուխը կնտակ դարձաւ»։ Եզովբոսի առակներուն թարգմանիչը այս պատմութենէն կը հանէ սա առակը, թէ.*

*Վայ որ մտնէ զինքըն կանանց,*
*Հանեն յիւրմէ խելս ընդ հերաց։*

(Եզովբոսի առակք էջ 198).

599

*Եզնիկ Ծերունեան համար գրած է.*

*Ծերութիւն և հիւանդութիւն պատերազմ է ժամանակեայ. զի մարմնոյ զօրութիւն պակասեալ է, վտանգն բազմացեալ, և հանգիստն սակաւ, և կամ բնաւ իսկ ոչ. և սատանայ բորբոքէ զբոց ցասմանն, և ատել տայ զկարգն, հայհոյել զառաջնորդն, տրտնջել զեղբարցն։*

(Եզնիկ էջ 308).

600

*Հեթանոս Խիկարը կը խրատէ կնիկներէն զգուշանալ.*

*Որդեակ մի համբառնալ զաչս քո տեսանել զկին գեղեցիկ յունել և ծարուրել, ցանկանայցես ի սրտի քում և թէ տացես նմայ զամենայն ինչս քո, առաւել ի նմա ոչ ինչ գտանես, այլ դատապարտիս ի յաստուծոյ և ի մարդկանէ, քանզի նման է նայ գերեզմանի որ ի վերոյ գեղեցիկ լինին և ի ներքոյ լի ժանտայհոտութեամբ և ոսկերաւք մեռելոց։*

(Խիկար էջ 11).

601

*Խիկար իր որդւոյն խորհուրդ կու տայ.*

*Որդեակ մի խնայեր զորդիդ քո ի ծեծ, զի*

ծեծ մանկանն այնպէս է. որպէս աղբ ի պար-տիզի։

(Նոյն էջ 18).

602

Կ'ըսէ պարծեալ.

Փորձեայ զորդին քո ի քաղց և ի ծարաւ. և եթէ կարող իցէ, ապա տուր զինչս քո ի ձեռին նորայ։

(Նոյն էջ 45).

603

Կնոջ առջեւ պէտք է գաղտնապահ մը-նալ, առակ ու պատմութիւն կը հաստա-տեն կանանց անգաղտնապահութիւնը. ի-մաստունն խիկար կը պատուիրէ.

Զգաղտ բան քո կնոջ մի յայտնել, զի տկար է և փոքրոգի և նայ յայտնէ կարեւորացն և դու արհամարհիս։

(Նոյն էջ 48).

604

Տղոց պարզ ու նահապետական խրատ մըն է խիկարի սա պատուէրը.

Որդեակ սիրեաց զհայր քո որ ծնաւն զքեզ և

*զանէծս հաւր և մաւր քո մի առցես զի ի բարութիւն որդւոց քոց խնդասցիս։*

(Նոյն էջ 49)։

605

*Վիպասան Աբովեանը՝ ծերերու համար ըսած է։*

*Խաչը գիտենայ՝ էս հալևորներն ու պառաւները քանի մեծանում են, խելքըները էլ հետըները կորցնում։*

(Վէրք Հայաստանի էջ 15)։

606

*Նոյն վիպասանը ծերերու դէմ ունեցած ատելութիւնը դեռ առաջ մղելով, կը յանդըգնի ու կ'ըսէ. «Մէկ կորչում էլ չե՛ն էս անատամ հալևորները, էս ծերերը», պատճա՞ռ... «որ մենք գինջանանք, մեր քէֆին նայենք»։ Ծերերու մասին սա սովորական զրոյցն ալ կը գործածէ.*

*Իրանք ջանից ընկել են. իրանց ջահելութիւնը մոռացել, ու չեն էլ ուզում, որ մենք էլ ամեր օ՛րը քաշենք։*

(Նոյն էջ 25)։

## 607

*Հարազատաց սէրը հրեշտակային է, վայելք և երկնային հեշտանք. Բագրատունին Հ. Արսէն հիանալով կ'երգէ այս սէրը.*

*Ո՜հ որպիսի՛ սէր սըրտից և միամիտ մտերմութեան*

*Աղապատանք և համբոյրք տիրեն յօրհնեալ ազգատոհմին,*

*Որպիսի՛ գութ և խընամք առ միաբուն ազանց սերունդ.*

(Հայկ դիւցազն էջ 378).

## 608

*Սուրբ Գիրքը կը պատմէ Դարեհ Թագաւորի երեք պատանի սենեկապաններու իմաստնալից խօսքերը։ Մին կ'ըսէր, յաղթող ու զօրաւոր է գինին, միւսը՝ թագաւորը, իսկ երրորդը՝ Զօրաբաբէլը՝ կը պնդէ թէ «Յաղթօղ և զօրաւոր են քան զամենայն կանայք»։ Այս երրորդի խօսքը ընդունելի կ'ըլլայ. ան կը մեկնէ իր խօսքը. կը հարցնէ. «ո՞ է որ յաղթեալ ունի և տիրէ ի վերայ ամենեցուն։ Ո՞չ ապաքէն կանայք»։ Եւ այս համազումը նոյն իսկ հայ*

հէքիաթներու մէջ կ'ապրի: Սրուանձտեանն իր «Համով-Հոտովին» մէջ կը նկարագրէ «Բատիկան և Խան Բօղու» հէքիաթը, ուր բանգէտ մարդու մը բերնէն կը լսուի թէ.

Մարդ կնիկով կը յաղթուի, ջանավարը գինիով.

(Համով-Հոտով էջ 128).

609

Ազգականութիւն՝ մօտաւոր կամ հեռաւոր, երբ արիւնը, հարազատ պապենական միեւնոյն արիւնը երակներուն մէջ կը տրոփէ, անոնց սէրը կոյս է և անկեղծ. Ակնցի հայը կ'երգէ.

Եղբայրն է քրոջ սրտին երակ, անոյշ խօսի
ու տայ մուրազ:
Եղբա՜յրն անոյշ թէ եղբօրորդին. երկուքը մէկ
կու նըմանին:

(Նոյն էջ 303).

610

Պսակի, հարսնութեան երգեր, հայ հանդիսականներու բերնին մէջ շատ են. կուսական պարզութիւն, անճոռոմ սիրունութիւն ունի

*այլ երգերու տպաւորութիւնը։ Մոկացիք պար բռնելով կ'երգեն այս հարսներգն.*

*Սիրող պառկեր մէջ խոտնոցին.*
*Ձեռնիկ ծոցին ափն երեսին։*
*Խաբար տարէք մեր զոքընչին,*
*Աղջիկ գընաց խետ կըտըրճին։*
(Նոյն էջ 306).

611

*Կը հասնին Մոկաց հարսներ, երկնից աստղեր. զուռնանը անոնց կը հրամայէ.*

*Զարկէք խաղցէք, կընկոտիք, տըղէք,*
*Քաղցր ու բաղարջ, խունկ մոմ խանէք,*
*Տէրտէր կանչէք գայ բուրվառով.*
*Պըսակն օրհնէ Աւետըրնով։*
*— Աստուած բարի վայելում տայ.*
*— Աստուած մէկ բարձի ծերացուցէ՜։*
(Նոյն էջ 207).

612

*Հայը՝ փափկիկ, գեռաբուսիկ կոյս աղջ-կան օրրանը օրօրելուն, կ'երգէ անոր ապա-գայ արժանիքը.*

*Աղջիկ ունեմ հունարի,*
*Գլխին ունի ջունարի.*
*Աղջիկ ունեմ հունարի,*

Բոյլ սալբ ու չունարի։
Աղջիկ ունեմ հունարի,
Տալ չեմ հազար թումանի,
Գլխին ինչքան մազ ունի,
Էնքան իլթիմազ ունի.
Բուրդ բերէք բաժինք անի,
Ուղտ բերէք բարցի տանի,
Գեղով կգան խնամի,
Տալ չեմ աղջիկս տանի։
Որ խնամին քեզ տանի,
Բաս քու մէրն ի՞նչ անի։
Ով կարայ որ քեզ տանի,
Իր մօր ձեռից դուս հանի։
(Ազգագր. Հանդէս Գիրք XI եջ 41).

613

Հայ գուսաններ Հարսերու, աղջիկներու համար շատ անմեղուկ ու պատկառուկ երգեր նուիրած են.

Ես ղուշ եմ թեւս դեղին,
Ման կգամ եարիս գեղին,
Իմ ջանս ղուրբան կտամ։
Իմ եարիս ցաւող տեղին։
(Նոյն եջ 48).

614

Վիճակահանները աղջկանց համար երգած են.

*Համբարցըմը գալիս ա,*
*Ծաղիկը ցնծալիս ա,*
*Համբարցըմ կանչող ախչիկ,*
*Ձէնդ ծլվլալիս ա։*

(Նոյն էջ 52).

615

*Գործի ժամանակ թմրութիւնը, թուլութիւնը արդիւնքի կորուստ վատնութիւն է. այդ պարագային ալաշկերտցին կը յիշեցնէ առակը.*

*Ջուր մի (մինչեւ) Շուշան զարդըրուի.*
*Ժամերը կ'արձըկւի (կ'աւարտի).*

*Այս է առակիս պատմութիւնը. «Անի քաղաքին մէկ թաղը հայ ազնուականուհի Շուշան օրիորդի ապարանքը կը գտնուի եղեր, ուրկէ բաւական հեռի էր եկեղեցին, Ախուրեանի միւս կողմը. Օրիորդ շուշանը չափազանց եկեղեցասէր և իբրեւ Եւայի թոռներէն մին՝ չափազանց պճնասէր էր։ Ամէն առտուն երբ պատարագին կ'երթար՝ նախ իր արդուզարդը կ'ընէր, և ապա դուրս կ'ելնէր։ Հանդիսաւոր օր մ'ալ Շուշանը սովորութեան համաձայն, սկսաւ արդուզարդը. և*

*այս անգամ աւելի գեղեցիկ, որուն հանդէսին համապատասխանելու համար, ու ճամբան ինկաւ, սովորականէն քիչ մը ուշ։ Եկեղեցին հասած ատեն ժողովուրդը արդէն սկսած էր ցրուել, ժամերգութիւնը աւարտած էր, ու Տուշանը բնականաբար զըրկուած։ Կը նշանակէ նաեւ—աւելորդ զբաղումը կարեւոր գործերէն կը զրկէ մարդս»։*

(Ազգր. Հանդէս Գիրք VII VIII 1901 էջ 479).

616

*Հայաստանի բերանը, աղջիկներու մասին ժլատ է բարի խօսելու. առակով իսկ չարչարուած է անոնց նշանակութիւնը. և ինչո՞ւ, վասն զի տան ապրանք չեն, այլ օտարին.*

Աղջիկ ա.
Էլու (ուրիշ) պատ ա։

*Մեկնութիւնն է. «Աղջիկները ուրիշների տան շինութեան համար են, և ո՛չ իրենց հօր տան»։*

(Նոյն էջ 487).

617

*Աղջկանց և կնիկներու համար, հայ առակը չուզեր շողոքորթ երեւնալ. համարձակութեամբ կ՚րսէ.*

ինչքան օձ կայ տտան
էնքան ֆէլ (խորամանկութիւն) կայ կնկան.

*Մեկնութիւնն է. «Կնոջ հնարագիտութիւնը չարագոյն և տեւական է, օձին թունաւորելու յատկութեան չափ, իսկ աղջկան աւելի»։*

(Նոյն էջ 492).

618

*Այր և կնկան միջեւ ծագած կռիւները տեւական չեն, այս պատճառաւ հայաստանցիք ըսած են.*

իրիկ կնիկ կռուեցան,
խեւ գիտցաւ թէ բաժնուեցան։
(Նոյն էջ 492).

619

*Բայց լաւ է որ*

կնիկ արծուու ձեռ ընկնի՝
ու (վատ) մարդու ձեռ չ՚ընկնի։
(Նոյն էջ 494).

620

Կինը զկին կը ճանչնայ և կրնայ խաբել. և ասոր համար ըսուած է.

Կնիկ կնկան սատանայ,
կնիկ կնկան քահանայ։

(Նոյն էջ 494).

621

Մերերը օրհնած շրթունքով երիտասարդաց կ'ըսեն.

Հալիս (վիճակիս) տիրանաս (հասնիս),
Տարդիկս (ցաւս) իմանաս։

(Նոյն էջ 494).

622

Հայ հարսնեւորներու տաղերը և նուագարանները հարս ու փեսի համար շատ երգեր կ'երգեն, շատ մաղթանքներ կը խնկեն. փեսան շրջապատուած աղջիկներէ և մանչերէ՝ կը տեսնէ անոնց պարը, կը լսէ անոնց երգը.

Նստիր բազմէ, թագւոր աղբար,
Որ քեզ գովեմք գլխուդ ի վար,
Անկէց զքու մազերդ ըսեմք,

Որ սրմայի թել նմանի։
  Անկէց զքու երեսդ ըսեմք,
Որ լուսունկի կալ նմանի.
Անկէց զքու աչերդ ըսեմք,
Որ հրեղէնի բալ նմանի։
  Անկէց ըսեմք ակռաներդ,
Որ մարգարտի շար նմանի.
Անկէց զքու պօյըդ ըսեմք,
Որ չընարի տալ նմանի։

Փեսայի հարսնեւորք, հարսին տունը գալով, կը գովեն հարսը որ դուրս գայ.

Ման եկուր աղւոր, ման եկուր,
Գէպ ի մեր տուն ի դան եկուր.
Աղջիկ, քեզ ո՞ր մարն է բերեր։
— Ան թուխ աչվի մարն է բերեր,
Մարն չէ բերեր մեզի համար
Մենք ենք եկեր քեզի համար։

Երկուշաբթի հարսը ձիով ժամ կը բերուի, հարսնեքոյրեր հարսը շրջապատած կ'երգեն.

Եկուր աղւոր աղջիկ, հարս եղար մեզի։
Նազութ, զմրութ, անգին քար եղար մեզի.
Ձեռք մը լաթ ենք բերեր, վրեկդ անցուր,
Քեզ տանել եմք եկեր, ծնողքդ լացուր...
  Ողքդ խետիմով է, դուն մեզ խնդացուր,
Եկուր աղւոր աղջիկ, հարս եղար մեզի.
Աղջիկ մը կը տանին ալով ու լալով,
Գլուխն ալ է փաթթուած վարդեգոյն շալով.

Մազերն ալ է հիւսած սրմայի թելով.
Ձեռքերն ալ կարմրած Հինտի հինայով։
Մի լար աղւոր, մի լար կուլաս ի՞նչ կ'նես.
Սիրուն, դու մօրմէդ չի զատվիս, հապա ի՞նչ ընես։

Կէսուրը իր փեսայ–զաւկին ճակատը և հարսին աչուըները համբուրելով, կ'ըսէ.

Ոսկի թագիկ
Ի ձեր գլխիկ.
Օրեր շատկեկ իմ հարսնուկիս,
Հազար բարի իմ թագւորիս։

Հարսնիք ու պար երբ կը փոխուին սուգի կոծի՝ զօքանչը կ'ողբերգէ.

Ինչո՞ւ կուլաս խեղճուկ, ողորմուկ,
Սիրակա՞նդ կ'ուզես փափուկ.
Սիրականըդ ան ճամբով են տարեր,
Ուր ան ճամբուն մարդ չէ դարձեր,
Ո՛չ ան ճամբուն ճամբորդն է դարձեր,
Ո՛չ ան ճամբուն տէրն է խնդացեր։

Մեռնողին մայրը հառաչակոծ լալօն մ'ունի.

Կրակ ինկեր այգիներուն պարերը,
Երթաք, ըսէք. թո՛ղ չի բերեն մարերը.
Որուն գառն է մեռեր, որուն ընկերը։
Եկո՛ւ գառնուկ, եկու, ո՞ւր ես մնացեր.
Ել ի բարձըր լեռը, դո՛ւրսն ես մնացեր.
Չի կա՞յ գալու ճամբայ, հո՞դ ես մնացեր։

Եղերամայրը հառաչող մօր կ'ուղղէ այս խրախուսիչ խաբուսիկ երգը.

Չէ մեռեր քո որդին, չէ մեռեր,
Իջեր պախճան ի վար գնացեր.
Վարդ է քաղեր, դրեր գլխուն.
Քունն է տարել անուշ հոտուն:

Իսկ մեռնողի մայրը՝ անպատիր՝ կ'ողբայ.

Ես ա՛լ չեմ երթար վարդենուն տակը,
Կոտրեր է մատանուս գոհարէ ակը.
Ի՞նչ դիժար կու լինի, ա՜հ, մահուան խակը:
(Անգիր դպրութիւն էջ. ԿԹ–ՁԵ).

623

Սէրը ինքնին իր հետ կը կրէ հմայքին խորհրդականութիւնը. ըստ սիրուած առարկային, կը գնահատուի սիրոյ արժանիքը. բայց թանկագին ու անգին է հօր ու մօր իրենց մանկանց սէրը, որուն հարազատութիւնը օրօրանին շուրջը կը փնտռենք, ու կը գտանենք: Հայ մայրերը իրենց զաւակներու այդ սէրը շատ գորովով օրօրեր են, և յոյսերով երգեր ու անոյշ արցունք թափեր են: Ակնցի մայրիկը թող երգէ որ լսենք.

Աղուոր ու՛ աղուորաց որդի,
Աղուորնաց քեռոց քեռ որդի։
Քու ծառդ ու ճեղդ ոսկի,
Քու տերեւդ վարդ կու մանի։
Քու ջուրն է անպակ գինի,
Քու կիւզէլդ (գեղդ) տեղ չի լինի։
(Հնութիւնք Ակնայ 407)․

624

Մայրիկը կ՚երգէ․ օրօր կ՚անէ․

Ծոցիկս առաւօտ նման,
Արտուան շաղիկն է վրան։
Շաղուոր ես ու ես գնա՛,
Ուր ցաթէ արեւն ի վրան։
(Նոյն էջ 408)․

625

Բուրաստանին, դրախտին մէջ որքան սեւ-րեւ կայ, մայրիկը զաւկին այնքան տարի կը ցանկայ, և կ՚օրօրէ ու կ՚երգէ․

Պիւլպիւլը պաղճան է իջեր․
Վարդենւոյն թփիկն է թառեր։
Անուշ մէնէմշին (մանուշակ) հոտուն,
Աղուորիս քնիկն է տարեր։
(Նոյն էջ 409)

## 626

*Թէ շատ կուլայ մանկիկը, մայրը կը մաղթէ անոր քարէ մարիկ մ'ունենալ որ անոր պղնձէ ձայնով երգէ օրօր. մանկիկը չա՛ր ըլլայ թէ լալկան, մայրիկը չի մոռնար իր սիրուն երգեր.*

*Քու գինդ է հազար ոսկի,*
*Հազար ալ կուտամ եւըլի։*
*Հազար ալ անոր կուտամ.*
*Լոս երեսդ երկու պէնկ։*
*Աղուոր ես ծոցուդ ի վեր,*
*Երթամ ո՞վ բերիմ խաղ–ընկեր։*
*Երթամ լուսնկան բերեմ,*
*Լուսուն աստղը խաղ ընկեր։*

(Նոյն էջ 410).

## 627

*Մանկիկին համար՝ Տիրուջմէ կը խնդրէ քնիկ, Մարիամէն կը խնդրէ հանգիստ. կ'երթայ եկեղեցի կը մտնէ և սուրբ մը բարեխօս կը բռնէ.*

*Օր օր օր օր քուն ունիս,*
*Պեշիկին մէջ տուն ունիս։*
*Ոսկի օրրան ունիս,*
*Մարգրտէ եօրղան ունիս։*

Ճէֆայիրէն (գոհար) բարձ ունիս.
Շար ու շամամ (նրբահիւս) չոր ունիս։
(Նոյն էջ 412).

628

Հարսերու երգերն ալ յատուկ գորով և զգացմունք մը ունին Ակնցիներու սրտին մէջ։ Հարսնեւորք կը խնդրեն որ հարսը մանտրաիկ քալէ և վայելուչ ճեմ զճեմի յառաջէ. անոր կ'ուղղեն հազար մէկ գովեստ.

Առաւօտուն կ'ելլես, արեւ կու ցաթէ,
Բերանտ ուր կու բանաս, մեղրը կու կաթէ,
Եկո՛ւր նստինք, անուշ անուշ խորաթէ,
Եկո՛ւր, աղւոր աղջիկ, հարս եղար մեզի.
Եախութ, զմրութ' անգին քար եղար մեզի։
(Նոյն էջ 415).

629

Կ'երգեն հարսնեւորք.

Նա՛զ արէ՛, նա՛զ ա՛րէ, նազդ վերցընիմ
Այա քեզի նուշ ու չէքէր կերցնիմ.
Հագցընիմ, կապցընիմ, մարոնցդ խրկիմ։
Մի՛ լար, աղուոր աղջիկ, աչուիտ կ'աւըրի.
Քեզ պզտիկ կարգողին տնակն աւըրի։
(Նոյն էջ 416).

## 630

***Փեսային հրգը աւելի բանաստեղծական է.***

*Ան բարձրը լեռներն ի վար, մեզի բարկ արեւ մին է ցաթեր.*
*Ըմմենում երդիքն ի վար, մեզի դուռն ի ներս է ճառագայթեր.*
*Ըմենա ի վրայ եկէք, թագաւորին կապան կարեցէք.*

*Լուսնկան աստառ արէք, արեգակն երես ձեւեցէք,*
*Ան մոյ (մանր) ու խոշոր աստղեր՝ թեւերուն տիւկմէ (կոճակ) կարեցէք։*

(Նոյն էջ 422).

## 631

*Ճիշտ է առակը որ կ'ըսէ.*

*Մարիկը է տաքուկ հացիկ,*
*Ո՛վ ուտէ, կու կշտացնէ։*
*Հարիկն է անպակ գինի,*
*Ո՛վ խմէ, կու արբեցընէ։*
*Աղբարն արեգակ նման,*
*Սարն ու ձոր հաւսար կը ցաթէ։*

(Նոյն էջ 488).

632

Ծերութիւնը յաւակնոտութեան հետ ունի փորձառութեան գեղեցիկ և անվիճելի յատկութիւնը, որուն անփորձ երիտասարդը պէտք չէ դիմադրէ։ Րաֆֆիի ծերունին Արբակ՝ բռնելով իր ճերմակ մօրուքը, կ'ըսէ Սամուէլին.

Այդ մազերից ամէն մէկը մի փորձանքի մէջ է սպիտակել, Սամուէլ... ես շատ բան եմ տեսել և շատ բան եմ փորձել...

(Սամուէլ էջ 63).

633

Մոկացի կինն Սաթենիկ, իր Մուշեղին կը պատասխանէ.

Մենք մեր օրօրոցներով կը շրջենք բանակի հետ և մեր ձեռքով կը դարմանենք ամուսինների վէրքերը...

(Սամուէլ էջ 196).

Հին Հայաստանցի քնքոյշ հարսը այսպէս կը քաջալերէ մարտիկ ամուսինը. և խռովայոյզ ճգնաժամին՝ կը մտածէ հայրենիքի կեանքը և պատիւը։

# ԳԼՈՒԽ ԺԸ.

## ՊԱՏՄԱԿԱՆ ԴԻՊՈՒԱԾՔ, ԲԱՐԿՈՒԹԻՒՆ, ԿՌԻՒ, ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ, ՏԺԳՈՀՈՒԹԻՒՆ։

634

*Ազգակործան վատ կռիւնիրու դէմ, ռումբեր են Գամառ Քաթիպայի այս խօսքերը.*

*Արուեստ, ուսում, շըքեղարուեստ տարածէ՛ Հայ ազգի մէջ,*
*Բայց բռնութեամբ միշտ հեռացո՛ւր նորա մէջէն կրօնի վէճ.*
*Քեզ ի՞նչ շահ է, թէ դու կ'ասես՝ Հոգին բըղխել է Հօրից,*
*Կամ թէ Որդին Հոգւով սրբով անսերմ ծընունդ է Մօրից...*
*Թող սի՛րելի, այդ խնդիրքը, աչքըդ դարձո՛ւր դէպ հարաւ,*
*Բիւր բիւր հոգիք դու կը տեսնես կորած դորա պատճառաւ.*
*Բայց մինչ այսօր այդ խնդիրքը մընացել է անվըճիռ,*
*Թո՛յլ խեյքո՞վըդ աշխատում ես քակել անքակ այդ կընճիռ։*

(Ոտանաւորներ. էջ 61).

635

*Ըստ Րաֆֆիի կռուարարներու մէջ ճշմարտութիւնը կասկածոտ բան մը կը համարուի.*

Կռիւի մէջ յայտնված ամէն ճշմարտութիւն կասկածաւոր է թւում։

(Խենթը էջ 142).

636

*Մեր հասարակական ծանօթ հոգեկան հիւանդութեան համար, կ՚ըսէ Գ. Արծրունի.*

Ընդունուած միտք է որ հայերը երկպառակութիւն սիրող ժողովուրդ են, որ նոքա զրկուած են ընկերանալու ընդունակութիւնից։

(Գ. Արծրունու Աշխատութիւնները Հ. I. էջ 372).

637

*Պատմական դիպուածներու շարքին սեւ օղակներէն մին կարելի է ընդունիլ Հ. Ալիշանի սա յիշատակածը.*

Թիւր տեսութիւն կարճմտութեան խաբեաց և զվասակ զգլխօշակիր անմիաբանութեան Հայոց, զոր աւաղական ձայնիւ մեծի Ներիցուն անմիտ

վաճառական կոչեմ և ես քան չարամիտ դաւաճան։

(Բազմ. 1843 էջ 319).

638

Խաղաղասէր Հ. Ալիշանը իր քնարով խաղաղութեան ձայնը կը հնչեցնէ.

Դարանակալն յաւիտենից խաղաղութիւն՝ դարձցի յիւր գահ.

Դարձցի հեզն այն, դարձցի հաստիչ, դարձցի սիրուն խաղաղութիւն։

(Խոճուշճի էջ 112).

639

Եզովբոսի առակներուն ներշնչմամբ, Բժրշկեան Հ. Մինաս տժգոհներուն համար կը գրէ սա առակը.

Տժգոհ մարդուն ինչ որ ընեն,
Միշտ գանգտի ունեցածէն։

(Եզովբոս առակ էջ 113).

640

Եզնիկ կը գրէ դաստիարակի համար. Թէ

Մի բարկանար աշակերտի մեղուցելոյ, զի հիւանդն ոչ թէ յիւր կամաց հիւանդանայ։

(Եզնիկ էջ 303).

641

*Խաղաղութիւնը, անխտիր՝ ամենուն սիրելի և պաշտելի է՝ խռովութիւններէ խոյս տուող մենակեացներուն համար. և անապատի*

*Խաղաղասէր կրօնաւոր ջահ պայծառ է եղբայրութեան։*

(Նոյն էջ 301).

642

*Մարդուս կեանքը ընդհանուր համաձայնութեամբ՝ կռիւ է, պայքար և ճակատագրական պատերազմ.*

*Այս կեանքս պատերազմ է։*

(Եզնիկ էջ 308).

643

*Բարկութեան դէմ յորդորներ անպակաս են, բայց ամենէն ազդու յորդորը, օրինակն է հեզահամբոյր, որուն տիպարը ըստ Սոփերքի, ինքնին Շնորհալին Ներսէսն է. սա թէեւ ի բնէ բուռն, բայց պատմութիւնը կը վկայէ. թէ բնաւ չէ բարկացած. խիստ ան-*

տանելի ախտերու տակն, անուանելով զուրիշները Լոյս անուամբ, կ'ըսէ եղեր.

Լոյս, եթէ ոչ յիս խնայէի՝ բարկանայի քեզ։

(Հայապատում Բ 374)

644

Ներքին պառակտումները պախարակելի և զզուելի են։ Պէշիկթաշլեան իր «Կոտնակ» ողբերգութեան մէջ կը գրէ.

Կը վայլէ՞ որ մենք մէկ ազգ՝ մէկ արիւն ըլլալով, մէկմէկու կորստեան գուբը փորենք ու հայրենիքը ընտանի պատերազմներով թշուառութեամբ ահ ու դողով լեցընենք։

(Պէշիկթաշ. Մատենագրք. 195).

645

Եւ Բագրատունին Հ. Արսէն, իր Հայկ դիւցազին մէջ ըսած է.

Գազանք անգամ չաղղակերք չարկին ժանիս ի համազգիսն։

(Հայկ դիւցազն էջ 30).

646

*Մենք կը յիշենք հոյակապ անհաշտութեան օրինակ մը, որ թէեւ երգիծական և անիրական ու կատակ մ'է, սակայն յարմար յամառ անհաշտութեան։ Ալաշկերտցի տղաքները, հինգ կամ ութ տարեկան երախայ մը հարս կ'ընեն, երեսը քօղով կը ծածկեն։ Մէկը կը բանայ երեսը, միւսը կը գոցէ ու կ'երգէ...*

*—Քեզի կիտամ մաղ մի ոսկի,*
*Ա՛ռ պարիշի, խնամի ճան։*
*—Մաղը ծակի,*
*Ոսկին թափի,*
*Չէմ պարիշի, խնամի ճան։*
(Ազգր. հանդէս Գիրք VII VIII 1901 էջ 437).

647

*Ծովը գետով չի յագենար, տժգոհն ալ տեսած բարիքներով ու վայելքներով։ Հայաստանցիք կ'ըսեն.*

*Ուտայ՝ կ'իլայ (լալ),*
*չ'ուտայ՝ կ'իլայ։*

*Մեկնութիւնն է. «Տժգոհ ըլլալ միշտ,*

*ունեցած և չունեցած պարագաներուն միան-գամայն »:*

(Նոյն էջ 477).

648

*Բարկութիւնը՝ երբեմն կը ծածկուի խա-ղաղ կարծուած հոգիներուն մէջ, ուսկից բռնկած զայրոյթը կարելի է համարել ան-գիմադրելի փոթորիկ: Ալաշկերտցիք ըսած են.*

*Վախեցէք մարմանդ (հանդարտ) գետից.*
*մի՛ վախեցէք գըմփզէմփան (կատաղի) գետից:*

*Կը մեկնուի. «Հանդարտ բնաւորութեամբ տեսնուած մարդերը երբեմն աւելի վտան-գաւոր են, քան բարկացող, կատաղի երեւ-ցածները »:*

(Նոյն էջ 481).

649

*Կան մլճեր, կոխուներ, որ յիմարաբար կը ծնին ու կը բորբոքին, նկատելով անըր-ջային բաներ. այդ կռուարարներու Ալաշ-կերտցիք կը յիշեցնեն.*

*Ցըպնին ընկի,*
*Չըռչին քըզի *:*

*Մեկնութիւնն է. «Անշահ բանի վրայ վիճել, և երեւակայական շահերով գոյացում տալ միմեանց»:*

(Նոյն էջ 484).

650

*Կռուին բնականաբար կը յաջորդէ հաշտութիւն. այս է օրէնքը. ուսկից զուրկ մնացողները մարդկութեան սահմանէն դուրս նկատելու ենք: Ալաշկերացիք կ'ըսեն.*

*Քար գլօրի (գլտորել).*
*Կը կանի (կը կենայ):*

*Մեկնութիւնն է. «Ինչպէս շարժման՝ դադարում մը, նոյնպէս ամէն թշնամութեան հաշտութիւն մը կայ»:*

(Նոյն էջ 485).

---

* *Առակս ունի իր պատմութիւնը. «Երկու պատող չարչիներ բաւական ատեն իրարու հետ ման գալով, առուտուր ընելէ վերջ՝ կ'ուզեն իրարմէ բաժնուիլ. բայց բան մը չեն ունենար կիսելու: Իրենցմէ մին կ'ըսէ, «ընկե՛ր, Ցըպնին ընձի. Չըռչին քըզի», ցոյց տալով հեռուէն երեւցող երկու հայ գիւղերը»:*

651

Բարկացողը ընտրելի է, քան թէ հանդարտաբարոյ խարդախը. Կ'ըսէ առակը.

Զարուն՝ (Բարկացող) հետ կաց
Կակղուց (հանդարտէն) յետ մնաց:

Մեկնութիւնն է. «Բարկացող մարդը աւելի անկեղծ ու անվտանգ կ'ըլլայ, քան հանդարտ բնաւորութիւն ունեցողներ»:

Նոյն էջ 501)



# ԳԼՈՒԽ ԺԹ.

## ԽՕՍՔ ՈՒ ԳՈՐԾ. ՊԱՆԴԽՏՈՒԹԻՒՆ. ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆ. ԱԶԱՏՈՒԹԻՒՆ. ԳԵՐՈՒԹԻՒՆ. ՀԱԼԱԾԱՆՔ։

652

*Ռուսահայ կրակոտ բանաստեղծը կ՚ողբայ, որ հայ գաղթականներն ոչ ոք կը կարեկցի։ Հայրենի օճախէն դուրս ընկած պանդուխտը կը հառաչէ.*

*Հեռացել եմ իմ մայրենի աշխարհից,*
*Սերտ բարեկամք անջատած են ինձանից.*
*Թառամում եմ ես այս օտար երկրումը,*
*Մենակ բըսած ծաղկի նման դաշտումը։*

(Գամառ Քաթիպա. Ոտանաւորներ էջ 19).

653

*Արաքսը իր պանդուխտ որդւոց համար սուգ կը բռնէ.*

*Քանի որ իմ զաւակունք*
*Այսպէս կու մընան պանդուխտ,*
*Ինձ միշտ սըգւոր կը տեսնէք,*
*Այս է անխաբ իմ սուրբ ուխտ...*

(Նոյն էջ 34).

654

*Նոյն բանաստեղծը իր ամենէն ազդու և բարկաճայթ մէկ երգով՝ գերութեան դէմ ընդվզում կը գոռայ.*

*Հիմի է՞լ լռենք, երբ մեր թշնամին*
*Խլեց մեր սուրը – պաշտպան մեր անձին,*
*Մշակի ձեռքիցն էլ խոփը խլեց,*
*Այդ սուր ու խոփից մեր շղթան կռեց,*
*Վա՜յ մեզ, շղթայով կապած գերի ենք,*
*Հէմի է՞լ լռենք։*
(Նոյն էջ 95).

655

*Թշնամին՝ Հայը կ'արտաքսէ իր օճախէն, իր բնիկ երկրէն, Հայը շուարած, կը հարցընէ.*

*Պանդո՞ւխտ, հալածեա՞լ, երբա՞ք, ո՞ւր դիմենք.*

*Հէմի է՞լ լռենք.*
(Նոյն էջ 95).

656

*Հայուն հետ կ'ապրի պապենական սա պատուէրը.*

Լաւ է մեր կեանքը կարճանայ սըրով,
Քանց հաշուի, մաշուի թըշնամու լըծով.
(Նոյն էջ 100).

657

Նոյն բանաստեղծին պարզ մէկ այս տո֊
ղը, իր պարզութեամբը, գերի Հայութեան աչքէն կը թափէ լեղի արտասունքը։

Հայաստանի մէջ փոքրիկ խորշ էլ չի մընաց Հային։

(Նոյն էջ 124).

658

Պանդուխտ Հայութիւնը, լալով կ'ողբայ.
Զընդան բանդ է իմ համար պանդըխտութեան
լուս աշխարք։
(Նոյն էջ 125).

659

Ընկճեալ վանեցին կ'աղօթէ Հայաստանի Աստուծոյն.

Թո՛ղ դադրի մեր գերութիւնը,
Յառնէ Հայի ազգութիւնը,
Վերջանայ մեր հէգութիւնը,
Տէ՛ր ողորմեա՛, Տէր ողորմեա՛։
(Նոյն էջ 139).

## 660

Վանեցի Հայը ունի ըմբոստութեան «Հայր—մեր» աղօթքը. Վանեցին այնքան ազգասիրութեամբ վառուած է, որ կը մոռնայ և պահ մը չի մտածեր իր առօրեայ չոր հացը և իր մեղքերուն քաւութիւնը. ու կաթողին կը պաղատի.

Ոչ չոր, ոչ կակուղ հացըդ մենք կ'ուզենք,
Միայն տո՛ւր ամէն Հայի ձեռքը զէնք.
Չենք խնդրել թողնել մեր անձանց պարտքը,
Թէ՛ք վերցո՛ւր Թուրքի, խայտառակ հարկը.
Գլորէ՛ մեզ, Աստուած, մարտի փորձութեան,
Որ շուտ ազատի ազգըդ քո հայկեան։
(Նոյն էջ 125).

## 661

Բանաստեղծը վշտացած սրտով ցոյց կու տայ համակերպութեան և յուսախաբութեան ունայնութիւնը և իր ազատութեան վերջին խրատը կ'ըլլայ.

Ո՞ւր է, դու գիտե՞ս, բաղդըդ ու փառքըդ
Ու ազատ կեանքըդ, — Ի ծայր քո սուրին
(Նոյն էջ 143).

662

*Ազատութեան փողը և .յորդոր վարանելով կը լսեցընէ. Հայը բանակալութեան ոտքը իր աղի արցունքներով լուաց, բայց իր ձայնը լսելի չեղաւ, ու հիմա կը փորձէ և կ'ուզէ գիտնալ որ սուրերուն շառաչիւնը պիտի լսէ՞ երկինքը։ Եւ կ'երգէ վանեցի մայրը.*

*Տո՛ւր սիրական, քակեմ ձեռքիդ պալուլները, արձակեմ,*
*Ու այդ թուլիկ աջիդ մէջը մի պողպատէ սուր դընեմ,*
*Ըստրուկ գընա՛ արեան դաշտը, վերադարձիր ազատուած.*
*Արդեօք մի օր պիտի լըսէ՞ս մեր խնդիրքը, ո՜վ Աստուած։*

(Նոյն էջ 144).

663

*Մշակներուն՝ պատերազմի հրաւէր կը կարդայ. զուլթանը՝ Հայուն ազատութեան օրը մօտեցընել կու տայ. զայն կ'ուզէ փշրել, ու անով կռել կոփել կու տայ սուր պատերազմական.*

*Եղբայր Հայեր, առէք խոփը, տուէք դարբինին կռելու,*

*կրռել–կոփել սուր ու սուսեր՝ Հայաստանը փրրկելու։*

(Նոյն էջ 146).

664

*Մշեցի գիւղացիին լեզուն բացուած է. ան կը զարնէ իր սանթուրը, չի՛ մուրար ստակ, չի՛ մուրար ոսկի, այլ զէնք, վառօդ և հրացան.*

*Խղճացէք Հայ ազգիս, տուէք մեզ հրացան։*
*Չուզենք մենք ձեր ոսկին, տուէք մեզ վառօդ։*
*Չուզենք մենք ձեր փարան. տուէք թընդանօթ։*

(Նոյն էջ 152–153).

665

*Մեր խելացիները ընդհանրապէս տեղեակ ըլլալով ազգային ամէն ցաւերուն, և գիտնալով որ Հայը ուսում չունի, հալածուած է. երկիր չունի, գիրք չունի, վարպետ չունի, այս ամէնը ծանօթ է ամենուն, սակայն.*

*Գիտենք և միայն կը խօսենք։*

(Նոյն էջ 157).

666

*Ու գաղափարի ու գործի մարդ Գրիգոր Արծրունին նուիրած մէկ երգին մէջ, կը ծաղրէ հայութիւնը.*

*Լոկ խօսքով մի ազգ. չի կանգնել ոտքի։*
(Նոյն էջ 161).

667

*Պէտք չէ շուարած կենալ, պէտք չէ ժլատ մընալ. Պատկանեան կը քարոզէ մա՛հ վը-հատեալ հայուն։*

*Հա՛րուստ, հէ՞ր ոսկիդ սընդուկ դըրել ես,*
*Կըտրի՛ճ, ո՞ր օրուայ ուժըդ պահել ես,*
*Ա՜ռ ի՞նչ, ազգասէր, ազգըդ սիրել ես...*
*Եղբարք, ալ չասենք. «Հայե՛ր ի՞նչ անենք»։*
(Նոյն էջ 204).

668

*Նոյնինքն բանաստեղծը պատասխան կու-տայ.*

*Թէ կ'ուզէ հայը՝ նա շատ բան կ'անէ.*
(Նոյն էջ 205).

669

*Բայց ափսոս որ Հայը օտարներու մէջ Թոմաս Էֆէնտիներու շաղակրատութեամբ կը զոհանայ. Րաֆֆիի սա խօսքը թէ և ծաղրական, բայց և յուսահատեցուցիչ է.*

*Թոմաս Էֆէնտին էլ, գիւղական օդայի մէջ նստած, վճռում էր հայոց ազգի ապագան.*

(Խենթը էջ 135).

670

*Վառ ազգասիրական կրակը ստրկութեան ահռելի ուժը կ'ոչնչացընէ. գերութիւնը այնքան զարհուրանք պէտք չէ պատճառել. Րաֆֆի շատ իրաւամբ կը գրէ.*

*Ես այժմ համոզուած եմ, որ ստրկութիւնը չէ կարող խլել մի ժողովրդի քաջութիւնը, որ նախնիքը թափել էին նրա երակների մէջ։*

(Խենթը էջ 426).

671

*Տարօրինակ նորութիւն մը չէ մեր մէջ խօսքով հիացումները, և գործնականին մէջ վատ ձեռնպահութիւնը. Հասարակական ոեւէ բարի ձեռնարկութեանց առթին երբ միայն խօս-*

քով կը հիմնանք և ձեռնտուութիւն մը չունինք, կարող ենք յիշել Միսաքեանի մասին՝ պօլսեցիներու ունայն սիրալիր ընդունելութիւնը. խեղճը ոչ անոր, այլ էշի մը պէտք ունէր.

Սիրալիր ընդունելութեան վրայ չէր կրնար նստիլ և ոչ անով Ալէմ Տաղի երթալ։

(Ազգային ջոջեր էջ 214).

672

Գերութեան մասին կարող ենք օրինակ բերել Ալիշանի «Ողբ Հիթմոյ» սա տողերը.

Ես մեռայ, ես զերեցայ անզաւակ...
Հէ՜թում, երթ մուտ շիրմին ի փակ,
Տուն Ռուբինաց զարթի՛ր ի կոծ,
խաւար եհաս ազգիս Հայոց։

(Հայրունի էջ 164).

673

Համայն հայրենեաց հասած կործանումը, Նահապետ աւելի պատնագին կ'ողբայ։ Կուլայ աւերումը, ջնջումը հայ տաճարներու, դրատանց և գերութիւնը սոսկալի.

*Բայց ափսո՜ս. հիմա որ չար թէշնամիք*
*իսկի չեն խնայել Հայո՜ց աշխարհիկ,*
*Եկեղեցիք, վանք, գըրատուն, դարպաս*
*Զարկել են թըրով հըրով դաս ու դաս.*
*Զազգն ընչօք տեղօք քանդել ու գերել*
*Դէմ չորս հովերուն տըւել ու ցըրուել։*
*Աւաղ քեզ աւա՜ղ Հայոց աշխարհիկ*
*Տուն երկնանըման, փըլած տաղուարիկ...։*
(Հայրունեի էջ 273).

674

*Օրօրանէն տարագրեալ հայը՝ սրտի տրոփումով կ'ողջունէ ի՛նչ որ կու գայ կորուսեալ դրախտէն—մեր բնիկ հայրենեաց հողէն. կ'երգէ Նահապետը.*

Կռունկ ու Արագիլ գային հիտրանց, (միաբան)
Ղարիպներուն սիրտըն ճըխաց.
(Նոյն էջ 276).

675

*Դառն է գաղթականութիւնը, երբ կը կատարուի հալածանքի երկիւղէն։ Յուսուփի ատեն հայք կը կրեն զարհուրելի սով, սրածութիւն և հալածանք. Յովհան կաթողիկոս իր ողբովը կը նկարագրէ այդ պատ-*

*կերը, զոր մեր մշտնջենաւոր և ահաւոր նահատակութեանց արձանագրութիւնը կրնանք համարիլ։ Կաթողիկոսը այդ հալածանքը երկնային պատուհաս ընդունելով, կ'ըսէ. «Սիրտ իմ տանջեալ տագնապի տարակուսանօք, և հաշեալ մաշի փոր իմ ի լալոյ. զի յանօրէնութեանց մերոց՝ այցելութիւն Տեառն անտես արար զմեզ, և ի սեւաթոյր տխրութենէ գործոց մերոց՝ խեթիւ հայեցաւ ի մեզ արեգակն ճշմարիտ, և մատնեցաք ի ձեռս ծանրաորսի երկրորդն փարաւոնի և զառն գործավարաց նորա, որք առաւել ես քան զանուր կաւափաղաղ աղիւսագործութեանն՝ վէրս ի վերայ եդեալ՝ կործանեցին զմեզ անհնարին հարուածովք ի վերայ հարուածոց։ Վասն զի.*

*Իբրեւ զմրրիկ հողմոյ շնչեալ ի մեզ մահաւիթիսմայէլեան օդն դառնաշունչ, և ըստ նմանութեան փոշւոյ պտուտաբար ցնդեալ՝ ի բաց զմեզ տարագրեաց ի մեր բնակութենէ։*

*Եւ արդարեւ, ըստ մարգարէին,*

*Ոչ կարէն մխիթարել զմեզ որդիքն մեր տարակուսեալք, և ննջեալք ի կիրճս ամենայն ճանապարհաց։*

(Հայապատում Բ. էջ 276).

676

*Սրտառուչ է Շնորհալիի Եղեսիոյ վրայ երգած ողբը. կարծես սգաւոր համայնապատկերն է մեր այրիացեալ Հայրենիքին. Եղեսիա կ'ուզէ որ իրեն ողբակից ըլլայ նաեւ Անին արտասուելի։ Սգաւորն Եղեսիա, կը յիշեցընէ մեր համայն հայութեան ողբերգու տխրապատկերն. Եղեսիա կը փնտռէ իր վարսերը ցանկալի, կը պատռէ իր զգեստները զարդարուն, ու կ'ողբերգէ.*

Նըստիմ ի սուգ ի տան մըթին
Որպէս օրէն է սգաւորի...
Քանզի առակ եղէ յերկրի,
Եւ անցաւորք ճանապարհի
Վա՜յ ի վերայ ասեն վայի։

(Հայապատում Բ. էջ 363).

677

*Հալածողները անհատնում են.*

Չէնք ի հինից գային վերայ,
Ասպատակաւ ես գերեցայ։

(Նոյն էջ 364).

678

*Լանկթիմուրի արշաւանքը, անոր ահաւոր կոտորածները Տերենց մականունով, Գրիգոր վարդապետը լալկան քնարով կը նկարագրէ։ Վրացի, Թուրք, պարսիկ՝ այդ աշխ–րահռչակ գազանին ճիրանէն չեն ազատած. և աւելի ջախջախուածը մեր ազգն է, և որով կը լսենք այս եղերերգը.*

*Չունիմ ասել բան զոր կրեցին*
*Քրիստոնէից ազգ Հայ զարմին։*

*Բանաստեղծը իր աչուըններով տեսած մեր ազգին զարհուրելի աղէտները, որտաճմլիկ մորմոքումով կ'ողբերգէ.*

*Տիկնայք որ ճոխ տունս ունէին*
*Եւ մետաքսօք պերճանային,*
*Հացակարօտ երևէին,*
*Ծածկոյթ անձանցըն խնդրէին։*

(*Հայապատում* Բ. 565).

679

*Զմեզ հալածող՝ մին քան զմիւս անգութ վիշապներ անպակաս չեղան. ամէնն ալ դժոխային գազաննե՛ր. Ներսէս Հայրապետի մարգարէութիւնը շատ անգամ կատարուած է.*

Ներսէս Հայրապետն մեր մարգարէիս բանին վըկայէ,
Թէ Կարմիր գլուխն ելցէ և զՀայոց երկիրն աւերէ:

(Հայապատում Բ. էջ 594).

680

Պէշիկթաշլեան աւաղ կը կարդայ անձին. որ ցանկալի հայրենիքը թողած, օտարու-թեան մէջ կ'ապրի.

Վա՜հ եղկելոյն, որ հայրենեաց մերկ կենսա-ձիր յարեւէն՝
Թափառական ընդ անծանօթ շրջի գաւառ տարաղէմ:

(Պէշիկթշ. Մատենագրութք էջ 9).

681

Շատերը անձնանուիրաբար կ'ընտրեն հայրենիքի ահաբեկութեան մէջ ապրիլ, քան թէ օտարին արքայութեան մէջ ոչնչանալ: Քաջ Հայաստանցին կ'ընէ.

Իմ ցամաք հացը լաւ աշեմ ինձ համար, քանց ձեր ղաբլու փլաւը:

(Վէրք Հայաստանի էջ 65).

682

*Աբովեանի համար, սարկութիւնը սոսկալի և ողբալի է. կ'ողբերգէ.*

*Վա՜յ է՛ն ազգին՝ որ աշխարքումս անտէր ա,*
*Վա՜յ է՛ն երկրին՝ որ թշնամու գերի ա,*
*Վա՜յ է՛ն խալխին՝ որ ինքն իր կեանքն, աշխարքը*
*Չի՛ պահպանիլ, ու հարամու ձեռ կտայ։*

(Նոյն էջ 73).

683

*Լսելով հասարակութեան վայնասունը, ճգնաժամը, կարող չենք անտարբեր մնալ, ու մեր ուժին համեմատ օգնութեան չհասնիլ։ Աբովեան կը գրէ. «Քար չկայ մեր երկրումը, քօլ չկայ, որ Հայի արիւնով ներկած չըլլի... Ա՛խ սի՛րելի Հայ՝ էս բաները լսելիս,*

*Ինչ ունիս չունիս, տո՛ւր, որ քո ազգը քիչ քիչ մէկ լաւ օր քաշի։*

*Պէտք ենք ողորմիլ անոնց, «որ դունէ-դուռը ման են գալիս, ողորմութիւն խընդրում՝ որ գնան իրանց գերիքն ազատեն...»*

(Նոյն էջ 127).

684

Գաղթականներուն դիւցազնական խրոխտ յորդոր մըն է Աքոլեանի սա երգը.

Ճունչդ տո՛ւր, հոգիդ, բայց քո հայրենիք
Մի տար թշնամեաց ու անաշխարհիկ
Ընկնիլ սարէ սար, լինիլ չարաչար
Ծառայ օտարաց, կամ գերի անճար։

(Նոյն էջ 137).

685

Հայրենի հողէն կտրուած, իր օջախէն տարաշխարհիկ հայուն երգը, հոգին կը լացընէ, սիրտը կը քանդէ,

Ծնօ՛ղ, ազգականք՝ հեռու ինձանից
Լուսնին նայելով, ձեր սէրն յիշելով,
Եարաբ ե՞րբ կըլի, որ ես ձեզանից
իմ կարօտս առնիմ. ձեզ ջան ասելով։

Պանդուխտ Աղասին կ'ողբերգէ. «Ա՛յ իմ խեղճ ծնողք՝ ձեր ջանին մեռնիմ»...

Աչքս ծով դարձաւ՝ ճամփին նայելով.
Մէկ ղուշ որ գլխիս պտիտ ա գալիս,
Թէ ե՞րբ մէկ խաբար կհասնի ինձ բարով՝
Հոգոց հանելով ասում եմ, լալիս։

(Նոյն էջ 207).

686

Պանդուխտ հայը իր օճախին մէջ կ'ուզէ մեռնիլ. օտարին գերեզմանը իրեն սիրելի չէ, իր պապերուն ոսկորներուն քով կ'ուզէ որ հող դառնայ իր մարմինը. Ագռաւին իր ծնողաց կ'երգէ.

Էն սուրբ, անարատ կաթնին ես ղուրբան,
Ձեր լիս ձեռներին, ձեր անուշ լեզվին.
Մէկ բուռն հողի էլ երբ կըլիմ արժան,
Որ գամ ձեր հողումն, քնիմ ձեր միջին։
(Նոյն էջ 208).

687

Մոգական հրապոյրով, գերի շրթունքներուն վրայ կը թրթռայ Ազատութեան բառը, երգեր մարտագոռ՝ աստուածացուցած են Ազատութեան գաղափարը. Հայն ալ ունի իր այդ երգը, որ կը համարուի պայթած ըլլայ Մ. Նալբանդեանցի որոտընդոստ կրակոտ կուրծքէն. մանկական բերնէն Ազատութիւն բառը կը թռչի.

Ազատութի՛ւն, — գոչեցի.—
Թող որոտայ իմ գլխին
փայլա՛կ, կայծա՛կ, հո՛ւր, երկա՛թ,

Թո՛ղ դաւ դնէ թշնամին,
Ես մինչ և ի մահ կախաղան,
Մինչ և անարգ մահո֊ սիւն,
Գիտի գոռամ, պիտ՝ կրկնեմ
Անդադար, ազատութի՜ւն։

(Սոխակ Հայաստանի էջ 16).

688

Ազատութեան ոգեւորիչ փողը կը հնչեցը֊նէ նաեւ բանաստեղծ Հ. Արսէն Բագրատու֊նին.

Օ՛ն արիք պընդեալք ըզմէջս, որդիք Նոյի և Թորգոմայ,
Ցարըս լերուք զօրութեան վանել յերկրէդ ըզբըռնութիւն։

(Հայկ դիւցազն էջ 135).

689

Ու ազատութեան սուրբ գործին պէտք է վստահ ըլլալ որ

Գեղեցիկ յանդըգնութեանց են և երկինք նի֊զակակից։

(Նոյն էջ 136).

## 690

*Ախտ մը որ մեր վրայ ճնշած է, մենք անոր գերի ենք, մենք մեզի ստրկացած կ՚ըլլանք. Բագրատունին կը գրէ.*

*Ինքնատէր է մարդ անձին՝ ազատ յախտից լինել չարաց.*
*Եւ որ յայնմ ազատ չիցէ գերութենէ, չէ անձին տէր.*

(Նոյն էջ 600).

## 691

*Մեր ազգային պանդուխտները ունին երգեր, սիրտ ջախջախող երգեր. ղարիպութիւնը ունի լալկան յիշատակներ, մանաւանդ երբ տարագրումը ըլլայ բռնի. և անտէրունջ մնայ օտարութեան մէջ, աղքատ և հիւանդ։ Բորչալուի գաւառացին ղարիպներու համար տխրունի երգ մ՚ունի.*

Ղարիբը պարկել ա, անճար կտնքայ,
Հէր ու մէր չի կայ, որ հոգսը հոգայ,
Քարերը եօրղանն են, ֆօղը դօշակ,
Բարց ու բալիշ չունի նա իր գլխի տակ։
Մէր չունի, որ տեղը գցէ վերցնէ,
Քիր չունի բարցի երէսը դարցնէ,
Նար էլ չունի հալը, խաթրը հարցնէ,
Ախպէր չունի չուխայ կտրէ, հագցնէ...

(Ազգագրական Հանդէս XI գիրք էջ 66).

692

*Ջափուրի կնոջ ողբի մէջ, կայ սա սըր-տայոյզ ողբը.*

*Ես ինձ համար տուն չունեմ,*
*Գիշեր ցերեկ քուն չունեմ,*
*Գիշեր ցերեկ լալում եմ,*
*Միս ու ոսկորս հալում եմ...*

(Նոյն էջ 67).

693

*Նոյն ողբը կը շարունակուի և ունի այս լալկան տողերը։*

*Ինձ հմա ոնչ լիս, ոնչ էլ գշեր կայ.*
*Ես խօրօտ եղնիկ, ինձի տէր չկայ։*
*Ասի ամէն հաւք իր բունը մտաւ,*
*Ամենն էլ իրան հնգերը գտաւ,*
*Մենակ ես եմ, ախ, ես մոլորված,*
*Ես մառմառ քար եմ, տեղից գլորած։*

(Նոյն էջ 67).

694

*Պանդուխտ հայ հարսը, կռունկին կ'ըսէ.*

*Կռունգ, կռունգ, կռման արա՛,*
*Հէրանցս սարին նշան արա՛,*
*Մեր տան բաշին տիտիկ արա՛,*
*Հօրանց սրահին մտիկ արա՛,*

Գնա՛ ասա՛ իմ նանին,
Բաժինքը տայ չոբանին,
Էլ հեռու տեղ ախչի՛կ չի տայ,
Որ չգնայ շիւանին։

(Նոյն էջ 68).

695

Հայ կոյսը իր հեռաւոր պանդուխտ եարին բարեւ խաւրելու համար, Լուսնակը իրեն սուրհանդակ կ՚ընէ.

Լուսնիակ կամաց գնա,
Կանգ առ ու ցածանց գնա,
Հեռաւոր եարմ ունիմ
Բարեւ առ անցի գնա։

(Նոյն փիրք Գ. էջ 94).

696

Ոըք և այրի ըլլալէն վատթարագոյն է հազար հոգւոյ քմահաճոյքներուն գերի ըլլալն. Հայաստանցին շատ լաւ կ՚ըսէ.

Լայ էրին (այրին), լայ ոռքէւէրին (որք և այրի)

Լայ էն, որ եօթն իրիկ ա ուրին (իրեն – եօթն էրիկ ունի)։

Մեկնութիւնն է. «Ամէնադժբաղդ վիճակը այրիութիւն ու որբ ըլլալն է. իսկ ամէնէն

*պժգալագոյնը՝ շատ հրամայողներ ունենալը».*

(Ազգ. Հանդէս Գիրք VII VIII 1901 էջ 466).

697

*Գերութիւնը անտանելի է, և սոսկալի երբ մարդ իրմէ տկարին գերի կ'ըլլայ։ Հայաստանցիք ունին առակս.*

*վ՚այ էնոր (անոր) որ աղւըսու կապածն ա,*
*ու մկան արձըկածն ա։*

*Մեկնութիւնն է. «Ամենէն ցաւալի վիճակն այն է, երբ մարդ իրմէ տկարներու իրաւասութեան կ'ենթարկուի, և անոնցմէ կը յուսայ բարիք և ազատութիւն»։ Առակիս պատմութիւնն է. «Աղուէս Արջին կ'ընկերանայ, ու քիչ վերջ անոր վստահութիւնը վաստկելով, կ'աղաչէ որ զինքը կապելու դաղտնիքն յայտնէ, քիչ մը զուարճանալու համար։ Արջը կը յայտնէ այդ դաղտնիքը ու կը կապուի, իսկ Աղուէսը գայլերուն իմաց կուտայ, որ գան գայն պատառեն։ Այն ատեն Մուկ մը դուրս գալով, կը կրծէ Արջին կապերը ու կը թուլցընէ, այնպէս որ*

*երբ գայլերը վրայ կը յարձակին, Արջը կը կարողանայ փրցնել կապերը ու վրանին ցատկելով, բոլորն ալ հալածել։ Այն ատեն Արջը կ'ըսէ ինքնիրեն. նայլաթ (նախատինք) է նոր (անոր), որ Աղւըսու կապուկն ա (կապածը). ու Մըկան արձըկուկն ա (արձակածը), ու կը թողու, կը հեռանայ այն երկրէն»։*

(Նոյն էջ 482).

698

*Պանդուխտը որ իր անձնական հանգստութեան համար կ'ուրանայ իր հայրենի օճախը, և անհոգութեամբ կ'ապրի օտարութեան մէջ, Հայաստանցիք անոր կը յիշեցընեն.*

Իմաստունն ի հանգիստ.
յիմարն ի հայրենիս։

(Նոյն էջ 491).

699

*Գարեգին սրբազան Սրուանձտեանց՝ քնքոյշ պատճառաբանութեամբ կը դիմադրէ գաղթելու գաղափարին.* 1882*ի ձմեռը կը*

*Համնի Մուշ, հոն գիւղ մը այցելելով, կը տեսնէ ջլատուած հայ գիւղացիներ, որ կ'ուզեն գաղթել, և չեն գիտեր ուր գաղթեն.*

*Ո՛ւր երթանք, կ'ըսենք, Ռուսի հողն երթանք, Ածմու երթանք, Մըսըր երթանք, մեռնինք՝ խ՛օ մեռնինք, իսկ եթէ ապրինք՝ կտոր մը մարդու պէս ապրինք... այս ի՞նչ է մեր քաշածը...*

*Բայց նոյն ատեն դեռ ի՞նչ էր իրենց քաշածը... Սրուանձտեանց կը հակառակի, կը համոզէ որ պէտք չէ գաղթել, տեղացի ծերունի մը իրեն կը ձայնակցի և մասնացոյց ընելով առջեւի մարգագետինը, կ'ըսէ. — « Եղբարք, տեսէ՛ք սա չայիրը. գեղի տաւարը, գնացողի էկողի գրաստները ամէն օր կը կոխկռտեն ու կը կրծեն, հէմըէ կանանչ է կանանչ է, ինչի՞, որ իր արմատը կը մնայ իր տեղը. մեր ազգ չէ՞ որ մինչեւ այսօր այնքան կոխկռտուեր, ճմռուեր, քաղուեր է, նորէն կանանչցեր է իր տեղին վրայ. մենք կը չորնանք, կ'ոչնչանանք, թէ որ մեր տեղն ու մեր հողը փոխենք. եկէք, մ'ընէք, Աստուծոյ ողորմութիւն շատ է, թագաւորի ռահմ շատ է...». և Սրուանձտեանց Պա-*

*տրխարքարանէն հրաման առած էր. «խրատել Հայ բնակիչները, հարստահարութեանց պատճառաւ հայրենիքնին թողլու նպատակէն ետ կեցնելու»..։*

(Թորոս Աղբար Բ. էջ ԻԷ)․

700

*Պանդուխտի լացը սիրտ կը մաշէ, որբերը պանդացին՝ տուն կը քանդէ։ Ղարիպին աչքէն արցունք կը թափի, որտէն արուն կը վազէ։ Անոր ցորեկն է գիշեր, աշերուն գնակն է հատեր, խելքն ալ կորեր ու կորչե՜ր.*

*Ղարիպին փորն անօթի է,*
*Դռնէ դուռ խեղճ մուրացկան է.*
*Սե՛ւ օր գլխին, ամէն դուռ փակ է.*
*Վա՜յ արեւուն, ամէն սիրտ քար է։*
*Ղարիպիկ տէր ու տեղ չունի,*
*Սիրտն է ի խոց, աչքն ի լալի.*
*Իւր երդիքին կարօտն ունի.*
*Ընտանիքին ողորմելի։*
*Մեր ղարիպն է հոգեւար,*
*Գլխին բարձն է ժամերուն քար.*
*Ճատ տառապէր, լայր անդադար,*
*Ջոգէառին շուտ գալ կարդար։*
*Ղարիպիկին հալն է եաման,*

Մէկը չըկայ տէրտին տէրման։
Սուրբ Տիրամար, դուն ողորմեա,
Ղարիպիկին դուն ճար արա։
(Անգիր դպրութիւն էջ ՆԳ).

701

Պանդուխտին ընտանիքը և պանդուխտը տարամերժեալ, կարուած Հայրենի հողէն, կը լսեցընեն աղէխարշ երգեր։ Ղարիպին ընտանիքը կը մնչէ.

Եկանք բարկենտանք, երթանք ի Ջատիկ.
Աճապ մեկզմէկէ ինտոր տի զատինք.
Կինէ եկաւ գարնան երկան օրերը.
Հալեցաւ ձները, ելաւ գետերը.
Բուսաւ առուեզերուն կանաչ խոտերը։
Կա՛գւուկ, խնդաս երկու ձագկանտ արեւը.
Թռչիս և իյնիս Ստամպօլու վերեւը.
Շատ հաց. ու շատ բարեւ խրկիմ խարիպիս,
Խարիպիս, Խարիպիս, մէկիկ աղբօրս։
Այ Եօրկէօ օրերը, Զատկուն կիրակին,
Աւա՜ղ, մեր խարիպներն են խարիպ երկիր։
Ե՛լ եկուր, ե՛լ եկուր, խավլը (պայման) խաբար է (բաւէ)։
Իրեք տարին մէկ կտրիճին խարար է,
Շատ կենալը քու արեւուն զարար է։
Ե՛ս ալ Ստամպօլու վարպետ պիտէի,
Ստամպօլ քակէի, նորուց շինէի.
Վաղուց գնացողը սիլայ (հայրենիք) խրկէի.

Ղարիպը հայրենիք բառը լսելուն, ա՛լ չի դիմանար և սրտափղձուկ կը պատասխանէ.

Միլաս որ միտքս ինկաւ, կ'երթամ չիմ կենար.
Եաման աս տէրտէրուն (ցաւ) ալ չիմ դիմանար։
Ստամպօլու սուրբ ժամեր ու սուրբ խաչեր,
Իմ տէր, մուրատս տուր, սիլաս իմ դարձեր։

Ղարիպին տէրը կը տաշորի.

Ի՞նչ քաղցր ու անուշ է գարնան օրերը,
Ամպեր ու չի պարզեր սրտիս արեւը.
Խրկէ՛ ու մի՛ կտրեր սիրուս բարեւը։
(Հնութիւնք Ակնայ էջ 425–6).

702

Ղարիպին հարսին վրայ, լուսինն ալ կը գթայ։ Ցաթած լուսնակին՝ տարագրեալ փեսային հարսը կը հարցնէ ողորմուկ.

Ամ ով, ամ երտիքմ եկեր.
Ամ օտար հողը կու կոխէ։
Թէ մարդ ես նը վա՛ր եկու,
Թէ չուշան ծաղկիկ գնալու։
— Ո՛ւչ մարդ եմ ի վար գալու,
Ո՛ւչ չուշան ծաղիկ՝ գնալու։
Պիւլպիւլ իմ ու ժառ գնալու,
Շատ երամ ունիմ գնալու։
Երթամ շատ երկիր ումնիմ (անցնիմ)

*Շատ խարիպ տեսնիմ մէն ի քուն։*
*Ամենուն խարիպն է քուն,*
*Իմ ու քու խարիպն է արթուն։*
*— Խարիպս որ ճամբով կ'երթայ,*
*Ես անոր ճամբեկ պիտէի։*
*Ո՛ր աղբիր ուր ջուր խմէ,*
*Ան ջրին ակնեկ պիտէի։*
*Յածնար ան ջրէն խմէր,*
*Ես ալ իմ մուրատն առնէի։*
*Թրթար որ քաղաք իջնէր,*
*Ան քաղքին խանճի (պանդոկապետ) պիտէի։*
*Ուր գար ու խանը իջնէր,*
*Իմ էգիզ օտան տանէի։*
*Թեւիկս ալ շըլլին ձգեմ,*
*Մանտրտիկ հետը խօրըթեմ։*

(Նոյն էջ 434).

## 703

*Պանդուխտին հարսը կ'երգէ.*

*Իմ եարն է գրեր ըսեր,*
*Եար եկու զիս գողցի՛ր ու տա՛ր։*
*— Ինտո՛ր գամ, գողնամ տանիմ,*
*Ատ չէօլին (անապատ) ճամբեկն է դժար։*
*Մի վախեր, եար, մի՛ վախեր,*
*Ես կարմունճ կապիմ քո կամար։*
*Ես կարմունճ կապիմ քո համար,*
*Մարգրիտ շարիմ լարէ լար։*
*Սփռիմ էպիշում խալի,*

Ուր գործած տաս ւ երկու տարի։
Ոտքովտ ի վրան կոխես,
Ոտքացդ փոշեկը առնիմ։
Ոտքացդ փոշեկը առնիմ,
Ուր քաշիմ աչքիս թիւթիա։
Ուր քաշիմ աչքիս թիւթիա,
Աչքերուս լուսը չատանայ։

(Նույն էջ 435).

## 704

*Հարսը կը պատուիրէ, որ խպնի լուսինը.*

Լուսիկ բոլըրեր ւ եկեր,
Ես իքու խարիպտ ի նման.
Խպնէ ու ամչնէ՛, լուսիկ,
Ո՞ր տեղտ իմ խարիպիս նման։
Խարիպս թուխ աչք ունէր,
Թուխ յուներ ու չուչման (գեղեցիկ) բե-
րան։
Շրթունք, չուրթեղէն ունէր.
Սըռմա թել պեխերն իվրան։

(Նույն էջ 438).

# ԳԼՈՒԽ Ի.

## ԵՐՋԱՆԿՈՒԹԻՒՆ, ԱՊԵՐՋԱՆԿ. ՀՊԱՐՏՈՒԹԻՒՆ. ԲԱՂԴ.

705

*Բաղդի դէմ մարդկութիւնը կռուեր է և բողոքեր, կը բողոքէ նաև Գամառ Քաթիպա.*

*Ա՜յ իմ չար բաղդ, քեզ ի՞նչ ասեմ, արդեօք*
*քեզ ի՞նչ անուն տամ,*
*Թէ կոյր ասեմ՝ իրաւ կոյր ես, բայց այդ*
*դեռ չէ բաւական.*

(Ռամկաշորներ էջ 17).

706

*Նոյն բանաստեղծը զգայուն տողերով ճակատագրի դէմ կը տրտնջայ և իր բողոքը կը լսուի Թափառական Հայ գաղթականներին բերնէն.*

*Երբ ես մտայ անհիւրընկալ այս աշխարհ,*
*Քանի րոպէ բաղդը ժըպտաց ինձ պայծառ.*

(Ռամկաշորներ էջ 19).

707

*Ծեր փեսան կ՚ուզէ իր ծաղկատի հարսը ուրախացընել, վառել անոր սէրը, բայց նա յուսահատ է, բանի սիրով չի կրնար ջերմանալ. ան ապերջանիկ է. ծեր փեսային սիրուն խոստումներուն կը պատասխանէ.*

*Գինին ի՞նչ շահ, երբ սըրտիս մէջ չի կայ*
*սէր. . . .*
*. . . Ակը ի՞նչ շահ, երբ արցունք է իմ աչ-*
*քին։*

(Նոյն էջ 80).

708

*Տգիտութեան և շատ անգամ ալ խեղճութեան նշան է պարծենկոտներուն հպարտութիւնը։ Պատկանեան կը զարմանայ հայկական հպարտութեան վրայ.*

*Զարմանք պան է՝ ամէն Հայ մարդ*
*Հայի առջեւ է խիստ հըմպարտ.*

(Նոյն էջ 328).

709

*Բաղդի մասին Րաֆֆի այս յուսահատութիւնը կը ներշնչէ.*

Ագռաւը շատ կը ցանկանար սիրամարգի փետուրներ ունենալ, բայց ո՞վ կըտայ։ Աստուած մէկին այսպէս է ստեղծել, միւսին այնպէս։

(Խենթը էջ 107).

710

Ըսուած է, «ինչ որ կը ցանենք, նոյնը կը քաղենք». սակայն Սախիկան Փափազեանի համար այսպէս եղած չէ. ըստ Պարոնեանի ան՝ չէր քաղեր ինչ որ կը ցանէր,

Շատ անգամ ելակ կը տնկէր և կաղամբ կը քաղէր։

(Ազգային ջոջեր էջ 191).

711

Շատ քիչերուն կամ դուցէ և ոչ մէկուն բաղդը կը ժպտի, անբաղդութիւնը կը հետևի մինչև գերեզմանին դուռը. Խորենացին այս մասին, սա սրտաշարժ դէպքը կը յիշատակէ. «Քանզի կալեալ զնա (զԿրիւսոս) պարթեւին Արտաշիսի, հրամայեաց հանել յերկաթեղէն տապակ։ Իսկ Կրիւսոսի յիշեալ զբանն Սողոնի աթենացւոյ ասէ.

Ո՜վ Սողոն Սողոն, գեղեցիկ բարբառեցար, ոչ երանել զբարեբախտութիւն մարդոյ մինչեւ ցվախճան:

(Խոր. Պատմ. էջ 186).

712

Ամուսնական խնդրոց մէջ, բախտի ծիծաղն, կամ լացն, միշտ նկատողութեան առնուած է և դժբախտութիւնը ողբերգուած. այս տեսակ դժբախտութեան արտունջ մը մեր պատմահայրը կը յիշատակէ: Տիրանայ դուստրը, Երանեակ Բագրատունի՝ Տրդատայ կնութեան կը տրուի, կինը գեղանի իսկ այրը «գծուծ տեսլեամբ». երջանիկ չէ Երանեակ, կ'ողբայ իր այս դժբախտութիւնը, վասն զի

Զքնաղագեղ ընդ վատակերպոյ և քաջատոհմիկ ընդ վատթարազգւոյ բնակէ:

Տրդատ կը զայրանայ. կնոջ վրայ նետուելով, անոր մազերը կը կտրէ ու կը հրամայէ որ զայն սենեակէն դուրս նետեն:

(Խոր. Պատմ. էջ 291).

## 713

*Կան քրիստոնէական առաքինութիւններ, որոնք սիրելի են նաեւ կրօնքի անտարբերներուն ալ. խոնարհութիւնը սիրելի է անխըտիր շատերուն և անոր ներհակ, հպարտութիւնն ալ ատելի է համեստներուն։ Առակախօսն Վարդան կը գրէ.*

Երկու աքլոր կռվէին ի մէջ փողոցին. և մին յաղթեաց ընկերին և ընկեց զնա և հպարտացեալ թըռաւ և ելեալ բարձրագոյն տեղիս և սկսաւ ճեմել և գագայել և բարձրվիզել վասն յաղթութեան նորա ի պարծանս անձին համարեալ իւր։ Եւ ահա արծիւ ի վերուստ յանկարծակի և առեալ վերացաւ զնայ յաւթն։

(Ժողով. Առակաց Վարդանայ էջ 24).

## 714

*Միեւնոյն հեղինակը խիստ բարձրաթռիչ բնաւորութեանց համար ունի այս այլաբանական առակը, որով կ'ուզէ ակնարկել հպարտութեան խայտառակումը. կը գրէ. «Ժողովեցան կիրիաքն և խեցգետինքն. և գնացին առ արծիւն և ասեն. ուսոյ մեզ թռչիլ. ապա թէ ոչ մեռցուք առաջի քո.*

և առեն. ընդէ՞ր է, որ կէսդ թռչուն էք, կէսդ սողնթացք. և մեք ակարք և ողորմելիք. և առէ արծիւն. արիւն ձեր ի գլուխ ձեր. զի ես առամ, զոր հացէք. զի յիմացաւ, որ հպարտութիւն տարաւ զխելս նոցա. ձայն արար արծիւն. և ժողովեցան առ նայ ամենայն թռչունքն. և նայ տարաւ ըզնոսա ի ծայրս վիմի մի բարձրագունի, որ էր ողորկ. և ի յառո նորա խորայձոր և քարայկառկառ և շարեաց նա ընդ մէջ կիրիայն և զթռչունսն. արծիւ վերացաւ և արար ձայն՝ զնշան թռչելոյն, զոր յառաջ պայման էր եդեալ նոցա. և ապա վերացան թռչունքն յաւթս ըստ սովորութեան իւրեանց, և զան անսեալ կիրայիցն՝ ձայն ետուն միմեանց. և ամենայնք գոչեցին զաւրութեամբ և ամենայն կարողութեամբ վազեցին զհետ թռչնոցն. և ապա մեծաւ աղաղակաւ և սրտամամբ իջին յատակս վիմին և մանրեալ փշրեցան ի քարայկառկառ խորայձորն և եղեն զէշ թռչնոցն »:

Ի՞նչ կը նշանակէ. ըստ առակախօսին.

Ջի ամենայն մարդ, որ հպարտանայ և յան-

բանն և գործն ձեռն արկանէ, որ չէ իւր լայեխ և յարմար և ի վեր է քան զիւր կարողութիւնն, նայ սատակի որպէս զկիրիայքն։

(Նոյն էջ 28).

715

Կարելի է ըսել, որ չի կայ անձ մը որ չողբայ իր թշուառութիւնը. ամէնքը կը կարծեն թէ ապերջանիկ են. իրաւ է. կը գրէ Համերաշխութեան քերթողն Պէշիկթաշլեան.

Ո՜հ, մարդկային տկարութիւնը միշտ պատրաստ է ինքզինքը փուճ պատճառներով թշուառացնելու,

Այդ տեսակ անձը, «շատ անգամ արեւուն ճառագայթները իր գլխուն վրայ կախուած մէյմէկ սուրեր կը կարծէ. ամեն ծաղկանց մէջ թունաւոր օձեր կը տեսնայ, ամեն մէկ քայլ առնելուն կարծէ թէ վհերու մէջ պիտի իյնայ. ամեն գեղեցիկ գոյն ու լոյս սեւ ու պալկահար կ'երեւայ իր աչքին»։ Թշուա՜ռ յոռետեսութիւն։

(Պէշիկթաշ. Մատենագրք. էջ 155).

716

*Բաղդի մասին՝ Աբովեան գրած է.*

*Մեր աստղը մէկ անգամ թեքվել ա, էսպէս եկել ենք, էսպէս կերթանք։*

(Վէրք Հայաստանի էջ 35).

717

*Հասարակութեան մէջ առհասարակ ամէն գաղափարի անձանց՝ ատելի համարուած է հպարտութիւնը։ Հ. Ա. Բագրատունին այս ջախջախիչ տողերով կը պախարակէ տխ-մար հպարտութիւնը.*

*Որչափ ոք ի վերին բարձրամբռնէ լայն շրջա-նակ,*
*Նոյն ի բաց կայ յարարչէն եւ ուժգնագոյն մոլի մըրրկաւ։*

(Հայկ դիւցազն էջ 119).

718

*Դժբախտութիւնը երգուած է Բագրատու-նիի դիւցազներգութեան մէջ այսպէս.*

*Անցին զինեւ ժամանակք, ցասեաւ ինձ բախ-տըն և ես բախտին,*
*Եւ յամենայն աշխարհէ կընքեցի զմիտս իմ և զսիրտ։*

(Նոյն էջ 174).

719

Ո՞վ գիտէ, անձին բաղդը պիտի ծիծաղի՞, թէ պիտի լայ. ճակատագրի լեզուն մեզի անծանօթ է.

Ո՞ զմատինն երկնաւորի ժըպրհի շրջել ճակատագիր։

(Նոյն էջ 220).

720

Բաղդի առաւօտը և ճակատագրի լեզուն անծանօթ է. ո՞վ գիտէ թէ ի՞նչ է իր ապագան. ի՞նչ է իր ազգին, իր տան ճակատագիրը. երկրորդ օրը ի՞նչ պատրաստուած է, պարտութի՞ւն թէ յաղթանակ. այս մտածութիւնները Բագրատունին Հ. Արսէն պերճօրէն երգած է, և զոր կարելի է մեր գեղեցիկ զրոյցներու շարքին մէջ զետեղել. կ'երգէ քերթողը.

Ո՛վ գիշեր յոգնատըխուր՝ յաւիտենից մըթոյն հանգէտ,
Զի՞նչ եւս այլ ծոցըդ յըղի կըրես երկունըս Թորգոմայ.

(Նոյն էջ 419).

721

Բաղդի բերկրալի երգը կը լսենք Սրուանձ-
տեանցի «Համով–Հոտովի էջերէն.

Տասուերկու աստղը ծագէր,
Ըմէնն էլ քու բաղդի վրան։
Երնեկ էն օր որ դուն եղար,
Երկինք գետին խնդում եղաւ,
Աստղերը ծափ ծեծեցին,
Էս ի՛նչ բարի պտուղ եղար։
Ինքն կը նմանի խաթուն,
Ոսկին կուգայ բիթուն, բիթուն,
Կոխեց ձըւկին թըռաւ թախդին,
Աշխարհքը ցանկացաւ բաղդին։...
Երկնուց մատնի մը իջաւ,
Էկաւ մատըս խըճեցաւ.
Ես գիտէի ակը խամ էր,
Բաղդըս գոհար բացուեցաւ։

(Համով–Հոտով. էջ 344–5 .

722

Հայաստանի մէջ Համբարձման տօնը ու-
րախութեան օր է, զուարթութեան, ծաղ-
կի և բերկրութեան տօն, դեռատի կուսանք
կ'երգեն այդ օրը. Նոյն օրը «երջանիկները
կ'երգեն իրենց բաղդը.

Ըսօր մեզ համբարցում ա,
Աստծուն փառք ի բարցըմ ա,
Քրիստոս երկինք համբարցաւ,
Ողջիս բաղդը բացւըմ ա։
(Ազգագր. Հանդէս Գիրք XI էջ 49).

723

Ալաշկերացիք՝ ինքզինքը մեծ բան կարծող մեծամիտ մարդուն համար ունին այս առածը,

Ամնելիք. (արժէք) երկու փարայ,
զինք դրէր տոյնի պարայ (աշխարքի հաւասար)։
(Նոյն Գիրք VII, VIII 1901 էջ 456).

724

Հայաստանցիք ունին առակ մը.

Թըլթու բան չէ,
Ըմէն մարդու բան չէ։

Բաղդը անլուծանելի գաղտնիք մըն է, որ միեւնոյն գործը մէկուն յաջող, միւսին անյաջող կ'ըլլայ. յիշեալ առակը մեկնուած է. «Ամէն մարդ միեւնոյն դիւրութիւնը կամ աջողութիւնը չի կրնար գտնել միեւնոյն գործի կատարումին մէջ։

(Նոյն էջ 464).

725

*Անկարողները ընդհանրապէս մեծամտութեամբ կը ճամարտակեն և անկայծակ, ամուլ ամպերու պէս կը գոռան. ասոնց Հայաստանցիք կը յիշեցընեն այս հեգնական առածը.*

*Կրակ պտի թողայ ի պրակ (անտառ)։*

*Մեկնութիւնն է. «Հեգնել մէկին անկարողութիւնը, որ կը նկրտի իր ուժէն բարձըր գործ մը կատարել։*

(Նոյն էջ 470).

726

*Մեծամիտ յաւակնոտներ, որ կը յանդըգնին չափերնէն դուրս ուրիշ ուժեղներուն հաւասարիլ, Հայաստանցիք հեգնական առակ մը ունին. անոնց կը յիշեցընեն.*

*Ձիանք ոտներ նալեցին (պայտել),*
*Կիրիրէքն էլ (կրիայ) վեր վերուցին։*

*Մեկնութիւնն է. «Իրմէ մեծին նմանելու ամբարտաւանութիւն ունենալ։*

(Նոյն էջ 471).

727

*Բայց մարդ միշտ գոռոզ կամ հպարտ չի կրնար մնալ. Հայաստանցիք կ'ըսեն.*

Սար ինչքան բանձր (բարձր) եղնի օր մի ճամբախ վրայով (վրայէն) կ'ընցնի։

*Առակիս միտքն է. «Ամենէն բարձր դիրք ունեցող և ուրիշներէն բոլորովին անկախ ապրող մարդերն իսկ օր մը ուրիշի պէտք կ'ունենան, կամ, շատ խելօք, զգուշ, անաբատ վարք ունեցողներն իսկ օր մը Թերութեան մը, բամբասանքի մը մէջ կ'իյնան»։*

(Նոյն էջ 481).

728

*Տաները իրենց ողորմելի նիւթական և մտաւորական կարողութիւնը առանց նկատողութեան առնելու, մեծ գործերու ձեռք կը զարնեն և բնականաբար կը տուժեն. այդ տեսակ հպարտ խեղճերուն Հայաստանցիք ունին առակս.*

Տուն չունի Թանապուր,
Ինք կը քէլայ (կը քալէ) էքէպուռ (հպարտօրէն)։

*Մեկնութիւնն է. «Հակառակ նիւթակա-*

*նին՝ չափազանց մեծ ծախքեր ընելու յիմարութիւն ունենալ»։*

(Նոյն էջ 483).

729

*Քանի մենք թշուառացնող պատճառը չենք խափանած, կարելի չէ որ ձեռք ձգենք երջանկութիւնը։ Կայ այս առակը.*

*Քանի մուտօն դէս ա (այս կողմն է)*
*Մեր հալն (վիճակ) էս ա (այս է)։*

*Մեկնութիւնն է. «Թէ իրենց դժբախտութիւնը կը տեւէ այնչափ, որչափ անոր պատճառ եղող անձը կայ, իրենց քով է, կամ իրենց վրայ կ՚ազդէ»։*

(Նոյն էջ 485).

730

*Մեծամտութեամբ գոռոզացած անձուկ գլուխներուն համար, Ալաշկերացիք ունին առակս.*

*Քիթ տնկեր.*
*Կը փչայ յամպեր.*

*Այս է պարզ մեկնութիւնը. «Ուրիշին*

*չ՚հաւնող, հպարտ, ինքնահաւան (բարձրա-քիթ) մարդ»։*

(Նոյն էջ 486).

731

*Ծոյլը երջանիկ չըլլար. Հայաստանցիք լա՛ւ կ՚ըսեն.*

*Գողութիւն (ծուլութիւն),*
*չ՚գտնի արքայութիւն։*

*Թէ. «Ծուլութիւնը ամէն բարիքներէ կը զրկէ մարդը»։*

(Նոյն էջ 489)

732

*Ըստ առածին, միամիտներու բաղդը բանուկ կ՚ըլլայ.*

*Դուն ի քուն,*
*քու բաղդ արթուն։*

(Նոյն էջ 490).

733

*Ամէն մարդ ըստ իր ճաշակին երջանկութեան վրայ գաղափար մ՚ունի, և ըստ այնմ անոր կը ձգտի. զանազան գաղափարներու*

*մէջ, անտարակոյս կը գտնուին խելացին և ցնորականը. երջանկութեան վրայ խորհելուն՝ Թարբերդցիները ցնորած են. ըստ առածին Աստուած Թարբերդցիները ստեղծելուն՝ հարցուցեր է. ի՞նչ բանով գոհ կը լինիք երկրի վրայ, ի՞նչ կ'ուզէք որ տամ ձեզ. Պատասխանած են.*

*Հաց, գինի, կին:*

*Գարեգին Սրբազան Սրուանձտեանց կը գրէ. «Արդարեւ կարծես այս երեք բառերէն զատ իրենց համար հող կամ փափաք չկայ. բայց կենաց այդ երեք պայմանները ալ չարաչար կը վայելեն, ոչ իբրեւ Աստուծոյ օրհնութիւն, այլ պատիժ:*

(Թորոս Աղբար Բ. էջ 82).

734

*Ո՞վ է երջանիկ: Ոչ ոք. լեռներուն երգը լսենք, վշտացեալ մը՝ լեռներուն երնեկ կու տայ.*

*Լե՛ռներ, ձեզ երնեկ կուտամ.*
*Ուր ատենկ (այդպէս) բարձր էք մնացեր:*
*— Մեզի երնեկ չի պիտի,*

*Մեր տէրտէրը շատ կու լընի։*
*Ամառը տաքուն կ'երինք,*
*Ձմեռն ալ ի մէջ ձուներուն։*

(Հնութիւնք Ակնայ էջ 468).



# ԳԼՈՒԽ ԻԱ.

## ՀԱԽԱՏԱՐՄՈՒԹԻՒՆ, ԵՐԿՄՏՈՒԹԻՒՆ, ՆԱԽԱՆՁ, ՈՒՆԱՅՆՈՒԹԻՒՆ, ԱԶԳԱՏԵՑՈՒԹԻՒՆ, ՎԱՏՆՈՒՄ։

735

*Բանաստեղծ Քաթիպան ունայնութեան վրայ երգելով, կը յորդորէ.*

Էսօր, էգուց քեզ կու գրէ պատանքը.
Ու չի փրկիլ մահից ոսկին, ո՛չ հանքը։
(Ոտանաւորներ էջ 16).

736

*Նախանձը որ մեր տկար հոգեբանութեան ամենէն զզուելի ախտն է դարձած, զայն անիծեր են մեր ամէն գրագէտները, բանաստեղծները, և կրակոտ Քաթիպան, իր «Լուսնի պատմութեան» մէջ, Հայաստանի չարիք նիւթողը՝ նախանձը կը համարի.*

Բայց քեզ ո՞վ նիւթեց այդքան մեծ չարիք,
Երկնացօղ պարտէզ, Հայոց աշխարհի՛կ.
Նախա՞նձ էր տիրել այդ մարդի սրտում,
Թէ՛ օձ էր բընել նորա չար հոգում...
Այո՛, նախանձ էր, նախանձ դարեւոր։
(Նոյն էջ 86).

737

*Զուտ ազգասիրութիւնը, ամբակուռ կը պահէ ազգային սէրը, գաղափարը. բայց մեր մէջ ազգասիրութիւնը երբ զուտ, անկեղծ է, զայն կարելի է համարիլ առաքինութիւն. բայց ամէն հայ այդ առաքինութիւնը չունի. քիչ են զուտ ազգասէրները։ Օտար աշխարհ, օտար հանգստութիւն չուտով մոռցընել կուտան ազգային երկիրը, ազգային կրօնքը.*

*Հայը անճարակ՝ կը մոռնայ ազգը,*
*Կըրօնն, և լեզուն, և հօրանց փառքը,*
*Հայկ, Արամ, Տիգրան և այլ դիւցազունք*
*Կ'երեւին նոցա պատիր չաղփաղփունք.*

(Նոյն էջ 92).

738

*Պատկանեան յուսահատ ու զայրացկոտ նախանձորդ գրչակներուն կը հարցընէ.*

*Պատճառը ի՞նչ է ձեր այդ վըրդովմանց...*
*Ճանաչեցի քեզ, «հայկական նախանձ»։*

(Նոյն էջ 228).

739

*Ու «Խելօք լէմէնդ» քերթուածով, կ'ըսէ.*

*Երպըռաան լեզուա քու սիրտըտ պացից,*
*Քու սիրտը ըրված էր չար նախանձից։*

(Նոյն էջ 282)։

740

*Ազգութիւնը և Հայրենիքը ատողներուն և ուրացողներուն, ուղղելի է Հ. Ալիշանի սա ճշմարիտ բացատրութիւնը.*

*Չիք ինչ նողկալի քան զմարդ ազգուրաց և հայրենատեաց։*

(Բազմավէպ 1844 էջ 368)։

741

*Բանաստեղծ Հ. Ալիշան ազգատեցութեան ախտին դեռ աւելի բռնկած բացատրութիւն մ'ալ կ'ընէ. իրեն համար ազգատեացը և հայրենատեացը հրէշ է.*

*Հրէշ անհեղեղ քան զհայրենատեաց մարդ ուրեք երեւեալ ոչ է։*

(Նոյն էջ 368)։

742

*Ազգատեաց է այն, որ իր յատուկ ազգային լեզուն կ'ատէ։ Հ. Ալիշան կը հարցընէ.*

Իցե՞ս հայրենասէր դու, որ զճշգրտագոյն կնիք հայրենեացդ ուրացեալ ես յանձնէդ, այսինքն զսկզբնական քո լեզուն, առանց որոյ ոչ հայ ես և ոչ անհայ։

(Բազմավէպ 1845 էջ 335).

743

*Ազգատեցութեան տխուր օրինակներ շատ կան. պատմութիւնը ինքնին կը վկայէ որ տարաբաղդաբար մենք մեր թշնամին եղած ենք, և մեր մատենագիրները ողբացեր են մեր խղճալի վիճակը։ Հ. Ալիշան որ մեր ազգին վրայ արատ ու բիծ չուզեր տեսնել, բայց սակայն ինքը ևս կը գրէ սա երեմիականը.*

Զքեզ ողբամ, ո՛վ աշխարհ Հայոց, վասն ամենայն չարեացն քոց, և ողբամ առաւել զչարեացդ պատճառսն. ողբամ զքեզ ի քոյսն յանարժանսն քեզ. ի դատաւորս քո տմարդիս, անընտրողս իրաւանց և հակառակողս ի վարդապետս քո տըխմարս, ընդ ինքնահաճս և նախան-

ձոտս. ողբամ զքեզ ի կրօնաւորսն քո կեղծաւորս և սնափառս ի վիճակաւորս քո հպարտս, ձոյլս ատեցողս արուեստից և վարդապետական բա֊նից. յաշակերտս՝ քո հեղգս յուսումն և փոյթս ի վարդապետել. ողբամ զքեզ ի ժողովրդականսն քո համօրէն, ստահակս, մեծախօսս, անվաս֊տակս, մնասակարս, փախչողս ի ժառանգութե֊նէ:

(Նոյն էջ 345).

## 744

Եւ պէտք ենք համոզուիլ, որ մեր երկ֊պառակութեանց ամենէն անգութ զէնքն է է Նախանձը. սա միշտ փլցուց հայկական շէնքը, նոյն զարշ զէնքը կարծեալ կը յօշօշէ. կուցէ զանուին փարիսեցիներ, որ զայն իրենց վրայէն նետեն, սակայն ափսոս որ այն վար իյնալու տեղ, սրտին վրայ կառ֊չած կը մնայ: Նահապետ կը մաղթէ որ փշրենք մեր այդ հօգեբանական զազիր զէն֊քը.

Չըլնի ոք նախանձ չըլնի հակառակ,
Թէ չէ՝ նման խոտու լինի խայտառակ,
Այլք ծըլին ծաղկին, թէպէտ քըչիկ մ'ուշ.
Զարկամըն մընայ միշտ դըժնիկ, միշտ փուշ.
Որք խելօք սիրով կան զինչ աղբըրիկք
Տեսնեն քո զարունդ, Հայոց աշխարհիկք:
(Հայրուձի էջ 274).

## 745

*Եւ շատ անգամ մենք մեր ազգային կըր-քերով ազգին թշնամին կ'ըլլանք.*

Ո՞հ, ես տեսնում ա՛յլ մեծ չարիք, ողբամ ըզ-քեզ.

Ողբամ հազար, որ այդ չարեաց պատճառ դուն ես։

(Նոյն էջ 286).

## 746

*Նախանձի մասին Գոշ առակախօսն կը յիշատակէ զայս.*

Հօտ՝ յերթալն իւրեանց շարժէին դմակք նո-ցա, և սկսան զնոսա բամբասել հօրանք այծից, թէ ընդէ՞ր նման մեզ ոչ երթայք պարկեշտս։ Եւ զի նախանձ մանաւանդ էին բանբասանքն։

*Կը մեկնէ առակախօսը. «Ցանկիման կա-ցուցանէ առակս՝ զբարս նախանձոտաց. յա-ռաջել ումանց շնորհիւ՝ բամբասեն. և ին-քեանք՝ զի ոչ ունին, ի պարկեշտս համա-րին։*

(Մխիթար Գոշ էջ 74).

747

Նոյն առակախօսը կը գրէ նաեւ.

Մոխակ և ցախ սարեկ, և այլք նմանք սոցին երգաբանիչք՝ ոչ միայն երգեն, այլ և սիրեն աննախանձաբար զայլոյ երգել։

Կը մեկնէ. «Աննախանձս առակս զմեզ կամի լինել. զի և յերգելն մերում զօրհնութիւնս, և զայլոց եւս սիրեսցուք զերգելն։

(Նոյն էջ 121).

748

Եզովբոս կը պատմէ նախանձոտ սիրամարգի պատմութիւնը. «Սիրամարգը կը տրտնջար Հերային թէ ինչո՞ւ համար աստուածներն իրմէ տուին կոշտ և անհամ ձայն մը, իսկ սոխակին տուին անուշ ձայն։ Աս քաղցր ձայնը կ'ըսէր՝ ան պզտի թռչունէն առաւել ես արժանի էի ունենալ. ես որ աւելի գեղեցիկ եմ ամէն թռչուններէն, որ օդին մէջ կը թռչին։ Պատասխան տուաւ չաստուածուհին թէ ճշմարիտ է ըսածդ, որ դուն ամէն թռչունէն գեղեցիկ ես եւ ամենէն գէշ

ղուն կ'երգես. բայց սոխակը՝ որուն ձայնին կը նախանձիս ղուն անիրաւութեամբ, ամենեւին չի ցանկար քու փետուրներուդ. վլանգի գիտէ թէ աստուած իր պարգեւն ամենուն ալ բաժներ է. և ինչ որ կամեցեր է տալ՝ ամէնքը պարտական են որ իրենց ունեցածին վրայ գոհ ըլլան։ Ուրեմն լռէ՛, ա՛լ մի տրտնջար, վախցիր որ քու հպարտութիւնդ պատժելու համար չըլլայ թէ փետուրներդ ալ առնէ, որով այսչափ ամբարտաւան ես եղեր»։ Եւ այս առթիւ Թարգմանիչը կը կազմէ սա խրատական տաղը.

Նախանձոտին կերի հոգին
Երբ կը տեսնէ այլոց բարին։

(Եզովբոս առակք էջ 155).

749

Եզնիկ ամէն չարեաց պատճառը՝ կը նկատէ չար նախանձը.

Սկիզբն չարեաց զնախանձ ասեմք։

(Եզնիկ էջ 49–50).

## 750

Երկար տանն Արտաւազդայ տառապելը վաղեմի հայութիւնը ահուդողի մէջ թողուցած է։ Պատմիչք նկարագրած են այդ տառապելի նշանակութիւնը. ահաւասիկ զայն ըստ Յայսմաւուրաց. «Թագաւոր մի կայր Հայոց՝ Արտաւազդ անուն, և ունէր որդի մի խելագար՝ Շիդար անուն. և ի մեռանել Արտաւազդայ՝ ոչ ետ զթագաւորութիւնն Շիդարայ, զի խելագար էր, վասն որոյ աշխարհս վրդովեցաւ և աւերումն լինէր ոչ սակաւ։ Եւ յաւուր միում հեծեալ Շիդարն ի ձի, և ետ փող հարկանել թէ կամիմ թագաւորել. և ել գնաց ընտիր հեծելովք ի զբօսանս։ Եւ ելեալ ի վերայ կամրջի գետոյն՝ վասն անցանելոյ, և անդէն շարժեալ զնա այսոյն պղծոյ, անկաւ ի գետն և կորեաւ։ Եւ հեծելազօրքն համբաւեցին՝ թէ աստուածք Շիդարայ յափշտակեցին զնա և եղին ի Մասիս լեառն. որ է Ազատ Մասիս. և անդ կայ շղթայած. և երկու շուն, մի սպիտակ և մի սեաւ՝ լզեն հանապազ զշղթայն Շիդարայ. և ի տարեկիցն՝ ի մի

մազն գայ, որ թէ կտրի՝ սա ելանէ և զաշխարհս անցուցանէ։ Վասն այսորիկ կարգեցին կախարդքն առասպել դիմօք, թէ ի տարեմուտն՝ ի նաւասարդի մին՝ ամենայն գործաւոր զիւր գործն զինչ և իցէ՝ կոփէ երեք անգամ. զարբինն՝ զսալ հարկանէ կռանաւն պատարկ. այսպէս համդերձագործն, նոյնպէս և այլքն. զի

Կապ Շիդարայ ի մազն եկեալ է

եւ կարիլ, պարձեալ հաստանայ և ամրանայ, որ ոչ ելնէ Շիդարն զաշխարհս անցուցանէ»։ Յիշատակելով այս առասպելը, մեր նպատակն կ'ըլլայ վտանգի առեն գործածել բացատրութիւնն «Կապ Շիդարայ ի մազն եկեալ է». ըսել կ'ուզուի մազ մնացեր է վտանգին։

(Հայապատում Բ. էջ 64–5).

751

Վանական վարդապետ, նախանձի մասին կը գրէ.

Նախանձ և հեռ ուր մտանէ՝ քակէ։

(Հայապատում Բ էջ 113).

752

*Աշխատութեան գաղափար չունեցողը դիւրաւ կը վատնէ իր հարստութիւնը և զուր տեղը շատ ստակ կը մսխէ․ այդ տեսակ անձանց պէտք է յիշեցընել Հայաստանի սա առակը․*

*Ձի չը կայ՝*
*Մսուր կը կապայ (շինել)։*
(Ազգր. Հանդէս VII. VIII. 1901 էջ 471)



# ԳԼՈՒԽ ԻԲ.

## ՑԱՓՇՏԱԿՈՒԹԻՒՆ, ԱՆԻՐԱՒՈՒԹԻՒՆ, ԲՌՆՈՒԹԻՒՆ, ՎՐԷԺԽՆԴՐՈՒԹԻՒՆ։

### 753

*Գամառ Քաթիպա հայուն վրէժխնդրութեան կրակ կը փչէ. կ՚ըսէ Թող լռէ՛ մունջը, անպատմալոյծը Թող լռէ՝ ան, որուն քաղցր է Թշնամւոյն լուծը, բայց ո՛չ քաջ ու արիական հայը.*

*Բայց մենք որ ունինք հոգի ու սիրտ քաջ,*
*Ե՛կ, անվախ ելնենք Թըշնամու առաջ,*
*Գոնէ մեր փառքը մահով յետ խըլենք։*
*Ու այնպէս լըռենք։*

(Ոտանաւորներ էջ 96).

### 754

*Աւարայրի դիւցազին բերնէն Գամառ Քաթիպա վրէժխնդրութիւն կը գոռայ. մեր արիւնը խմող Թշնամւոյն դէմ յաւիտենական ոխակալութիւն կը քարոզէ.*

*Անէծք եմ Թողնում ես այն վատ Հային,*
*Որ ո՛չ ոխ, այլ սէր ցոյց տայ գոռ Պարսկին։*

(Նոյն էջ 100).

755

*Եւրոպայի մեր ցաւերուն հանդէպ լռակացութիւնը՝ անիրաւութիւն մըն է մարդկային գաղափարական սուրբ մըտքին, և անոր համար Պասկանեան երգիծական ողբով կ'երգէ.*

Վերջ ի վերջոյ՝ Հայ արիւն ալ վոթեցաւ,
Ե՛ւրոպ, արդեօք արեան պասքըդ յագեցա՞ւ։
(Նոյն էջ 177).

756

*Գող աւազակ յափշտակողի մասին, Րաֆֆի կ'ակնարկէ այս ծանօթ գործածուած առածն.*

Գողը իր համար տուն չի կարող շինել, բայց տուն ունեցողի տունը կը քանդի.
(Խենթը էջ 70).

757

*Ճակատագրակա՞ն թէ չարամիտ անիրաւութիւն մըն է, որ շատ անգամ կը պատահի անոնց, որոնք կռուի մէջ բարիք մը կամենալով, զոհ կ'երթան. մեր ազգը այդ զոհերէն է, բարի ու միամիտ զոհերէն։ Տաս*

*նշանաւոր է Րաֆֆիի յիշատակած սա ա-ռածը.*

*Ձին և ջորին պիտի կռուեն, իսկ մէջտեղում էշը կը սատակի...։*

(Խենթը եր 178).

758

*Պարոնեան՝ Քրիստոսատուր Ղազարոսեանի կրքոտ վրէժխնդրութիւնը կը նկարագրէ այսպէս.*

*Մէկ անձէ մը վրէժ լուծելու համար այն անձին բնակած քաղաքը կրակի կուտայ. և իւր նարկիլէին յարմար կրակ կը փնտռէ այն տեղը։*

(Ազգ. Ջոջեր եր 286).

759

*Ցափշտակող աւազակներուն յատուկ՝ առակի աեղ կրնանք գործածել Վանանդացւոց յատուկ սա նկարագիրը.*

*Վանանդացիք զաւազակութեան գործ մեծ ցանկութեամբ գործէին, և որպէս ուղիղ իրք ախորժելի թուին նոցա։*

(Խոր. Պատմ. եր 474).

760

*Ուր Քրիստոնէից աւետարանը ձայն չունի, կը յարգուի «ակն ընդ ական»ի վրէժխնդրութեան սկզբունքը.*

*Թշնամանք ի թշնամանաց վրէժ առնուցուն։*
(Խոր. Պատ. 515).

761

*Հասարակաց շահերուն պաշտպան՝ իբրեւ զէնք, կարելի է գործածել սա առակը, որ է պատկեր առաջնորդներու, իշխաններու անիրաւութեան.*

*Միթէ ես երէկեայն աւուր տղայ եմ, որ այսչափ պոյ եմ մեծցուցել.*

*Ի՞նչ կը նշանակէ. ահա պատմութիւնը։ «Ուղտ և գայլ և աղուէսք եղբարք եղեն և ի ճանապարհին գտան գ. սուրբ հաց. և ասեն ցմիմեանս. որ աւագ է նա կերիցէ. սկսան ասել զտարիքս իւրեանց. ասէ աղուէսն. ես այն աղուես եմ, որ Ադամ անուն եդ ինձ. և գայլն ասէ. ես այն եմ, որ զիս Նոյ եմույծ ի տապանն։ Եւ տեսեալ ըղտայն, որ նոքա աւագ ելան քան զնա. և*

*հացն կերէ ձեռացն. տանել զհացն ի բե-րան յորոյց և բարձրացոյց ասելով. մի թէ ես երեկեայն աւուր աղայ իմ. որ այսչափ պոյ եմ մեծցուցել. և սկսաւ ուտել զհացն. և աղուեսն լայր և աղաղակէր ձաթկելով, մինչև կոխեալ սատակեաց զաղուեսն։ — Ցուցանէ, թէ մեծատունք և առաջնորդք ծծեն զկղեղս ժողովրդեան. և չարք այն են, որ աղքատանիան»։*

(Ժողով. Առակք Վարդ. էջ 78).

762

*Հայրենիքնիս միշտ յափշտակութեանց և աւեր ու կործանումի ենթարկուած է. ող-բալի է Անւոյ առումը Ալփասլանի պաշա-րելով. ականաւոր աւագանիններն երբ կը տեսնեն Անւոյ կործանումը, կը տարածուին արքայական գերեզմաններու վրայ, ողբալով կ'արտասուեն ու կը հառաչեն.*

Արի՛ք, տեսէք զտուն հայրենեաց ձերոց։

(Մատթ. Ուռհ. ճԺՁ).

763

Երբ մեր տունը կը քանդեն, մեր վրայ կրակ կը լեցընեն, կը խուժեն մեր վրայ որ բռնեն տանջեն, լլկեն, բնական օրէնքը կը պահանջէ որ մի միայն ծնրադիր չաղօթենք, այլ և պաշտպանենք մեր կեանքը. մենք մեր կեանքին վրէժխնդիր պէտք ենք ըլլալ. Աստուած մեզի զէնք միա՛յն աղօթքը չէ տուած, այլ և անձնապաշտպանութեան համար խելք, կորով, քաջասրտութիւն։ Ուրեմն պէտք չէ միայն աղօթքին զօրութիւնը մտածելով կոյր ու ծոյլ մնալ.

Աղօթքն իր տեղը, թուրն իրը։

Արտօլեան այդպէս ըսած է, և յիշեցուցած, թէ. «Աստուած դշխն, հայրլանին էլ՝ եա չանկ ա տվել, եա պոզ, եա ատամ, որ չանկռի, հարու տայ, կծի իր գլուխը պահի...»

(Վէրք Հայաստանի էջ 117).

764

Բագրատունին Հ. Արսէն անիրաւութիւն կը համարի ազգ մը ուրիշ ազգի մը վրայ բռնանալը.

*Ոչ միում են իրաւունք տիրել ազգի յայլում վերայ:*

(Հայկ. դիւցազն եր 35).

765

*Անիրաւութեան վրէժխնդիրը երկինքն է.*

*Զիրաւունս և զանձին չափ տացէ նոցա գի֊տել երկինք:*

(Նոյն եր 219).

766

*Հ. Արսէն Բագրատունի կ՚ըսէ, թէ երկինք ձեռնտու չէ դաւաճաններուն.*

*Զեն երկինք ձեռընտու դաւաճանօղ բըռնաւո֊րաց:*

(Նոյն եր 364).

767

*Անիրաւ զրկանքներու տակն, հոգին չախ֊ջախուած՝ երկինք կը հասցնէ իր բողոքները.*

*Ո՞ւր ես դու վերին խընամք ամենատեսչութեան,*

*Ա՛ռ իմէ՞ յանցանաց դատիմք այսպէս անո֊ղորմ.*

(Նոյն եր 424).

768

*Երկինքն ալ ունի իր գաղտնիքները, ամէն անգամ չի վարձատրուիր առաքինին և քաջարին.*

*Այլ աւա՛ղ, ոչ ըզքաջաց պըսակեն միշտ երկինք ըզջան։*

(Նոյն էջ 507).

769

*Յափշտակութիւնը կամ գողութիւնը միշտ գողութիւն է. փոքրի և մեծի խնդիր չի կայ։ Հայաստանցիք ունին յետագայ առակը.*

*ինչ ձուի գող*
*ինչ ձիու գող։*

*Լալայեանցի Հանդէսը կը մեկնէ. «Գողացած իրի փոքրութիւնը չի արդարացըներ գողութեան յանցանքը»։*

(Ազգ. Հանդէս Գիրք VII VIII 1901 էջ 466).

770

*Վատն ու բարին հաւասարապէս վարձատրել, գնահատելն անիրաւութիւն է. Ալաշկերտցիք այդ առթիւ կը գործածեն սա առակը, որ ծանօթ է.*

*Հաստ ու բարակ մէկ գին,*
*Վա՜յ բարակ մանողին։*

***Մեկնութիւնն է. «Երբ լաւ գործողը վատին չափ կը գնահատուի ու կը վարձատրուի»։***

(Նոյն էջ 470).

771

***Անիրաւութիւնը դութ չունի, կը հարուածէ կուրօրէն. առակ է.***

*Շատ դատողին (աշխատողին) շալէ շապիկ,*
*քիչ դատողին շարէ (մետաքս) շապիկ։*

***Մեկնութիւնն է, «Կեանքի անարդար կողմն ալ այն է, որ չարաչար աշխատողը վատ կ'ապրի, իսկ քիչ աշխատողը՝ շատ լաւ»։***

(Նոյն էջ 499).

# ԳԼՈՒԽ ԻԳ.

## ՀԱՅՐԵՆԻՔ, ՀԱՅՈՒԹԻՒՆ, ՏԷՐՈՒԹԻՒՆ։

772

*Լատին սովորական այս առածին «Ubi bene, ibi patria» նման կը գտնենք՝ օտար օրհորդի բերնէն ազգասէր Հայ պատանիին լսած այս գաղջ գրոյցը.*

*Քու հայրենիքն այնտեղ է, ուր սիրում են քեզ մարդիկ.*

(Գ. Քաթիպա «Ոտանաւորներ» էջ 107).

773

*Հայութեան բարի յատկութեանց վրէժխնդիր՝ Գամառ Քաթիպան կը գրէ.*

*Հային յիմար կարծողը՝ երկու աչքով էլ կուր է.*

(Նոյն էջ 115).

774

*Պատկանեան քաղաքականօրէն մտածելով, Թուրքին շատ ողջամիտ խորհուրդ կու տայ.*

*Թուրք, լաւ պահպանէ դու Հայոց ազգին,*
*Նա քարէ պատ է քեզ, ոչ թշնամին,*

(Նոյն եջ 188).

775

*Հայութիւնը ժամանակին ընտրեց հպատակիլ Ռուսին, քան թէ միւս մահմետական ազգաց. Րաֆֆի իր «Խենթ»ին մէջ հայութեան բերնով կը խօսի.*

*Աւելի բարւոք էր (հայ ժողովուրդը) համարում հպատակել ռուսաց արծուին, քան օսմանցոց կիսալուսնին...*

(Խենթը եջ 35).

776

*Բայց աւելի նշանաւոր էր Ատրպատականէն 40,000 գաղթական Հայոց այս խօսքը.*

*Լաւ է Ռուսաց խոտն ուտենք՝ քան Պարսից հացը։*

(Բոլասանեան Պատմ. եջ 688).

777

*Րաֆֆի իր «Խենթը» վիպասանութեան մէջ, հայուն անպաշտպանողական բնաւորութիւնը ուզելով պախարակել, չափազանց անազնիւ ստորնութիւններու կ'ենթարկէ մեր ազգութիւնը. ահա թէ ինչ ակնարկներ կան իր այս տողերուն մէջ.*

*Բայց մենք ոչխարից էլ վատ ենք, հաւից էլ վատ ենք... ոչխարը գոնէ եղջիւրներ ունէ, երբեմն նրանցով կռւում է. հաւը սուր եղունգներ ունէ, երբեմն նրանցով ծւատում է... իսկ մենք մեզ պաշտպանելու համար ոչինչ չունենք... Մենք մարդկութեան կեղտն ենք, նրա կղկղանքըն ենք, որ պէտք է մաքրել, ոչնչացնել, որ մարդկութիւնը չապականուի...*

(Խենթը 104).

778

*Րաֆֆիին, երբէք ներելի չէ այս պարսաւները որ հայութեան անգթօրէն կու տայ։ Չի կայ ազգ, որ չունենայ իր յատուկ թերութիւնները։ Րաֆֆիի նպատակը թէեւ հիանալիօրէն համակրելի է, սակայն այդ լեզուն շատ գռեհիկ ու դատապարտելի է։ Եւ շարունակելով իր տեղատարափ պար-*

սաւնեիրը, ամենէն վերջը կը հարցնէ ու կը պատասխանէ․

Բայց մենք ի՞նչ ենք... մենք ոչինչ ենք...

(Նոյն էջ 105)․

779

Րաֆֆի կը գրէ․ «Ամէն մի հայ, առան֊ ձին վեր առած, զգուշ է, մտածող է, ան֊ վստահ է և սեպհական կամք չունի։ Նա միշտ սպասում է օրինակի, որ ուրիշը սկսէ, իսկ ինքն նրան հետեւի»։

Բայց հետեւութեան համար,

Ուզում եմ ասել, որ հայը օտարներից օրի֊ նակ չէ վեր առնում, այլ սպասում է, որ օրի֊ նակը տար նրան իր նման մի հայ։

(Խենթը էջ 192)․

780

Բայց հայութեան մասին Րաֆֆի աւելի յուսահատ ճշմարտութիւն մը կը վկայէ․

Հայը, աւելի քան օտարները, ինքն է իր թշնամին...

(Խենթը էջ 290)․

781

*Իր սովորական առածին՝ տապարի և կոթի մասին, Րաֆֆի հառաչելով կը գրէ այս տողերը.*

*Մեզ հարստահարող, մեզ տանջող, մեզ ստըրկացնող, մեզ ոչնչացնող և մեր տունը քանդող գործիքի կոթը մեզանից՝ հայերիցս է։*

(Խենթը էջ 303).

782

*Մենք շատ տխրութեամբ կ'արձանագրենք Րաֆֆիի հետագայ տողերն, որուն ճշմարտութիւնը և պատմական ահռելիութիւնը յուսանք գոնէ ապագային սոսկում պատճառելով, մենք մեզի կը գթանք, մենք մեր ազատութիւնը չենք մատներ, մենք մեր ողջ մարմինը մեր ձեռքով չենք յօշոտեր։ Ծառերը անտառի թագաւորին կ'իմացընեն, որ գործիք մը յայտնուած է և որ զիրենք կը ջարդէ. և որուն գլուխը երկաթէ է, իսկ կոթը փայտէ. Թագաւորը կը պատասխանէ. «Այդ շատ վտանգաւոր գործիք է». ինչո՞ւ վասն զի «կոթը մեզմէ է»... Րաֆֆիի «Խենթին»*

*մէջ՝ տապարի կոթը կեղծաւոր Թոմաս է-ֆէնտին է. ահա թէ Րաֆֆի ինչ կը գրէ. — «Թոմաս էֆէնտիները, սկսեալ գիւղական մուխթէզիմից, մինչեւ Բարձր Դռան հայ ամիրան, այս տեսակ կոթեր են թշնամիների ձեռքում։ Հայոց պատմութեան մէջ երբէք պակաս չեն եղել այս չար և վնասակար կոթերը։ Ուր կը տեսնէք հայրենիքը և ազգը օտարի ձեռքը մատնելը, — այնտեղ խառն է եղել հայի մատը։ Ուր կը տեսնէք հայ թագաւորի գահընկէցութիւնը և նրա գաւազանը օտարի ձեռքը յանձնելը. — այնտեղ խառն է եղել հայի մատը։ Ուր կը տեսնէք հայ թագաւորի դէպ ի աքսոր մատնութիւն և նրա մայրաքաղաքի դռները թշնամու առջեւ բաց անելը, — այնտեղ հայրենի հողը հայի արիւնով ներկված, նրա բնակութիւնները կրակով ոչնչացրած և նրա զաւակները գերի տարված, — այնտեղ խառն է եղել հայի մատը։ Ուր կը տեսնէք կրօնի, ազգութեան և սուրբ եկեղեցու դաւաճանութիւն, — այնտեղ խառն է եղել հայի մատը։ Մի խօսքով, ամէն թշուառութիւն-*

*ների մէջ, ամեն հալածանքների մէջ, և մեր թշնամիներից կրած ամեն տեսակ եղեռնագործութիւնների և բարբարոսութիւնների մէջ միշտ գործել է հայի սապարը։ Հայը ինքն է փորել իր ազգային շինուածքի հիմքը, և ինքն իր ձեռքովն է կործանել իր սուրբ և նուիրական հաստատութիւնները...*

*Ի՞նչու ենք մեղադրում օտարներին։*

(Խօսքեր էջ 304).

## 783

*Գ. Արծրունի չուզեր ընդունիլ որ Հայութիւնը վաճառական ազգ ըլլայ. կը խորհրդածէ.*

*Բայց մի՞թէ այնպիսի ազգին, որ միայն առնում է և ծախում է, իսկ ինքն ոչինչ չէ արդիւնաբերում կարելի է վաճառականական ազգ անուանել։*

(Գ. Արծրունու Աշխատութիւնները Հ. Ա. էջ 170).

## 784

*Նոյն հրապարակագիրը հայութեան իբրեւ յատկանիշ ճշմարտութիւն մը, կը գրէ.*

*Հայի բնաւորութեան մէջ կայ մի նշանաւոր*

*յատկութիւն. ձկտողութիւն դէպի հարստութիւն... սա հայի արժանաւորութիւններից մէկըն է։*

(Նոյն էջ 274).

785

*Հ. Ալիշան միշտ փափաքելով մեր փափուկ յատկութիւնները զգուել, կը հարցընէ.*

*Ո՞ւր երեւեցաւ երբէք ի Հայս պժգալին այն տեսիլ քաղաքամարց Եւրոպայ, ուր մեծատունն ի գրգանս փափկանայ, և տնանկն նզովս զհետ նմին արձակէ։*

(Բազմավէպ 1843 էջ 336).

786

*Հ. Ալիշան հիացած և մագնիսացած է միշտ հայ տաղանդով, հայ ձիրքերով. կը գրէ.*

*Հայաստան առաջին արուեստանոց և թանգարան եղեալ աշխարհի. անդ Ջրուանք և Ջրադաշտք հնարէին զարուեստ իւրեանց. անդ յառաջ իսկ քան զամենայն մարդ՝ ճարտարապետն ամենայնի Աստուած ուսոյց զերկրագործութիւն...*

*Հ. Ալիշան կը հաստատէ իր համոզումը*

ներքին և արտաքին պատմիչներով։ Ճար-տարապետութեան ծննդավայրն ալ Հայաստանն է. ի զուր արդի հնագէտ մը ըսած է, թէ Հայքս չենք ահղեակ թէ ունինք մեզի սեփական յատուկ ճարտարապետութիւն մը. 50 տարի առաջ Հ. Ալիշան արդէն գրած է թէ Հայաստանի մէջ ծնած է ճարտարապետութիւն.

Ճարտարապետութիւն անդ ծնեալ և արտաքոյ զարգացեալ, և առ Շամիրամաւ անդրէն ի նոյն մուծեալ բարգաւաճեաց ի Տայս և ի Կորդուս, ի միջին դարուն եւս ընծայեաց մեզ Պալլատիոնս զՏրդատ և զՄանուէլ, և ցայսօր խսկ ոչ անընտել է արուեստն մերոց ճարտարաց.

(Բազմավէպ 1844. էջ 350).

787

Հ. Ալիշան մանրամասնօրէն կը դրուատէ հայ երաժշտութիւնը, նկարչութիւնը, ճարտարապետութիւնը, ճարտարարուեստը ու եւրոպացիներէն իսկ վկայութիւններ կը բերէ. և քանի որ օտարները կը հիանան հայ հանճարին վրայ, ինքը չի վարանիր ըսելու,

Թէ հայ մարդ չկայր յԱսիա, աշխարհն այն այսօր ոչ ինչ առաւելոյր քան զԱփրիկէ։

(Նոյն էջ 351).

788

*Մեր հայկական հոգւոյն վեհապանծ յատկութիւնն է եղած ինչ որ կը գրէ Հ. Ալիշան.*

*Վահան զուսով սիրէր ոգին Հայաստանի հըսկել զսահմանօք աշխարհին իւրոյ, քան սուսերամերկ խաղալ յօտարին կալուածս։*

(Նոյն էջ 365).

789

*Հ. Ալիշան ամէն ազգաց բնատուր, և ամենէն գեղեցիկ յատկութիւնները, կը բարդէ մեր ազգին վրայ. Հայութեան ինքը սքանչացող է. և անզուսպ է իր հիացումը, որով կ՚ըսէ.*

*Այս ազգ է միայն որ ի սկզբանէ մինչեւ ցայսօր ի չորից հազարաց ամաց հետէ՝ բարեմոյն վարս կենաց ստացեալ է.*

*Եւ կը շարունակէ ըսել, թէ «այս ազգ է որ զսքանչելի չափաւորութեան իւրոյ տարազ յամենայն տեղիս ցուցանէ, լուրջ գոլով որպէս զՕսմանեանն, աշխոյժ որպէս ըզՊարսն, սակաւապէտ որպէս զՀրեայն, ներբամիտ որպէս զՅոյն, կրօնասէր որպէս*

*զՍպանիացի, ժիր հաւատարիմ որպէս ըզՀելվետիացի, ժուժկալ և մաքուր որպէս զՀոլանտացի, մտահարուստ իբր զԳերմանացին, զուարթամիտ իբր զԳաղղիացին, հզօր ի կարծիս որպէս զԼեհն, խորագէտ որպէս զԼուսիտանացին, վաճառական որպէս զԱնգղիացին, յաջողաձեռն որպէս զԻտալացին, յառաջատես և շահախնդիր որպէս զՎենետկեցին, և չափաւոր որպէս զարդարև Հայ։*

(Նոյն էջ 367).

790

*Ըստ Հ. Ալիշանի Հայրենիքը անպետ և անկրօն գիտուններու պէտք չունի, այլ,*

*Հայրենիք մեր արանց լաւաց և ողջամտաց կարօտ են։*

(Նոյն 1846 էջ 358).

791

*Եւ ըստ Հ. Ալիշանի, հայրենիքի լաւն ու բարին՝ միասին չենք կարող փայփայել. կը գրէ.*

Ազգին պակասութիւնը պարտըկել՝ խելացութիւն է, բայց պակասութիւնը չի ճանչնալ՝ մեծ անխելքութիւն է։

Բայց ո՛ր բժիշկը խորհուրդ կու տայ որ պարտըկենք հիւանդութիւնը, այդ պարտըկելուն մէջ մենք խելք չենք գտներ։

(Բազմավէպ 1849 էջ 65)․

792

Ամբողջ ազգին կրթութեան համար Հ. Ալիշան ունի իր յատուկ գաղափարը։ Ծայրայեղ միջոցներէն կը զգուշանայ. ըստ իր կարծեաց, ազգին առաջնորդները ո՛չ շատ կծող, և ո՛չ ալ շատ փայփայող պէտք են ըլլալ։ Կը գրէ.

Ազգը միշտ վար զարնել, անդադար պակասութիւններն յիշել, ողբալ, արհամարհել, ասոնք մարդուն սիրտը կը կոտրեն, թուլացընեն, յուսահատեցընեն, կատղեցընեն. միշտ գովելն և գովելի ցուցընելն ալ՝ սիրտը կ՚ուռեցընեն, միտքը կուրացընեն, սնապարծ ազգասէր մը կ՚ընեն, օդու մէջ պարող մը՝ որ հաստատութիւն չունի, ու խելացին փուք մը ըսէ՝ վար կ՚իյնայ։

(Բազմավէպ 1849 էջ 66)․

793

*Հ. Ալիշան ընդհանրապէս ազգը խարազանելով ուղղելուն դէմ է.*

*Շատ կը սխալին անոնք որ ազգը կ'ուզեն շարժել յանդիմանելով, կծու ձայնով, կը կարծեն թէ փոսը ընկած էշ մը կը վերցընեն հրելով, մշտելով, կանչուըռտելով, հայհոյելով, այս բանս շարժելու տեղ՝ աւելի կը ջլատէ. կը կոտրէ ուժը, արդէն հիւանդ մարմինը աւելի կը վատուժցընէ։ Նոյնպէս ասոր հակառակ չափազանց փայփայելն շողոքորթելն ալ կրնայ չարաչար գիրութիւն մը բերել հիւանդ սրտին՝ որ նոյնպէս վնասակար է անոր։*

(Նոյն էջ 66).

794

*Հայրենիքի նուագը հիանալի է, երբ կը հընչէ Նահապետի քնքուշ սրինգէն.*

*Հայրենեաց հարուստ է հող, ջուրն անուշ,*
*Քանց օտար վարդ՝ քաղցր է հայրենեաց փուշ.*
*Հայաստանի օդն է քաղցր ու բարակ*
*Հովերն են անուշ, պայծառ են վըտակք.*
*Ջուրն ու պըտուղն համ տան անմահութեան,*
*Խոտն ոսկեզօծէ զգառներուն բերան.*

(Հայրունի էջ 269).

795

*Քա՛ջ են մեր հայեր, Հայաստանի ծնաւ քաջեր անհամար. այսպէս կ՚երգէ «Հայոց աշխարհիկ»ի խօսնակ Նահապետը.*

*Շատ կըտրճուտրայք հանեց Հայաստան,*
*Շատ Բելեր փլուցին քաջքն Հայկի նըման.*
*Հոռոմն, Ասորին, Մար, Սըկիւթ, Պարսիկ*
*Հայոց թըրերուն եղան պատառիկ.*
*Այս սարեր, ձորեր ու դաշտերս ամէն*
*Կարմիր են քրտնել, կարմիր խըմել են.*

(Հայրուշեի էջ 272).

796

*Քաջալերական է Նահապետի սա խօսքը·*

*Թող աշխարհաց լուր լինի՝*
*Որ քանի եմք կենդանի*
*Հայաստան ո՛չ տի մեռնի...*

(Նոյն էջ 338).

797

*Եւ «Հայ հանճար»ի երգը, թէեւ յուսահատ է, սակայն դեռ յոյս կու տան այս երկու տողերն.*

Հայաստան անկեր
Բայց ո՛չ է անցեր։

(Նույն էջ 344)․

798

**Մենք փոքր ենք, բայց մեր անցեալ պատմութիւնը, և քաջութիւնները փոքր չեն.**

Զի թէպէտ և եմք ածու փոքր և թուով յոյժ ընդ փոքու սահմանեալ և զօրութեամբ տկար և ընդ այլով յոլով անգամ նուաճեալ թագաւորութեամբ․ սակայն բազում գործք արութեան գըտանին գործեալ և ի մերում աշխարհիս, և արժանի գրոց յիշատակի․ զորոց և ոչ մի ոք ի նոցանէ պէտք յանձին կալաւ մատենագրել։

(Խոր․ Պատմ․ էջ 20)․

799

Հայասէրն Ալիս Ստօն Պլէքուէլ՝ Պոստոնի Armenia անգլիերէն հանդէսին Նոյեմբեր թիւին մէջ հրատարակած է հայութեան մասին սաղանդաւոր և նշանաւոր եւրոպացի անձնաւորութեանց հետեւեալ գեղեցիկ բացատրութիւններն։ «Պատուարժան Ճէյմս Պրայս՝ «Ամերիկեան Հանրապետութեան» հեղինակը որ Հայաստան ճամբորդած և ժողովուրդը ուսումնասիրած է՝ սապէս կը գրէ.

*Ամբողջ Արեւմտեան Ասիաբնակ ցեղերուն մէջ, Հայերը թէ մտաւորական և բարոյական զարգացման ընդունակութեամբ, և թէ կամքի ու նպատակի բնական յամառութեամբ աւելի յառաջադէմ են իրենց բոլոր դրացիներէն, ոչ միայն Թուրքերէն, Թաթարներէն, Քիւրտերէն և Պարսիկներէն, այլ և Ռուսներէն։ Անոնք զօրաւոր ցեղ մըն են, ոչ միայն ամուր ջղերով և նեարդներով, — ֆիզիգապէս գործունեայ և կորովի, այլ և ուղեղի գերազանց ուժով։*

***Տիկին Իզապէլլա Պըրտ Պիշըբ, համբաւաւոր Անգլիացի ճանապարհորդուհին, խոստովանելէ յետոյ թէ Հայոց դէմ իր ունեցած կանխակալ կարծիքին յաղթելու պէտք ունեցած է՝ կ՚ըսէ.***

*Կարելի չէ ուրանալ թէ հայը ամենէն կարող, կորովի ձեռներէց և յանդուգն ցեղն է Արեւմըտեան Ասիոյ մէջ, ֆիզիգապէս գերազանց և մտաւորապէս սուր, և ամէն բանէ աւելի այնպիսի ցեղ մը, որ կրնայ ամէն տեսակէտով բարձրացուիլ մեր մակարդակին. քանի որ ո՛չ կրօնքի, ո՛չ գոյնի, ո՛չ բարքերու, և ոչ ալ մտքի կամ ուժի ստորակայութիւն կայ իբր պատուար մեր և իրենց միջեւ։ Իրենց խորագիտութիւնը և գործի ընդունակութիւնը նշանաւոր են, և վաճառականական ի՛նչ ձեռնարկ որ կայ փոքր Ասիոյ մէջ՝ գրեթէ ամբողջովին իրենց ձեռքն է։*

***Լամարթին Հայերը կը կոչէ «Արեւելքի***

Ջուիցերիացիները». Տիւլորիէ զանոնք Հոլանտացիներու հետ կը բաղդատէ, իսկ ամերիկեան միսիոնարները զանոնք կը նկարագրեն իբրեւ «Արեւելեան Թուրքիոյ Անկլօ—Սաքսոնները»։ Տր. Կրէյս Ն. Քիմպօլ Հայաստանի կեդրոնը տարիներով ապրելէ յետոյ՝ Հայերը կը նկարագրէ իբրեւ «ձեռներէց ոգիով և յառաջդիմութեան ոգիով լի ցեղ մը, յատկանիշներով մեզի շատ նման և ամէն տեսակ հնարաւորութիւններով հարուստ»։ — Հայերուն մասին բան մը գիտցողներէն ոչ մէկը կ'ուրանայ անոնց խելացիութիւնը և կարողութիւն։ Անոնց դէմ եղած մեղադրանքը այն է թէ վստահելի չեն, և այս ամբաստանութիւնը ընդհանրապէս ամենայն խստութեամբ կը կատարուի այնպիսիներէն, որ անոնց մասին ամենէն քիչ տեղեկութիւնը ունին։ — Տր. Սայրըս Համլին, Ռօպըրդ Գօլէճի հիմնադիրը որ 35 տարի Թուրքիա ապրած է, ուսում տարածելով, գրած է որ «Հայերը ազնուական ցեղ մըն են»։ — Տր. Ճէյմըս Լ. Պարթըն, Օտար Միսիոնարութեանց Ամերիկեան Պոր-

*տին քարտուղարը և Եփրատ Գոլէճի նախկին նախագահը, կը գրէ, «Այնպէս գիտեմ որ Հայերը ժառանգապէս կրօնասէր, աշխատասէր, հաւատարիմ ազգ մըն են, մտային կարողութեամբ աշխարհիս և ոչ մէկ ազգէն վար կը մնան։ Անիկա կ'ըսեմ՝ ութը տարի կապակցութիւն ունեցած ըլլալով Եփրատ Գոլէճի հետ—որ շարունակաբար 500էն 625 հայեր ունի իր ուսանողներուն ցուցակին մէջ, — և վերատեսչութիւն ըրած ըլլալով ուրիշ դպրոցներու վրայ, որ նոյնպէս 4000 հայ աշակերտներ ունեցած են»։*

*— Օր. Ֆլօրէնս Է. Ֆէնշէմ, Կ. Պօլսոյ Ամերիկեան աղջկանց վարժարանին աւագ ուսուցչուհին որ տարիներով հայ աշակերտուհիներ պատրաստած է, ինծի ըսած է որ զանոնք գտած է ոչ միայն քաջ ուսանողուհիներ, այլ և խիստ վստահելի աղջիկներ։*

*— Լորտ Պայրըն Հայերու մասին գրած է.*

Դժուար պիտի ըլլար թերեւս ուրիշ ազգի մը տարեգրութեանց մէջ գտնել աւելի նուազ ոճիրներ, քան տարեգրութեանը մէջ այս ազգին որուն առաքինութիւնները խաղաղութեան պտուղները են, և մոլութիւնները իրենց կրած հարըստահարութիւններուն հետեւանքը։

Տասը տարի առաջուան Ջարդերէն ի վեր ինծի վիճակած է շատ մը հայ փախստականներ զրկել իբրեւ տան սպասաւորներ, անոնց տէրերէն կամ տիրուհիներէն տեղեկութիւն ընդունիլ անոնց մասին, եւ յաճախ անոնց հետքը չկորսնցընել տարուէ տարի։ Ուղղամտութեան հակառակ միայն մէկ օրինակ պատահեցաւ բոլոր զրկածներուս մէջ։ Շատերը իրենց տէրերուն համարումէն զատ, սէրն ալ վաստկած են։ Իմ հայոց մէջ ունեցած անձնական ծանօթներուս եւ բարեկամներուս մէջ կան մի քանիներ որ իմ ճանչցած մարդերուս ամենալաւերէն են։ — Հայերու մէջ ինչպէս ուրիշ ամէն ազգերուն մէջ, ամէն տեսակ մարդ կայ, լաւ գէշ եւ անորոշ։ Քանի որ Հայերը «Ճարպիկ» ցեղ մըն են, երբոր անոնցմէ մէկը ինքզինքը անպիտանութեան տայ, առաջին կարգի սինլքոր մը կրնայ ըլլալ. բայց ընդհանրապէս ճշմարիտ է, ինչպէս Պատ. Էտուին Մ. Պլիս, — Կ. Պոլիս Հայերու մէջ երկար փորձառութիւն մը ունենալէ յետոյ ըսած է, որ «այս ցեղը աւելի շատ եւ աւելի մօտ կերպով

ճանչցողները՝ զայն աւելի բարձր կերպով ալ կը յարգեն »։

(Լուսաբեր թիւ 8 տարի 1904).

800

Մեր ազգին բարուց համար ամեն բան ըսուած է. մեր թերութեանց ամենէն ուժեղ ձաղկողը Խորենացին եղած է. Տրդատ Քրիստոնէութիւնը կ'ուզէ սիրցընել Նախարարաց, սակայն ի զո՜ւր. Հայը ունի իր բնատուր յամառութիւնը. Նորամտութեան դիւրաւ տեղիք չի տար.

Այլ զխստասրտութիւն կամիմ ասել, թէ և զամբարհաւաճութիւն ազգիս մերոյ յիսկզբանց և այսր, որպէս անհամբոյր բարուց և ճշմարտութեան անհարազատ կամ թէ բնութիւն ունելով զբարձրայօնութիւն և զկամակորութիւն...

(Խոր. Պատմ. էջ 367).

801

Նախարարները զբաղած են հարճերով և կիներով. Տրդատայ խրատները շատ դառն կ'անցնին։ Որով քարոզիչ Թագաւորը յուսահատած քարայրներու մէջ կը քաշուի կը

ճգնի։ Եղեռնական է պատմութիւնը. պատմիչը՝ նոյնինքն Թող Խորենացին Մովսէս ըլլայ. «Աստանօր ամաչեմ ասել զճշմարտութիւնն մանաւանդ թէ զանօրէնութիւն և զամբարշտութիւն ազգիս մերոյ, և զմեծի ողբոց և արտասուաց արժանի սոցա գործս։ Քանզի զհետ առաքեալ, կոչեն զնա՝ լինել ըստ կամաց նորա, և ունել զթագաւորութիւնն։ Իսկ ի չհաւանել սրբոյն տան նմա արբումն, որպէս անդ ուրեմն ի հինսն աթենացիքն Սոկրատայ զմոլեխինդն. և կամ թէ զմերն իսկ ասել, կատաղեալ երբայեցիքն ըմպելի լեղեաւ խառնեալ Աստուծոյ մերոյ։ Եւ զայս արարեալ շիջուցին յինքեանց զբազմամեայլ ճառագայթն աստուածպաշտութեան»։ Խորենացին յուզուած այս տխրանենգ գործով, Նախարարութեան այդ վատ արարքը կը համարի ամբողջ ազգին ոճիրը. ու կը բացագանչէ.

Ազգ թիւր և դառնացող, ազգ՝ որ ոչ ուղղեաց զսիրտ իւր, և ոչ հաւատարմացաւ Աստուծոյ ոգի նորա։

Պատմիչն կ'ըսէ թէ մեծ երախտաւորի՝

մը հետ եթէ այդպէս վարուեցան ի՞նչ կը յուսան այլք... Խորենացին և իր ակում-բը այս անձնանուէր գրագիտաց կաճառը ի՞նչ կ'ակնկալե՞ն. «Արդ ընդ եթէ սուրբս Աստուծոյ, և որք ի թագաւորութենէ յաղագս Աստուծոյ զինքեանս նուաստացուցին՝ այս է, այլ զի՞նչ մեր բանս առ Աստուծոյ յաղագս ի ձէնջ վտանգիցս, որոց վտանգք և աղքատութիւն սեպհական է։ Այլ սակայն ասացից։ Ո՞ ոք ի ձէնջ Թոշակս յաղագս մեր, ո՞վ ոք վարդապետացն մաղթանս, ո՞վ ոք բան յօժարեցուցանող կամ յորդորական, ո՞վ ոք յերթալս մեր բեռնաբարձս, ո՞վ ոք ի գալն մերում հանգիստ, ո՞վ ոք տուն կամ օթանոց մեզ պատրաստեաց։ Թողից զայլն, զի և ոչ զլեզուս չարս և զագիտութիւնս, հանդերձ մնոտի փառամոլութեամբն և կատաղի լեզուաբանունութեամբն, սանձահարեցէք. այլ նիւթ նոցա անմտութեան զձեր ուսումնտեացդ սալով բարս, բորբոքեցէք առաւել քան զհնոցն Բաբելովնի»։

(Խոր. Պատմ. էջ 368-70).

802

*Խորենացին իր պատմութիւնը ողբերգութեամբ կը վերջացընէ. իր այդ էջը հայկական եղերերգութիւն մըն է, Հայաստանի և հայութեան տխրունի նկարագիրը. Ծերունի քերթողահայրն մեր Խորենացին Մովսէս կ'ողբերգէ.*

Ողբամ զքեզ, Հայոց աշխարհ, ողբամ զքեզ, համուրց հիւսիսականաց վեհագոյն. զի բարձաւ թագաւոր և քահանայ, խորհրդական և ուսուցող. վրդովեցաւ խաղաղութիւն, արմատացաւ անկարգութիւն, դրդուեցաւ ուղղափառութիւն, կայկայեցաւ տգիտութեամբ չարափառութիւն։

(Խոր. Պատմութ. էջ 546).

803

*Ու կը շարունակէ իր տխուր մշտերգը.*

Ողորմիմ քեզ, եկեղեցի հայաստանեայց, խրթնացեալ ի բարեզարդութենէ բեմբին, ի քաջէն զրկեալ հովուէ և հովուակցէ։

(Նոյն էջ 546).

804

*Հայաստանի վարիչներն ալ կը պախարակուին.*

Իշխանք ապստամբք, գողակիցք գողոց, կըծլիք, կծծիք, ժլատք, ագահք, յափշտակողք, աշխարհաւերք, աղտեղասէրք, ծառայիցն համամիտք։

(Նոյն էջ 554).

## 805

### Հայաստանի մէջ ա՛լ խաղաղութիւն չկայ.

Զի թագաւորք տիրեալք խիստք և չարաչարք, բեռինս բառնալով ծանունս և դժուարակիրս, հրամանս տալով անտանելիս. վերակացուք անհարթարարք, անողորմք. սիրելիք դաւաճանեալք թշնամիք զօրացեալք. հաւատ վաճառեալ ընդ սնոտի կենցաղոյս։ Հէնք եկեալ անհատք և յոլովից կողմանց, գերփումն տանց և յափշտակութիւն ստացուածոց, կապումն գլխաւորաց և բանտք յայտնեաց, յօտարութիւն վտարումն ազատաց և անթիւ նե՛ղութիւնք ռամկաց, առումն քաղաքաց և քանդումն ամրոցաց, աւերումն աւանաց և հրդեհումն շինուածոց, սովք անբաւք և հիւանդութիւնք և մահք բազմօրինակք. աստուածպաշտութիւն մոռացեալ և ակնկալութիւն գեհենի։

(Խոր. Պատմ. էջ 555–6).

## 806

*Տէրութեան մը վարիչէն ոչ վայելչագեղ պերճանք, այլ խելք և վարչական տաղանդ կը պահանջուի։ Կը գրէ առակախօսն Վարդան.*

*Ժողովեցան թռչունք և ընդրեցին զսիրամարգն վասն գեղեցկութեան իւրոյ. ածին զնայ թագաւոր. գայ աղաւնին և ասէ. ով բարի թագաւոր, եթէ նեղեն զմեզ արծիւքն, դու զինչ աւգնութիւն կարես առնել մեզ։*

*Կը մեկնէ. «Թէ թագաւորին ոչ միայն գեղեցկութիւն (վայելէ), այլ և քաջութիւն և պատերազմական զաւրութիւն յամենայն կողմանց»։*

(Ժողոված. առակ. Վարդ. էջ 35).

## 807

*Առաջնորդին շատ խոհականութիւն կարեւոր է. Եզնիկ կը գրէ.*

*Տգէտ և անընտրող առաջնորդ՝ ի բժշկելն խոցէ. և յուղղելն խորտակէ, ի սիրոյ տեղ՝ ատելութիւն ցուցանէ, և յատելութեան՝ զսէր. և խառնափնդորելով զեղբարսն անվաստակ հանէ։*

(Եզնիկ էջ 311).

## 808

*Միեւնոյն բարոյախօսը Հոգեկան պետերուն կ'ուղղէ սա խօսքերը. «Որ սիւն եղեալ է և զբոլոր շինուածն յինքն հաստատեալ, եթէ խորտակի՝ զամենեսեան ի վայր կործանէ։ Այսպէս և առաջնորդն թէ ոչ ըստ կամաց Աստուծոյ վարի, զամենայն եղբայրութիւնն սատանայի մատնէ. և փոխանակ առաջնորդութեանն՝ կորստեան պատճառ լինի։ Մեծ հերձուած և անբժշկելի չարիք է այնպիսի առաջնորդութիւնն.*

*Զի մարդիկ յօրինակն առաւել հային, քան ի ճշմարտութիւնն։*

(Եզնիկ էջ 311).

## 809

*Նոյն վարդապետը առաջնորդներու ագահութեան համար՝ խստիւ կը գրէ.*

*Առաջնորդ ագահ, որ է կռապաշտ, աւազակապետ է... ամենայն աւուր սպանութիւն գործէ։*

(Նոյն էջ 312).

## 810

*Առաջնորդը պէտք է հպատակներուն ցաւովը ցաւի, թէ ոչ.*

*Եթէ ամենայն եղբարցն հիւանդութիւնն քեզ ոչ ցաւէ, մի՛ լինիր առաջնորդ։*

*Եւ դարձեալ առաջնորդին կը պատուիրէ.*

*Եթէ զանարժանն ըստ պիտոյիցն ոչ յանդիմանես, մի՛ լինիր վարդապետ։*

(Նոյն էջ 313).

## 811

*Խիկար դիւանագիտական սա պատուէրը և խորհուրդը կու տայ.*

*Որդեակ թէ լսես բան ինչ ի տան արքունի, մեռոյ և թագոյ զնայ ի սրտի քում և մի ումեք ի վեր հանիցես...*

(Խիկար էջ 10).

## 812

*Մենք ի վաղուց անիծեր ու պախարակած ենք ազգային բնիկ ու յատուկ թերութիւնները. մեր պատմիչները, մանաւանդ Խորենացին՝ իր գրչով ամէն տեսակ հոգե-*

*կան տխուր պակասութիւններ գտած է մեր վրայ. սակայն կը սքանչանայ և կը հրաշանայ մեր վրայ. Բուզանդ Շապուհ պարսից թագաւորին սա խօսքերը յիշատակած է, իբրև վկայութիւն հայկական տիրասիրութեան.*

*Երանի՜ որ Հայոց գնդին տէր իցէ, այնպիսի տիրասէր և միաբան միամիտ զօրաց։*

*Միեւնոյն պատմիչը այսպիսի յատկութիւն մը արձանագրած է նաև Մամիկոնեան Վասակի համար։ Պարսից թագաւորին ախոռապետը մեր Արշակ թագաւորին սա անարգական խօսքը կ'ըսէ. «Այծից Հայոց արքայ, ե՛կ նիստ ի խրձան խոտոյ ի վերայ»։ Հայոց Մեծաց սպարապետն Մամիկոնեան Վասակ, այդ խօսքը լսելուն, բարկութիւնը չի կարենալով զսպել, «ի վեր առեալ զսուսերն՝ զոր ընդ մէջն ունէր, հարեալ անդէն ի տեղւոջն զախոռապետն արքային Պարսից՝ գլխատէր... զի ոչ կարաց ժոյժ ունել զիւրոյ թագաւորին զանարգանս. զիւր մահն առաջի եդեալ՝ լաւ հաշուէր բա-*

*զում անգամ, քան զաեաան իւրոյ լսել ըղվատթարութեան թշնամանս »։*

(Բուզանդ Ե. գ).

813

***Սպարապետն Վահան Մամիկոնեան առ պարսիկն Միհրան գիտել կու տայ.***

*Տէր՝ որ յիւր ի ծառայից զլաւ և զվատթար չգիտէ ընտրել, և ըստ արժանի իւրաքանչիւր ումեք մատակարարել զպիտոյսն ոչ կամի, այնպիսին լաւ ծառայի տէր դժուարաւ կարէ լինել։*

***Այս տողերը կարելի է յիշեցընել այն վարիչներուն, տանուտէրանց և թագաւորաց, որոնք կը պակսին իրենց վարչական գործերուն մէջ։***

(Ղազար Փարպեցի ՀԵ).

814

***Միեւնոյն պատմիչը կը գրէ նոյնպէս.***

*Զի գնդի՝ որոյ զօրագլուխն վատ է, գնդին լաւ լինել չէ հնար. և աշխարհի՝ որոյ իշխանքն յետին են, աշխարհին այնմ անհնար է յառաջադէմ և անուանի լինել։*

(Նոյն ՀԵ).

815

*Վաղեմի ազգեր՝ Թագաւորի մասին շատ վեհ և ազնիւ գաղափարով խորհած են. ինքնակալ իշխանութիւնը անշուշտ զիրենք երկրային աստուածներ ըրած է։ Վարդան պատմիչ կը գրէ.*

*Սիրտք Թագաւորաց ի ձեռն Աստուծոյ են։*
(Վարդան Պատմ. ԴՁ ).

816

*Նոյն պատմիչը առ Հեթում Թագաւոր, մտերմաբար կ՚ըսէ. «Լուաք ի Քրիստոսէ, ամէն մարդոյ հրեշտակ կայ պահապան, և*

*Ձեզ՝ որ ազգի գլուխ և Թագաւոր էք՝ ինքն գլուխն Քրիստոս է պահապան անմեկնելի։*
(Հայապատ. Բ. էջ 469).

817

*Հայրենիք ինչ որ ալ ըլլայ, միշտ սիրելի է. փոյթ չէ որ կործանուած աւերակ է, փոյթ չէ որ իր մաքուր ջրերն պղտորած են. կ՚երգէ Պէշիկթաշլեան,*

*Թէպէտ թռչնիկն ու հովն Հայոց*
*Աւերակաց շրջին վրայ,*

*Թէպէտ պղտոր վըտակն Հայոց*
*Նոճիներու մէջ կը սողայ,*
*Նոքա հառաչք են Հայրենեաց*
*Նոքա չերթան սըրտէս ի բաց։*

(Պէշիկթ. Մատենագրութիւնք էջ 79).

818

*Վեհապետերուն, վարիչներուն և թագաւորներուն համար ճշմարտութիւն մըն է Պէշիկթաշլեանի կոռնակի բերնով սա ըսածն, թէ.*

*Իշխանական թագին զարդերը՝ խայթոցներ փուշեր նեղութիւն հոգն ու տագնապն է, ու իշխան ըսածդ ընծայներով զարդարած զոհ մըն է։*

(Նոյն էջ 154).

819

*Բանաստեղծը իր «կոռնակ» թատերգութեան մէջ կ'ողբայ մեր ազգութիւնը.*

*Զքեզ ողբամ թշուառ ազգ. օտար սուրը մէկ կողմանէ կ'ուտէ զքեզ, մէկալ կողմանէ ազգուրաց մատնիչներու ձեռք մատնուած հայութեան նախատինք, սիրտդ կը կրծեն ու կը լափեն, ու խստասիրտ բռնաւոր մը օձու պէս սրտէդ բուսեր ամէն կողմ կը սողայ ու կը սուլէ, ո՜հ թըշուա՜ռ ժամանակ, թշուա՜ռ ազգ։*

(Նոյն էջ 178).

820

*Մեր թշնամին ուզած է և կ՚ուզէ ջնջել հայ խելքի, հայ տաղանդի սիրուն յատկութիւնները. մեր գրչի տէր դէմքերը այդ գրկանքներու չեն կրցած համբերել, այդ պաշտելի անհամբերներէն է նաև մեր վիպասան Աբովեանը, կը գրէ.. «Է՜ս հօ էս՝ Եւրոպայումն էլ որ չէի կարդում բազի գրքերում, թէ, Հայ ազգը պէտք է՝ որ սիրտ չի՛ ունեցած ըլի, որ էնքան բաները գլխումս անց են կացել, մէկ մարդ չէ՛ դուրս եկել, որ մէկ սրտի բան գրի. ինչ կայ՝ եկեղեցու վրայ ա, Աստուծու ու սրբերի, բայց հեթանոս Հոմերի, Հորացի, Վիրգիլի, Սոֆոկլի գրքերը՝ երէխէքն էլ գլխատակներին ունէին, չունքի բոլոր Եւրոպացիք են անխելք, անհաւատ, որ Աստուծու բանը թողած, էսպէս ծառի մառի բաների հետ էին ընկել, յիմարութիւն կըլէր. թէ չէ մեր Նարեկը թողած, ախր ի՞նչպէս էին նրանք էր գրքերին հաւանում։ Լաւ գիտում էի, որ մեր ազգը էնպէս չէ՛ր, ինչպէս նրանք ասում էին, ամա ի՞նչ անես, անաղան ջաղացի քարն՝*

*էլ չ՚ պտրիս գալիս, ո՞ւմ ասես»: Աբովեան Խաչատուրի այդ նախատական խօսքը մտածելով, չհամոզուիր, վասն զի.*

*Թէ կտրիճ մարդ ասես, մեր միջումն հազարաւորն էլել ու էս օր էլ կան. Թէ խելօք խօսք ասես, մեր պառաւներն էլ հազարը գիտեն: Թէ աղ ու հաց ասես, սէր, բարեկամութիւն, քաջութիւն, երևելի անձինք՝ ասես, մեր գեղըցոնց սիրտն էլ ա լիքը այսպէս մարդերով:*

*Խեղճ վիպասանը կ'ըսէ. «Էսպէս բաներ մտածելով, օրս ու ումրըս մաշվել էր»:*

(Վերք Հայաստանի էջ 5).

821

*Հայուն անունը մեծ է, գործերը յառաջադիմական և կարողութիւնը հոյակապ.*

*Ստամբօլ են գնում Հայի տղերքը՝ վազիր ու փաշայ են դառնում. Թէհրան են ընկնում՝ նազիր ու խան:*

(Նոյն էջ 189).

822

*Ազգասէր հայութիւնը անձնանուիրաբար կ'ուզէ մնալ իր մայրենի հողին մէջ, քան օտարութեան տխուր հանգստութիւնը վայե-*

*լել և կորսուիլ. կտրիճ հայրենասէրը, իր օճախէն զէնքը արտաքսող թշնամիին կ՚ըսէ.*

Ի՛նչ կասես՝ ասա՛, մենք մեր խողը չե՛նք թողայ։

(Նոյն էջ 238).

823

*Սիրելի է վաթանը, հայրենասէրը մատաղ է անոր գլխին.*

Ա՜հ վաթան, վաթան՝ քու հողին ղուրբան,
Քո ծխին ղուրբան, քո ջրին ղուրբան.
Է՞ս փառքն ունէիր, էս պատիւն առաջ,
Որ հմիկ աւիրվիլ, մնացել ես անջան։

(Նոյն էջ 239).

824

*Եւ հայրենիքի քաջագործութեանց և հալածանաց վկայ՝ սրբազան սարին դարձած՝ կ՚երգէ վիպասանը.*

Կանգնել ես՝ էդպէս գլուխդ ամպին խփած՝
Ա՞յ խեղճ ալեւոր, երեսդ փակած.
Ի՞նչ կըլէր՝ Մասիս, ա՛խ դեռ աչքդ բաց՝
Սրի չտայիր քո որդիքն էրված։

(Նոյն էջ 240).

825

*Քերթողներու քնարին բառն է հայրենասիրութեան կրակը. վայրկենաբար այդ սրբազան կրակին ամէն բնական ու գերբնական վեհութիւն զոհ կ'ըլլան. Աբովեան կ'երգէ.*

*Թո՛ղ հոգիս դժոխքը գնայ, խորովվի՝*
*Իմ սուրբ նախնեաց տեղ, իմ ազի՛զ Անի,*
*Էլի որ մարմինս մէկ քարի տակի*
*Ըլի քո ծոցումն, ինձ դրախտ պէտքը չի։*

(Նոյն էջ 252).

826

*Թագաւորէն կը պահանջուի անկեղծ վարչութիւն, սակայն դժբախտաբար դիւանագիտական պահանջներով հիւանդացած ամէն իշխանութիւն և աւագութիւն իր քաղաքականութեան կը զոհէ ոսկեղէն անկեղծութիւնը, կարծես առանց կեղծ քաղաքականութեան կարելի չէ թագաւորել, և կարծես բոլորովին ճշմարիտ է Հ. Արսէն Բագրատունի քերթողին այս տողը.*

*Որ զկեղծեաց չուսաւ զարուեստ, ոչ գիտասցէ թագաւորել։*

(Հայկ դիւցազն էջ 396).

827

*Առանց հպատակի տէրութիւն, իշխանութիւն չի կրնար ըլլալ. և առանց ծառայի մեծութիւն չըլլար։ Ալաշկերտցիք կ'ըսեն.*

Ինչան քար մենծ եղնի,
առանց խճի (մանր քար) չը կանի (չ'կանգնիր)։

*Առակս կը մեկնուի. «Առանց ժողովրդի՝ իշխանութիւն. և առանց փոքրերու կամ ծառայողներու՝ մեծութիւն չի կրնար գոյութիւն ունենալ»։*

(Ազգ. Հանդէս գիրք VII, VIII, 1901 էջ 466).

828

*Ոմանք տէրութիւնը, իշխանութիւնը՝ բռնակալութիւն կը կարծեն, և իրենց հպատակները ստրուկ. այդպիսիներուն կը մաղթեն.*

Աստուած հայուն բոր տայ.
ամա եղունկ չի տայ։

*Մեկնութիւնն է. «Հայ մը երբ պաշտօնի գլուխ անցնի՝ իր իշխանութիւնը չարաչար կը գործածէ իրեններուն դէմ։ Հետեւաբար լաւ է չարչարուել, նեղուել, չ'ունենալ մի-*

ջոց անկէ ազատելու, քան իշխել և իրեն֊ները չարչարել ու նեղել»։

(Նոյն էջ 488)։

829

Հայութիւնը ամէն տեղ թշուառ է և տառապեալ, ափսոսանքի ենթարկուած, անոր համար հայկական առակը ըսած է.

Ինչ տեղ հայ.
Էնտեղ «վայ»։

(Նոյն էջ 491)։

## ՎԵՐՋ Ա. ՄԱՍԻՆ

# ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

## ԱՌԱԾՆԵՐ

Ագռաւին ասին ղշերի միջին որն ա սիրուն, ասեց. իմ ճուտը։
Ագռաւին ձէնը, թէ որ Աստուած լսէր, Վարդեւորին (Վարդավառին) ձին կը գար։
Այընի ղարտը փլաւն էր։
Աղքատը ունէր հաց ու պանիր, գիշերը քունը չի տանիլ։
Ամառ ձմեռը մի խելքն ի՞նչ անի։
Ամէն բանը իրա տեղն ունի։
Ամէն բանի սիպտկացնիլը լաւ չի։
Ամէն փորձանքին մին մին խրատ։
Ամէն օր տատը գաթայ չի ուտիլ։
Այս օրվան գործդ վաղվան մի թողուր.
Անէծքն անիծողին կը դառնայ,
Անձրեւ օր հաւերին ջուր տուող չատ կ՚ըլնի։
Ապրիլ կայ երկաթ ա, ապրիլ կայ երծաթ ա։
Առաջ մտածէ ետոյ սկսէ։
Առաւօտուայ չառը լաւ ա քանց իրիկուայ խէրը։

Ասել են ձո՛ւ ու տո՛ւր, ոչ թէ ձո՛ւ ու կո՛ւլ։
Արինն արնով չեն լուանալ։

Բանն արա՛, յետոյ պարծեցի՛ր,
Բարեկամի հետ կեր ու խում արա՛, առուտուր մի՛ անիլ։
Բարկացող մարդը շուտ կը պառաւի։
Բլբուլը իր դարտը կը լայ, ագռաւը ղա՛ռ ղա՛ռ կանչի։
Բօշէն փաշայ չի դառնալ։

Գառը գարնան, ձինը ձմռան։
Գեղ կը նստես, գաւառ կը հաչես։
Գիժը դատի, խելօքն ուտի։
Գիժը իւրեան ձգել է հորը, քառասուն խելօք չեն կարողացել հանել։
Գինի խմողը կը հարբի, կռիւ գնացողը կը մեռնի։
Գող՝ սրտումը դող։
Գողը գողէն գողացաւ, Աստուած վերեվէն զարմացաւ։

Դարտակ կարասի ձայնը բարձր դուրս կու գայ։
Դուռդ փակ պահի՛ր, հարեւանդ գող մի՛ բռնիլ։
Դրուստ խօսողի գտակը ծակ կըլի։

Երկաթը տաք կը ծեծեն։
Երկար խօսելով փլաւ չի եփուիր, բրինձ և իւղ հարկաւոր է։
Եօրղանիդ գեօրայ ոտդ մեկնի՛ր։

Զանգակի ձէնը հեռուանց լաւ ա գալի։

Էծը իր ոտիցը կախ կտան, ոչխարն իր։
Էն ջրիցը վախեցի՛ր, որ ոչ թշշում ա, ոչ խըշ-
շում։

Ընչանք երեխըն լաց չըլնի, մէրը ծիծ չի տալ։
Ընչանք չի գայ յետինը, չի յիշուիլ առաջինը։
Ընչանք դու հասկանաս, ուղտի պոչը գետինը
կը հասնի։

Թագաւորն էլ թագի լայաղ պտի։
Թագաւորութիւնը իրանից կը քանդուի։
Թունդ քացախն իր ամանը կը ճաքացնի։
Թուրքն անիծած՝ խօսքն օրհնած։
Թուրքերն անիրաւ. խօսքերն իրաւ։
Թուրքին ընչանք չի ծեծես, խօնախայ չի դառ-
նալ։
Թրի կտրածը կը սաղանայ, լեզուինը չի սաղա-

Ժամիցը ես եմ գալի, ողորմի Աստուածը դու
ես ասում։

Իմաստունի հետ քար կրի՛, յիմարի հետ փլաւ
մի՛ ուտիլ։
Իմ ու քուն տուն ա քանդում։
Ինչ կը բըթես, էն կը խըթես։
Ինչ տեղ հաց, ընտեղ կա՛ց։
Ինչ տեղ պանիր. ընտեղ բանի՛ր։
Իրա համար քնում ա, ուրիշի համար երազ
տեսնում։

Լէնին ճար կայ, նեղին ճար չկայ։

Խալխի աչքը քեզ համար լիս չի տալ։
Խեղճ գիլի անուճն ա կոտրած, աղուէսը աշ-
խարհք քանդեց։

Ծառը որ վէր ընկնի, կացնաւորք էլ շատանայ։
Ծառք քանի բար շատ ունենայ, գլուխը կախ
կը քցի։

Կճուճը թօլ էլաւ, խուփը գտաւ։
Կնիկ արմատի մազն երկէն կըլի, խելքը կարճ։
Կուժ քեզ ասեմ, կուլա՛յ դու լսի՛։
Կուշտը սովածին մանր կը բրթի։

Հայի յետի խելքն իմն ըլի։
Հայի խելքը գլխումն ա, Վրացու խելքը աչքու-
մը։
Հաստ ու բարակն մի գին ա, վա՜յ գայ բարակ
մանողին։
Հարեւանիս կսիրեմ, որ ձաւխս աջ անի։

Ձին ու Ջորին կռուեցին, մըջ տեղը էշը սատա-
կեց։

Մանկուց ղաղումք (վաստակ), ծերուց զաւա-
զան ա։
Մէկ մի՛ տալ, որ երկու չուզի։
Մէկ խելքը լաւ է, երկուսը եւս առաւել։
Մի ձեռը ծափ չի տալ։
Մի ծաղկով գարունք չի գալ։

Մի մուկն օխտը կարաս ա մուռտառել։
Մտնելուց առաջ միտք արա՛, թէ ի՞նչպէս դուս գաս։

Նեղութենին լէնութիւն կայ, լէնութենին նեղութիւն։

Շանը քանի քար քցես կհաչայ։
Շունը կը հաչայ, քարվանը կը քօչայ։

Ոՙն սիրէ վարդ, ոՙն մանուշակ։
Ով որ փող ունի՝ խելք չունի. ով որ խելք ունի՝ փող չունի։
Որ տեղ որ գնաս, էն տեղի գտակը ծածկի՛։
Ով ոք փքանայ, շուտով չքանայ։
Ուղտը գտալով չեն ջրիլ։
Ուրագն իւր կոթը չի տաշիլ։

Չունիս փող, մտիր հող։

Ջուրն իր ճամփէն կըգտնի։

Սառած օձն առաջ տաքացնողին կկծի։
Սարերի տեղ ձորերն են որոտում։
Սոխ ու հաց, սիրտը բաց։
Սուտը կը ոտնաւորի, բայց չէ երթալ։

Վերեւ թքեմ՝ երեսս ա, ներքեւ թքեմ՝ միրուքս ա։

*Տուն քանդողի տունն Աստուած կքանդի։*

*Գնածն ու մեռածը մին ա։*

